Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ

1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## Բովանդակություն



ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

խմբագրության հասցեն՝
*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53-86-11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1987 թվականի դեկտեմբերի 26-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը: Պլենումը քննարկեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի հաշվետվությունը վերակառուցման ղեկավարման աշխատանքի մասին:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Պլենումում ելույթ ունեցան ՀԿԿ Կամոյի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ն. Զարգարյանը, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի բրիգադավար ընկ. Մ. Վ. Խաչատրյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Տ. Սարգսյանը, ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Գ. Սահակյանը, Աբովյանից բանվորուհի ընկ. Լ. Ա. Այվազյանը, Հայկական ՍՍՀ ավտոմոբիլային ճանապարհների շինարարության ու շահագործման մինիստր ընկ. Գ. Ա. Մելքումյանը, ՀԿԿ Շիրակի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Պ. Պետրոսյանը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Հ. Ղամբարյանը, «Սովետ Էրմենիստանի» թերթի խմբագիր ընկ. Զ. Կ. Կուրբանովը, Սիսիանի շրջանի Դարբաս գյուղի կոլտնտեսության տրակտորիստ-կոմբայնավար ընկ. Ա. Խ. Ասատրյանը, ՀԿԿ Ղափանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ռ. Ս. Ղոնյանը, «Երարդշին» տրեստի տնտհաշվարկային բրիգադի բրիգադավար ընկ. Գ. Ս. Մարգարյանը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. Թ. Ա. Դիլանյանը, Հայկական ՍՍՀ դատախազ ընկ. Ս. Ա. Օսիպյանը, ՀԿԿ Արթիկի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Գ. Մկրտչյանը, Աշտարակի շրջանի Սասունիկի սովխոզի կուսբյուրոյի քարտուղար ընկ. Ս. Խ. Գևորգյանը, «Լույս» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. Բ. Հ. Թումասյանը, ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության հանձնաժողովի նախագահ ընկ. Ս. Մ. Խաչատրյանը, ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ս. Քոթանջյանը, «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման գործիքագործ-փականագործ ընկ. Ս. Ս. Ֆահրադյանը, «Գարուն» կարի արտադրական միավորման վարպետ ընկ. Է. Ձ. Թոսյանը, ՀԿԿ Մասիսի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Վ. Հարությունյանը, ՀԿԿ Արտաշատի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ջ. Գ. Գևորգյանը, «Հայէլեկտրաշարժիչ» արտադրական միավորման հավաքողփականագործ ընկ. Վ. Կ. Խաչատրյանը, ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ե. Վարդանյանը, ՀԿԿ Արարատի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Օ. Ջ. Հակոբյանը, Երևանի Գայի անվան միջնակարգ դպրոցի ուսուցչուհի ընկ. Բ. Գ. Ստեփանյանը, ՀԿԿ Ապարանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ճ. Հ. Ալեքսանյանը, ՀԿԿ Կենտկոմի թեթև արդյունաբերության և ժողովրդական սպառման ապրանքների բաժնի վարիչ ընկ. Ա. Ս. Պյատկովան, ՀԿԿ Մյասնիկյանի շրջկոմի առաջին քարտուղար

ընկ. Գ. Հ. Մուրադյանը, ՀԿԿ Օրջոնիկիձեի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ջ. Ի. Հասրաթյանը, «Հայգլխջրշին» վարչության պետ ընկ. Մ. Գ. Գևորգյանը, Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի պետ ընկ. Հ. Ա. Ղանդիլյանը, Հայկական ՍՍՀ ներքին գործերի մինիստր ընկ. Հ. Ս. Ծահինյանը, ՀԿԿ Ծաղումյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ռ. Գ. Թովմասյանը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Հ. Մուրադյանը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Օհանյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահ ընկ. Մ. Յ. Մկրտչյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, հանրապետության պետագրոարդի նախագահ ընկ. Վ. Մ. Մովսիսյանը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Յու. Պ. Կոչետկովը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի քարտուղար ընկ. Մ. Ա. Աղուզումցյանը, Երևանի «Մանկական աշխարհ» միավորման ավագ վաճառող ընկ. Վ. Հ. Մալաքյանը:

Պլենումում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի սեկտորի վարիչ ընկ. Վ. Ա. Կոնդրատևը:

Եզրափակման խոսքով պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Քննարկված հարցի առթիվ Կենտկոմի պլենումը ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Պլենումը ընկ. Մ. Պ. Կոլեսնիկովին ազատեց ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից:

Պլենումը ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ ընտրեց ընկ. Յու. Կ. Կուզնեցովին:

Պլենումը ընկ. Մ. Ս. Գրիգորյանին հաստատեց ՀԿԿ Կենտկոմի գյուղատնտեսության և սննդարդյունաբերության բաժնի վարիչ:

Կենտկոմի պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամների կազմից հանեց ընկ. ընկ. Ս. Գ. Դանիելյանին, Պ. Մ. Մանվելյանին, Կենտկոմի անդամության թեկնածուների կազմից՝ ընկ. ընկ. Մ. Ս. Հայրապետյանին, Մ. Ա. Նուրիջանյանին:

ՀԿԿ Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի հրահանգիչ ընկ. Ա. Ի. Օբրուչևը:

---

# ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՅԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը ՀԿԿ Կենտկոմի պլենումում 1987 թ. դեկտեմբերի 26-ին

*Ընկերնե՛ր։*

*Մեր պլենումը տեղի է ունենում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակի տարվա ավարտին։*

*Այս տարին հագեցած էր երկրի կյանքի հասարակական-քաղաքական ակնառու իրադարձություններով։ Կայացան ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան, հունիսյան, հոկտեմբերյան պլենումները, որոնք կարևորագույն նշանակություն ունեն կուսակցության կյանքում։ Սովետական ժողովուրդը, աշխարհի ամբողջ առաջադեմ մարդկությունը հանդիսավորությամբ նշեցին մեծ Հոկտեմբերի հոբելյանը։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի «Հոկտեմբերը և վերակառուցումը. հեղափոխությունը շարունակվում է» զեկուցման մեջ յոթ տասնամյակում սովետական հասարակության անցած ուղու պատասխանատու, գիտական, կուսակցական վերլուծության հիման վրա տրված է մեր կյանքի յուրաքանչյուր փուլի ունեցած տեղի ու նշանակության օբյեկտիվ գնահատականը։ Բացահայտված է վերակառուցման հասարակական քաղաքական ու պատմական լայն կոնտեքստը՝ որպես հասարակության հեղափոխական նորացման համեմատաբար տևական պրոցեսի, որն ունի իր տրամաբանությունը և փուլերը։*

*Սովետական ժողովուրդը ակտիվորեն պաշտպանում է վերակառուցումը, որը պատմական նոր հեռանկարներ է բացում նրա առջև։ Վերակառուցման պրոցեսը առաջ է ընթանում, ավելի ու ավելի է խորանում և ընդարձակվում։*

*Վերակառուցման կուրսով, ակտիվ ներքին քաղաքականության միջոցով մեր կուսակցությունը, երկիրը դուրս են եկել նախաձեռնողական արտաքին քաղաքականության ուղի, որի արգասավոր արդյունքները տեսնում են սովետական մարդիկ, համայն աշխարհի ժողովուրդները։ Դրա հաստատումն է վերջերս Մ. Ս. Գորբաչովի և ԱՄՆ-ի պրեզիդենտի ստորագրած պայմանագիրը միջին ու փոքր հեռահարության հրթիռները վերացնելու մասին։*

*Ընկերնե՛ր։*

*Այսօր, ՍՄԿԿ Կենտկոմի որոշմանը համապատասխան, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն պլենումին հաշվետվություն է ներկայացնում վերակառուցման ղեկավարման իր աշխատանքի մասին։*

*Երկիրը թևակոխել է վերակառուցման ամենապատասխանատու և բարդ փուլը, երբ մեր ամբողջ քաղաքականությունը, ինչպես Մ. Ս. Գորբաչովն ասել*

է մեծ Հոկտեմբերի 70-ամյակին նվիրված զեկուցման մեջ, մեր բոլոր որոշումները վերածվում են կոնկրետ գործերի, մարմնավորվում կյանքում։ Դա պահանջում է ամբողջ ժողովրդի՝ բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության, մեր բոլոր կադրերի հսկայական ջանքերը։ Այժմ արդեն կյանքն է ստուգելու մեր գաղափարները, պլանները, մոտեցումները և աշխատանքի մեթոդները։

Ինչպես ամբողջ կուսակցության մեջ, հանրապետության կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո որոնվում էին նոր ուղիներ, և աշխատանք էր տարվում տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնելու, մեր հասարակության կյանքը համակողմանիորեն նորացնելու ստրատեգիական խնդրի իրագործման համար։ Հայաստանում վերակառուցումն արագացնելու և խորացնելու համար բեկումնային իրադարձություն եղավ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումը։ Կենտկոմի ղեկավարության, կուսակցական, կազմակերպության հասցեին ուղղված խիստ ու արդարացի քննադատությունը ալեկոծեց հանրապետության կոմունիստներին, բոլոր աշխատավորներին։

Տնտեսական, մշակութային շինարարության ասպարեզում, կուսակցական աշխատանքում, մեր գործունեության մեջ տեղ գտած թերությունների, սխալների ու բացթողումների մասին խիստ և սկզբունքային խոսակցություն տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1987 թվականի հուլիսյան պլենումում, կոմունիստների ժողովներում, սկզբնական կուսակցական կազմակերպություններում, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների պլենումներում։ Այդտեղ լուրջ քննադատություն հնչեց Կենտկոմի բյուրոյի, քարտուղարության, բաժինների հասցեին։ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի նյութերի քննարկման ժամանակաշրջանը կարևոր փուլ դարձավ մարդկանց քաղաքական ու սոցիալական ակտիվության բարձրացման, աշխատավորական կոլեկտիվների կյանքի դեմոկրատացման, քննադատության և ինքնաքննադատության զարգացման, մեր կյանքի բարոյական մաքրման համար։ Կուսակցական, սովետական, տնտեսական ու հասարակական կազմակերպությունների հասցեով ստացվող դիտողությունների ու առաջարկությունների թիվը այդ ժամանակամիջոցում մեծացել է ավելի քան վեց անգամ և անցել 16 հազարից։

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումից հետո Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն ինքնաքննադատաբար գնահատեց իր գործունեությունը, Կենտկոմի քարտուղարների, բյուրոյի յուրաքանչյուր անդամի և անդամության թեկնածուի աշխատանքը։ Բյուրոյում տեղի ունեցավ ազնիվ, շիտակ, սկզբունքային խոսակցություն։ Քննադատությունից մենք արեցինք ամենալուրջ և պատասխանատու հետևություններ։ Կենտկոմի բյուրոյում մեծացել են փոխադարձ պահանջկոտությունը, գործարարությունը, սկզբունքայնությունը։ Ապահովվում է ընդունվող որոշումների կոլեգիալությունը։ Էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման, սոցիալական ու կադրային քաղաքականության բոլոր կարևոր հարցերը քննության են առնվում համակողմանիորեն, հաշվի առնելով բյուրոյի յուրաքանչյուր անդամի կարծիքը։ Մենք սկսել ենք ավելի հաճախ լսել կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունները։ Ուժեղացրել ենք ժողովրդական դեպուտատների սովետների, տնտեսական մարմինների աշխատանքի վերահսկողությունը, սկսել ենք ավելի մեծ ուշադրություն նվիրել հասարակական կազմակերպությունների գործունեությանը։

Սույն պլենումի նախապատրաստությունը մենք վաղուց էինք սկսել։ Եվ ամեն ինչում հանգամանորեն խորամուխ լինելու, բյուրոյի գործունեության օբյեկտիվ գնահատական տալու համար պետք էր հանդես բերել նոր մոտեցում։ Այդ աշխատանքի մեջ ներգրավվեց կուսակցական ակտիվի լայն շրջանակ։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամները, քարտուղարներն ու Կենտկոմի անդամները եղել են աշխատավորական շատ կոլեկտիվներում, հանդես եկել մամուլի էջերում, հեռուստատեսությամբ, կատարված աշխատանքի մասին հաշիվ են տվել կուսակցական կազմակերպություններում, կոմունիստներին, աշխատավորներին ծանոթացրել, թե վերակառուցումն ինչպես է ընթանում Հայաստանում, հաշվի են առել նրանց կարծիքները Կենտկոմի



աշխատանքի մասին։ «Սովետական Հայաստան», «Կոմունիստ», «Սովետ Էրմանիստանի» «Ռյա թազա» թերթերում տպագրվեց Կենտկոմի դիմումը՝ ուղղված բոլոր կոմունիստներին ու աշխատավորներին, խնդրելով հայտնել իրենց դիտողություններն ու առաջարկությունները։ Այդպիսիք շատ են ստացվել։ Դրանցում, ինչպես և աշխատավորական կոլեկտիվների հետ ունեցած հանդիպումների, կուսակցական կազմակերպությունների առջև հաշվետվությունների ժամանակ, նշվել է, որ հանրապետական կուսակցական կազմակերպությունը, Կենտկոմը, նրա բյուրոն ակտիվացրել են վերակառուցման իրենց աշխատանքը, այստեղ նկատելի են տեղաշարժերը։ Միաժամանակ ընդգծվում է վերակառուցումը առավել ուժեղացնելու և խորացնելու անհրաժեշտությունը։ Քննադատվում են մեր կենսագործունեության տարբեր ուղղություններում, հատկապես սոցիալական ոլորտում, օրինականության ամրապնդման, բացասական երևույթների դեմ տարվող պայքարում դեռևս տեղ գտած թերությունները։ Առաջարկություններ են արվել բարելավելու կադրային աշխատանքը, բարձրացնելու պահանջկոտությունը ղեկավար կադրերի նկատմամբ՝ հանձնարարված տեղամասում գործերի վիճակի համար, խիստ կերպով պատժել նրանց, ովքեր կարգապահության խախտում են թույլ տալիս, շեղվում մեր բարոյականության նորմերից։

Շատ են առաջարկությունները, որոնք վերաբերում են էկոնոմիկայի մեջ գործերի բարելավմանը, գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, ինչպես նաև ռեֆորմի իրականացմանը։ Աշխատավորների նամակներում պահանջկոտ կերպով դրվում է այն հարցը, որ Կենտկոմի պատասխանատու աշխատողները, հանրապետական մարմինների ղեկավարներն ավելի հաճախակի հանդիպումներ ունենան աշխատավորական կոլեկտիվների հետ, լինեն տեղերում, ակտիվորեն հանդես գան մամուլի էջերում, հեռուստատեսությամբ, ռադիոյով։

Զեկուցման մեջ արտացոլում են գտել կուսակցական աշխատողների, սովետական ու տնտեսական ղեկավարների հանրապետության աշխատավորների շատ մտքեր ու խորհուրդներ։

Ընկերնե՛ր։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն առաջնահերթ կարևորության գործ է համարում կուսակցական աշխատանքի արմատական վերակառուցման ապահովումը, հասարակական կյանքի դեմոկրատացման զարգացումը, տնտեսավարման նոր մեթոդների արմատավորումը։ Այդ բոլոր հարցերի վերաբերյալ մենք մշակել և հաստատել ենք գործողությունների կոնկրետ ծրագրեր։ Հիմնարար փաստաթղթեր են ընդունվել էկոնոմիկան տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման փոխադրելու, սոցիալական զարգացման առավել կարևոր՝ պարենային, բնակարանային, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ու սպասարկման ոլորտի ընդլայնման պրոբլեմների լուծումն արագացնելու, գաղափարաբարոյական մթնոլորտն առողջացնելու, բացասական երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու վերաբերյալ։

Մենք ակտիվ միջոցներ ենք ձեռնարկել բարելավելու կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը, հաղթահարելու այդ գործում եղած լճացման երևույթները, նախկինում թույլ տրված սխալներն ու վրիպումները։ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո հանրապետությունում փոխվել են կուսակցության քաղկոմների ու շրջկոմների 29 առաջին քարտուղար, ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների 38 նախագահ, 32 մինիստր, պետական կոմիտեների նախագահներ և գլխավոր վարչությունների պետեր, արհմիությունների հանրապետական կոմիտեների 11 նախագահ, կոմերիտմիության քաղաքային ու շրջանային կոմիտեների 43 առաջին քարտուղար։ Փոփոխություններ են կատարվել նաև կառավարման բարձրագույն օղակում։ Փոխվել են Կենտկոմի 4 քարտուղար, բյուրոյի 10 անդամ ու անդամության թեկնածու, Կենտկոմի բաժինների 6 վարիչ, հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահի 5 տեղակալ։ Աշխատանք է տարվել Կենտկոմի բյուրոյի, քարտուղարության, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների նոմենկլատուրան կարգավորելու և կրճատելու նպատակով։

Առհասարակ կարելի է ասել, որ մեզ հաջողվել է հասնել ղեկավար կադ-

ների կազմի նկատելի երիտասարդացման։ Կուսակցական, սովետական աշխատանքի առաջ քաշելիս անպայման հաշվի են առնվում ըստ մասնագիտության պրակտիկ գործունեության ստաժը, աշխատանքի փորձը աշխատավորական կոլեկտիվներում։ Այժմ հանրապետությունում ղեկավարներին փոխելիս արդեն լայնորեն կիրառվում են ընտրության ու մրցույթի սկզբունքները։ Աշխատավորները ղեկավար պաշտոններում ընտրել են ավելի քան 500 մարդ։ Ուժեղացվել է ուշադրությունը կադրերի կուսակցական քաղաքական կրթության նկատմամբ։ Բարձրագույն կուսակցական ուսումնական հաստատություններում և վերապատրաստման դասընթացներում սովորողների կոնտինգենտը 1985 թվականի համեմատությամբ աճել է երկուսուկես անգամ։

Ուժեղացվել է կուսակցության շրջկոմների, քաղկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեության, ընդունված որոշումների կատարման, կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների իրականացման վերահսկողությունը։ Մամուլում պարբերաբար հաղորդագրություններ են հրապարակվում Կենտկոմի բյուրոյի ու քարտուղարության նիստերի վերաբերյալ։ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումից հետո մենք սկսեցինք վճռականորեն ազատվել այնպիսի աշխատողներից, որոնք ի վիճակի չէին կատարել նոր խնդիրները, հետ էին մնացել ժամանակի պահանջներից և, իհարկե, ազատվել նաև նրանցից, ովքեր թույլ են տալիս պաշտոնեական դիրքի չարաշահումներ։

Մասնավորապես աշխատանքից ազատվել և կուսակցական խիստ տույժ է ստացել Նաիրիի կուսշրջկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Հայրապետյանը։ Այստեղ, ինչպես արդեն ասվել է նախորդ պլենումում, տարիներ շարունակ ղեկավար աշխատանքի էին առաջ քաշվում անձեռնհաս, չստուգված, իսկ երբեմն էլ պարզապես պատահական մարդիկ։ Տեղ են գտել հովանավորչության փաստեր։ Կուսակցության շարքերն էին թափանցում աշխատանքային ու կենսական հարկ եղած կոփումը չունեցող, երբեմն էլ պարզապես անարժան և անազնիվ մարդիկ։

Լուրջ թերություններ էին տեղ գտել Դիլիջանի կուսքաղկոմի աշխատանքում։ Քաղկոմի բյուրոն սկզբունքային գնահատականներ չէր տալիս կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավար աշխատողների չարաշահումների փաստերին։ Վարկաբեկված ղեկավարներին մի բազկաթոռից նստեցնում էին մյուսին։ Վատացել էին քաղաքի տնտեսական ու սոցիալական զարգացման ցուցանիշները։ Հողային ու բնակարանային օրենսդրության կոպիտ խախտումներ են բացահայտվել Մարտունու, Ստեփանավանի, Կալինինոյի շրջաններում։ Ինչպես գիտեք, այստեղ էլ մենք ստիպված եղանք փոխելու առաջին ղեկավարներին։

Գնահատելով աշխատանքն ամբողջությամբ վերցրած, կարելի է ասել, որ հանրապետական կուսակցական կազմակերպությունը ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումից հետո ակտիվացրել է վերակառուցումն արագացնելու և խորացնելու կազմակերպչական և քաղաքական աշխատանքը։ Աճել են կոմունիստների, բոլոր աշխատավորների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, կադրերի պատասխանատվությունը և նրանց ներկայացվող պահանջկոտությունը, ծավալվում են քննադատությունն ու ինքնաքննադատությունը, ընդլայնվում է հրապարակայնությունը։ Դրա վկայությունն են կուսակցության քաղկոմների ու շրջկոմների այն պլենումները, սկզբնական կուսակցական կազմակերպությունների ժողովները, որտեղ ընտրովի մարմինները հանդես են գալիս վերակառուցման ղեկավարման վերաբերյալ հաշվետվություններով։ Այս ուղղությամբ ավելի քան 200 կուսակցական կոմիտեների և կուսակցական բյուրոների կատարած աշխատանքը համարվել է անբավարար։ Փոխվել են սկզբնական կուսակցական կազմակերպությունների շուրջ 210 քարտուղար, ընտրովի մարմինների ավելի քան 450 անդամ։ Կոմունիստները սկսել են բոլոր աստիճանների ղեկավարներին ավելի խիստ հաշիվ ներկայացնել պասսիվության փաստերի և խնամառուական տրամադրության համար, այսպես կոչված «օբյեկտիվ պատճառներով» քողարկվելու փորձերի համար։

Վերակառուցման ղեկավարումը նպատակամետ է իրագործում Կամոյի կուսշրջկոմը (քարտուղար՝ ընկ. Հ. Զարգարյան)։ Շրջկոմի գործունեությունը



բնութագրվում է տնտեսական ու սոցիալական հարցերի կոմպլեքսային լուծման նոր մոտեցումներ գտնելու ձգտումով։ Բարձրացել է կադրերին ներկայացվող պահանջկոտությունը, պայմաններ են ստեղծվում նրանց նախաձեռնության և ինքնուրույնության զարգացման համար։ Շրջանում վերջ է տրված մանրախնդիր խնամակալությանը և «սեղմումներին», ղեկավարների ու մասնագետների հաճախակի կանչերին, խիստ կրճատվել է խորհրդակցությունների ու նիստերի թիվը։ Կուսշրջկոմն իր գործունեության ծանրության կենտրոնը ակտիվորեն տեղափոխում է աշխատավորական կոլեկտիվներ, սկզբնական կուսակցական կազմակերպություններ, ձգտելով բարձրացնել նրանց մարտունակությունը և ակտիվությունը։

Հետաքրքրական և ուսանելի շատ բան կա նաև կուսակցության մի շարք այլ քաղկոմների ու շրջկոմների աշխատանքում։

Հանրապետությունում քիչ չեն նաև այնպիսի սկզբնական կուսակցական կազմակերպությունները, որոնք հարկ եղածին պես են գլխավորում վերակառուցումը։ Դրանց թվում է «Լույս» արտադրական միավորման կուսակցական կազմակերպությունը (քարտուղար՝ ընկ. Վ. Դաշյան)։ Այստեղ պրակտիկա են դարձել ներգործարանային կյանքի լայն դեմոկրատացումը, արտադրական ու սոցիալ-կենցաղային բնույթի բոլոր առավել ցավոտ հարցերի բացախոս քննարկումը և կոլեկտիվ լուծումը։ Կոլեկտիվը հասնում է արտադրական բարձր արդյունքների, պետընդունման պայմաններում արտադրանքի 97 տոկոսը հանձնվում է անթերի վիճակում։ Դրական շատ բան կա նաև Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղի կուսակցական կազմակերպության աշխատանքում (քարտուղար՝ ընկ. Ա. Մկրտչյան)։ Տնտեսության բոլոր ստորաբաժանումներում արմատավորված են տնտհաշվարկը և կոլեկտիվ կապալը։ Կոմունիստները ակտիվ դիրք են գրավում գյուղական կյանքի վերակառուցման մեջ։ Եվ որպես դրա արդյունք, տնտեսությունում զգալիորեն բարձրացել են անասնապահության մթերատվությունը, խաղողի և պտղատու այգիների բերքատվությունը։ Կոլտնտեսությունում աշխատանքի արտադրողականությունն աճել է 43,1 տոկոսով, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 22 տոկոսով։

Կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ կատարված դրական վերափոխումները, հասարակական-քաղաքական ամբողջ կյանքի դեմոկրատացման միջոցառումները հնարավորություն ընձեռեցին դրական արդյունքների հասնել տնտեսական ու սոցիալական զարգացման որոշ ուղղություններում։

Տասներկուերորդ հնգամյակի երկու տարում հանրապետությունում արտադրված ազգային եկամուտը կավելանա 7,1 տոկոսով։ Արդյունաբերական արտադրության ծավալը, ներառյալ օժանդակ ձեռնարկությունների արտադրանքը, 1987 թվականին կկազմի մոտավորապես 7 տոկոս (պլանային բազայի նկատմամբ), իսկ հնգամյակի երկու տարում՝ ավելի քան 10,5 տոկոս, հնգամյա պլանով նախատեսված 9,5 տոկոսի դիմաց։ Կաճի որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի թողարկումը։ 12,6 տոկոսով կավելանան բնակչությանը մատուցվող սպասարկումները։ Բնակարանային շինարարության, սոցիալ-կուլտուրական ու կենցաղային այլ օբյեկտների շինարարության պլանները կատարվել են ինչպես անցյալ տարի, այնպես էլ ընթացիկ տարվա ինն ամսում (բացառությամբ մանկապարտեզների)։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը հանրապետությունում ամբողջությամբ վերցրած կաճի 4,6 տոկոսով, ընդ որում ոչ պարենային ապրանքների թողարկման ծավալի բացարձակ աճը կկազմի ավելի քան 250 միլիոն ռուբլի կամ 10 տոկոս, այդ թվում կուլտուր-կենցաղային ու տնտեսական գործածության ապրանքներինը՝ 14,5 տոկոս։

Ագրոարդյունաբերական համալիրում սպասվում է, որ կկատարվի գյուղատնտեսական արտադրանքի հիմնական տեսակների, բացառությամբ պտուղների ու խաղողի, մթերումների երկու տարվա պլանը։ Հնգամյա պլանի մակարդակով կկատարվեն տրանսպորտի ու կապի զարգացման առաջադրանքները։ Եվ, որ շատ կարևոր է, արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը երկու տարում կբարձրանա 7,3 տոկոսով՝ հնգամյա պլանով նախատեսված 5,9 տոկոսի դիմաց։ Կկատարվեն ժողովրդական տըն-

տեսության մեջ նյութական ու վառելիքաէներգետիկ ռեսուրսների բոլոր կարևորագույն տեսակների տնտեսման և ռեսուրսախնայողության պլանային առաջադրանքները։

Ընկերնե՛ր։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն գիտակցում է, որ արվածը ամենևին էլ բավական չէ և մեզ բնավ չի կարող բավարարել։ Էկոնոմիկայի զարգացման գործում դեռևս ձեռք չեն բերված անհրաժեշտ կայունություն ու դինամիկություն։ Ընդհանուր դրական ցուցանիշների հետ մեկտեղ տակավին շատ են լուրջ թերությունները աշխատանքի կոնկրետ ուղղություններում։ Ապահովված չեն ժողովրդական տնտեսության շատ ճյուղերի աշխատանքի ներդաշնակությունը և համաչափությունը։ Վերակառուցման գործում արմատական բեկում դեռևս չկա։ Լճացման երևույթները, արգելակման իներցիան դանդաղ են հաղթահարվում։

Վերակառուցման իրական պտուղների մասին մարդիկ դատում են կոնկրետ գործերով, ըստ այնմ, թե ինչպես է իրադրությունը փոխվում յուրաքանչյուր գործարանում, ֆաբրիկայում, կոլտնտեսությունում, սովխոզում, մինիստրությունում, գերատեսչությունում, շրջանում ու քաղաքում, թե աշխատավորական կոլեկտիվները ինչպես են լուծում իրենց առջև դրված խնդիրները։ Եվ եթե այս դիրքերից գնահատելու լինենք մեր աշխատանքը, ապա, անկեղծ ասած, պետք է խոստովանենք, որ այն դեռևս չի համապատասխանում կուսակցության արդի պահանջներին։

Խափանումներն ու վրիպումները ամենից հաճախ լինում են քաղաքական ու կազմակերպչական պատշաճ աշխատանքի բացակայության պատճառով։ Կենտկոմի բյուրոյին առայժմ չի հաջողվել նպատակամետ բնույթ հաղորդել այդ աշխատանքին, ուշադրությունը կենտրոնացնել առավել կարևոր հարցերի վրա։ Մի շարք կուսակցական կազմակերպություններ, շատ կադրեր, կոմունիստներ դուրս չեն գալիս տեղի ունեցող պրոցեսների դանդաղ իմաստավորման վիճակից։

Դեմոկրատացումը և տնտեսական ռեֆորմը արմատապես փոխում են իրավիճակը, ինչը, բնականաբար, պահանջում է կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների աշխատանքի ոճի ու մեթոդների, թերևս նաև ֆունկցիաների համապատասխան փոփոխումներ։ Սակայն մենք դրան դեռևս չենք հասել։ Հին կերպով՝ հենց Կենտկոմի բյուրոն, կուսակցական կոմիտեներն անմիջականորեն ձեռնամուխ են լինում այնպիսի հարցերի լուծմանը, որոնք երբեմն բնավ հատուկ չեն իրենց, մի բան, որ շատ ուժեր ու ժամանակ է խլում, հնարավորություն չի տալիս ավելի լրիվ լուծել հիմնական խնդիրը՝ ուղղություն տալ, կոորդինացնել, միավորել, խթանել մասսաների սոցիալական ակտիվությունը՝ կուսակցական կազմակերպությունների միջոցով, մեր բոլոր կադրերի միջոցով, մեր գործունեության բոլոր բնագավառներում առողջ, եռանդալից իրադրություն ստեղծելու միջոցով։

Քաղաքականությունը կոնկրետ գործերի փոխարկելու համար հարկավոր են կատարողական բարձրագույն կարգապահություն, ընդունված որոշումների կատարումը կազմակերպելու համառ աշխատանք։ Մենք հրատապ և հիմնավորված ոչ քիչ որոշումներ ենք ընդունել։ Սակայն չենք կարողացել հասնել դրանց լրիվ կատարման։ Անկեղծ ասենք, Կենտկոմի բյուրոն քանիցս որոշումներ է կայացրել մեր աշխատավորներին հուզող այնպիսի հարցերի վերաբերյալ, ինչպիսիք են տրանսպորտի աշխատանքի, առևտրի, կենցաղային ու կոմունալ սպասարկման, առողջապահության բարելավումը, պայքարը այդ ոլորտներում եղած բացասական երևույթների դեմ, վարչական մարմինների դերի բարձրացումը կաշառակերության, հափշտակումների, սպեկուլյացիայի դեմ մղվող պայքարում և ուրիշ շատ հարցերի վերաբերյալ։ Բայց այսօր էլ, ինչպես արդեն ասվեց, Կենտկոմին հասցեագրվող նամակներում, հանդիպումների ժամանակ աշխատավորները քննադատական դիտողություններ են անում այդ առթիվ։

Կենտկոմի բյուրոյին դեռևս պակասում է անհրաժեշտ պահանջկոտությունը կադրերի նկատմամբ ընդունված որոշումների իրագործման համար։ Անբավարար է նաև Կենտկոմի բյուրոյի այն անդամներին ու անդամության թեկնածուներին ներկայացվող անհատական պահանջը, որոնք պատասխանատու են աշխատանքի որոշակի ուղղությունների և տեղամասերի համար։ Մենք դեռևս չենք կարողացել հաղթահարել քաղաքական ու կազմակերպչական հուլությունը, նախաձեռնության բացակայությունը կուսակցական շատ կոմիտեների ու նրանց ղեկավարների գործունեության մեջ։ Դեռևս շատ են խզումները Կենտկոմ—քաղկոմ, շրջկոմ—սկզբնական կուսկազմակերպություն շղթայում։

Կենտկոմի բյուրոյի ու քարտուղարության աշխատանքի թերություններն ու բացթողումները ես վերագրում եմ նախ և առաջ ինձ, որպես Կենտկոմի առաջին քարտուղարի։

Բոլոր պայմաններն ստեղծված են բյուրոյի նիստերում կարծիքների ազատ ու արգասավոր փոխանակման, նախաձեռնության դրսևորման, համաձայնեցված, կշռադատված որոշումների ընդունման համար։ Կյանքը, պրակտիկան ցույց են տվել հանրապետության էկոնոմիկայի և հատկապես արդյունաբերության ստրուկտուրան նվազ նյութատար, նվազ էներգատար ուղղությամբ, էկոլոգիական անվտանգության ապահովման հիման վրա կատարելագործելու կուրսի, արտադրողական ուժերի տեղաբաշխման սխալներն ուղղելու և այն արմատապես բարելավելու, տնտեսական պոտենցիալը հանրապետության տարածքում համաչափորեն տեղաբաշխելու, լեռնային ու նախալեռնային շրջաններն ավելի արագ զարգացնելու, ջրային ռեսուրսները մի շարք խոշոր ջրամբարների կառուցման միջոցով կենտրոնացնելու, էկոլոգիական պրոբլեմները լուծելու կուրսի կենսականությունն ու ճշտությունը։ Բայց այս կարևորագույն պրոբլեմներից մի քանիսը, ցավոք, դանդաղ են լուծվում։ Դա բացատրվում է նաև նրանով, որ ես միշտ չէ, որ ցուցաբերում եմ հարկ եղած հաստատակամությունը։ Դրան խանգարում է այն, որ ես հաճախ շատ ժամանակ եմ հատկացնում ընթացիկ, երկրորդական հարցերի լուծմանը։

Անհրաժեշտ է, որ ես, որպես առաջին քարտուղար, էլ ավելի բարձրացնեմ պահանջկոտությունը կադրերի, հատկապես քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարների, հանրապետական մարմինների ղեկավարների նկատմամբ, ինչպես նաև ուժեղացնեմ Կենտկոմի բյուրոյի անդամներին ու քարտուղարներին ներկայացվող պահանջկոտությունը։

Կենտկոմի բյուրոն, ես, որպես առաջին քարտուղար մեղանում չպետք է թույլ տանք դանդաղկոտություն հասունացած կադրային հարցերի լուծման գործում։ Իսկ այդպես լինում է։

Կադրերին միշտ էլ պետք է վերաբերվել հոգատարությամբ, բարյացակամ, զորավիգ լինել նրանց, հետևել նրանց աճին, պաշտպանել անհիմն հարձակումներից ու նշավակումից։ Կադրերի հասունացումը տեղի է ունենում 10—15 տարվա ընթացքում, իսկ նրանց հանելու համար պահանջվում է անհամեմատ ավելի քիչ ժամանակ։ Հարկավոր է նրանց հետ մշտապես աշխատել, համբերատարությամբ դաստիարակել։

Դրա հետ մեկտեղ հարկավոր է ուժեղացնել նրանց գործունեության վերահսկողությունը, մեծացնել նրանց ներկայացվող պահանջները, թույլ չտալ լճացում, ժամանակին լուծել հասունացած կադրային հարցերը, զգայուն կերպով արձագանքել հասարակական կարծիքին, մանավանդ, երբ այն բացասական է որոշ ղեկավար աշխատողների նկատմամբ։

Ճիշտ է Կենտկոմի բյուրոյի, կուսակցության քաղկոմների և շրջկոմների հասցեին ուղղված քննադատությունը, թե մի շարք դեպքերում նրանց ժամանակին չեն հեռացրել զբաղեցրած պաշտոններից, ուշացումով են գնահատական տվել, ներողամտորեն են վերաբերվել այն կադրերին, որոնք թույլ են տվել այս կամ այն խախտումը, վատ են աշխատել, չեն կատարել իրենց պարտականությունները։

Կուսակցական կոմիտեների կողմից կադրերի հետ տարվող աշխատանքի ակտիվ կատարելագործումը մեր առաջնահերթ խնդիրն է։ Այս կապակցությամբ հարկ է ասել, որ Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Յու. Կոչետկովին, բաժնի վարիչ, Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու ընկ. Ք. Մանդալյանին առայժմ չի հաջողվել նպատակասլաց բնույթ տալ կազմակերպական-կուսակցական աշխատանքին, ուշադրությունը բևեռել առավել գլխավոր հարցերի՝ կադրերի առաջքաշման ռեզերվի նախապատրաստման, վե-

րակառուցման ղեկավարման առաջավոր փորձի ամփոփման և կուսակցական աշխատանքի պրակտիկայում դրա արմատավորման, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման գործում կուսակցության շրջկոմների, քաղկոմների դերի ու պատասխանատվության բարձրացման վրա։ Թույլ է կազմակերպված նաև կատարման վերահսկումը։ Կենտկոմի ապարատում վերահսկողության ներգործուն համակարգ ստեղծելու փորձն առայժմ չի հաջողվել։

Ընկ. Յու. Կոչետկովը պետք է ավելի հաճախ լինի կուսակցական կոմիտեներում, սկզբնական կուսկազմակերպություններում, տեղերում ծանոթանա նրանց կողմից կատարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքին, անմիջականորեն իր անձնական տպավորությունները կազմի կադրերի, նրանց աշխատանքի մասին։ Հարկավոր է ուժեղացնել Կենտկոմի բաժինների կադրային աշխատանքի կոորդինացումը, առավել ներգործուն զբաղվել կադրերի ռեալ ռեզերվի ստեղծմամբ։ Հենց մինչև վերջերս ռեզերվի հետ կատարվող ամբողջ աշխատանքը հանգեցվում է ցուցակներ կազմելուն։ Մենք հիմա էլ չենք ազատվել այդ ցավից։ Ցուցակների հարցում մեզ մոտ կարծես ամեն ինչ կարգին է, բայց կոնկրետ կադրային հարց լուծելիս, կոնկրետ թեկնածություն ընտրելիս մենք հաճախ բախվում ենք դժվարությունների։ Պետք է ճեղքել ցուցակների հոռի շրջանակը, մերձենալ աշխատավորական կոլեկտիվներին, ընդլայնել կադրերի ընտրության բազան։

Եվ ստեղծված վիճակից ելքը այստեղ նույնն է. ընդլայնել հրապարակայնությունը, զարգացնել դեմոկրատական սկզբունքները։ Մենք արդեն ունենք բավական լավ փորձ, երբ ռեզերվի մեջ մտցնելու հարցը նախապես քննարկվում է կուսակցական կոմիտեի կամ սկզբնական կազմակերպության բյուրոյի նիստում։ Ռեզերվի ցուցակները փակցվում են աշխատավորական կոլեկտիվի քննարկման համար։ Այդպես են վարվում, օրինակ, կուսակցության Սովետական շրջկոմում։ Պրակտիկան ցույց է տվել, որ կադրային ռեզերվի հետ տարվող աշխատանքի այդպիսի համակարգը հնարավորություն է տալիս ամեն օր ստուգել և վերահսկել մարդկանց գործարար և բարոյական հատկանիշները, նրանց օգնել հետևողականորեն տիրապետելու աշխատանքի նորանոր աստիճաններ։ Առանձնահատուկ ուշադրություն պետք է դարձվի ռեզերվի ստեղծմանը ոչ բնիկ ազգությունների ներկայացուցիչներին առաջ քաշելու համար։

Պետական ձեռնարկության մասին օրենքի գործողության պայմաններում մենք պետք է աշխատանքի նոր ձևեր գտնենք աշխատավորական կոլեկտիվների ղեկավար կադրեր ընտրելիս։ Աշխատավորական կոլեկտիվները նախապատրաստելով ղեկավարների ընտրություններին, կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է հիմնավորապես ուսումնասիրեն իրադրությունը, մարդկանց կարծիքներն ու տրամադրությունները, խորապես ծանոթանան առաջադրվող թեկնածություններին։ Միայն այդ դեպքում մենք երաշխիք կունենանք, որ աշխատավորական կոլեկտիվի ղեկավար կդառնան բանիմաց, գրագետ, քաղաքականապես պատրաստված, կյանքի հետ սերտորեն կապված մարդիկ։

Վերակառուցման երկրորդ փուլը ավելի բարձր պահանջներ է ներկայացնում բոլոր մակարդակների կադրերին։ Կենտկոմի բյուրոն գտնում է, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումից հետո վերափոխումները առայժմ միայն գծագրվում են, արմատական տեղաշարժեր տեղի չեն ունեցել։ Կենտկոմի բյուրոն պետք է, նախ և առաջ, վճռական շրջադարձ ապահովի դեպի կադրերի հետ տարվող աշխատանքի դեմոկրատացում, դեպի նրանց ուշադիր ընտրություն և առաջադրում։ Հարկավոր է կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների կարծիքները առավել լրիվ հաշվի առնել կադրեր առաջադրելիս։ Նրանց գործարար և քաղաքական հատկանիշները ուսումնասիրել ավելի խորը, գործերով, կադրերի հետ կոնկրետ շփման, հասարակական-քաղաքական և մասնագիտական բնույթի կոնկրետ հանձնարարությունների միջոցով։ Երկրորդ, կադրերին գնահատելիս պետք է ղեկավարվել գլխավոր չափանիշով՝ վերակառուցման կոնկրետ գործեր, նորացման, իրավիճակի բարեփոխման աշխատանքի կոնկրետ արդյունքներ։ Պետք է ապահովվեն վերահսկողությունը վերից և վարից, ղեկավարների հաշվետու լինելը, նրանց փոխարինելիությունը։ Երրորդ, հարկա-



վոր է մշտապես սովորեցնել կադրերին, նրանց օգնել յուրացնելու մեր զարգացման նոր փուլի պահանջները, դաստիարակել հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության ոգով, պայմաններ ստեղծել նրանց ինքնուրույնության, նախաձեռնողության և սոցիալիստական ձեռներեցության դրսևորման համար։ Դրա հետ մեկտեղ պետք է վճռականորեն ազատվել այն աշխատողներից, ընդ որում ամեն աստիճանի, որոնք չեն ընկալում նորը, մերժում են թե՛ դեմոկրատացումը և թե՛ էկոնոմիկայի նոր մեխանիզմը։

Չէ՞ որ դեռ մի շարք տեղերում դանդաղ են փոխվում սոցիալ-տնտեսական, կուլտուրական շինարարության պրոցեսների կուսակցական ղեկավարման ոճն ու մեթոդները։ Մեզ մոտ քիչ չեն այնպիսի կուսկազմակերպությունները, այդ թվում նաև շրջանայինները, որոնք առայժմ իրոք չեն ներգրավվել վերակառուցման մեջ, չեն որոշել իրենց տեղը նոր խնդիրների լուծման գործում, շարունակում են հանդես բերել ոչնչով չարդարացված բարեհոգություն, սպասողական դիրք են բռնել, չեն բարձրացնում պահանջկոտությունը կադրերի նկատմամբ։ Նրանց մի մասը հետ է մնում կյանքից, մարդկանց տրամադրություններից և ավանգարդում լինելու ու աշխատավորներին իրենց հետևից տանելու փոխարեն հայտնվել է սկսվող վերափոխումների պոչում։

Բարդ շատ պրոբլեմներ են կուտակվել Շամշադինի շրջանի էկոնոմիկայում, սոցիալական ոլորտում։ Վերջին երկու տարիներին այստեղ բարձրացել է գյուղատնտեսական մթերքների բոլոր տեսակների ինքնարժեքը։ Լուծված չեն ջրամատակարարման հարցերը, չի մշակվել մինչև 2000 թվականը բնակչությանը բնակարաններով ապահովելու ծրագիր։ Շրջանում առաջացել է գաղափարաբարոյական անառողջ մթնոլորտ։ Մի քանի անգամ ավելացել է բնակչության կողմից վերադաս մարմիններ ուղարկվող բողոքների հոսքը։ Թվում էր, թե վերակառուցման ուղղությամբ բյուրոյի կատարած աշխատանքի մասին հաշվետվության մեջ շրջկոմը պահանջկոտ, քննադատական գնահատական կտար այդ և մյուս փաստերին։ Ցավոք, զեկուցումը, որով հանդես եկավ կուսակցության շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Քոսակյանը, թույլ էր, ոչ կոնկրետ, հագեցած ընդհանուր արտահայտություններով։ Դա էլ հենց կարծես տոն տվեց պլենումին, որն անցավ գաղափարակազմակերպական ցածր մակարդակով, ինքնահանգստացման և անսկզբունքայնության մթնոլորտում։ Բնական է, որ նման պայմաններում դժվար էր սպասել, թե օբյեկտիվ գնահատական կտրվի շրջկոմի բյուրոյի, նրա առաջին քարտուղարի աշխատանքին։ Կարելի է ասել, Շամշադինի շրջկոմի պլենումը չստացվեց։ ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, անշուշտ, կտա այդ փաստի գնահատականը։

Կենտկոմի բյուրոն, քարտուղարությունը պետք է եզրակացություններ անեն, և աշխատանք տանեն այնպես, որպեսզի ընտրովի մարմինների, հատկապես կուսակցական կոմիտեների հաշվետվություններն անցնեն ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի որոշմանը, Կենտկոմի հիմնադրույթներին լրիվին համապատասխան։

Վերջերս տեղից ստացված ահազանգերի հիման վրա լուրջ թերություններ բացահայտվեցին Թալինի շրջկոմի աշխատանքում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Մանուկյան)։ Վերջին երկու տարում շրջանում ղեկավար պաշտոնների են նշանակվել մշտապես Երևանում բնակվող մի շարք աշխատողներ։ Նրանցից ոմանք իրենց պաշտոնեական պարտականությունների կատարման համար ամեն օր մայրաքաղաքից մեկնում են շրջան և վերադառնում։ Կուսակցության շրջկոմը հասարակական սննդի միավորման դիրեկտոր էր հաստատել մի «պրոֆեսիոնալի», որը, նախկին բուֆետապան, ընդամենը մի քանի ամիս էր աշխատել որպես ապրանքագետ և Թալինի ներքին գործերի շրջանային բաժնի պետի հարազատ եղբայրն է։ Չորս ամիս անց նրան տրամադրեցին հողամաս և թույլատրեցին կառուցել 95 քառակուսի մետր մակերեսով տուն։ Օգտվելով վերահսկողության բացակայությունից և շրջանի ղեկավարների թողտվությունից, Ե. Պետրոսյանը կառուցեց 380 քառակուսի մետր ընդհանուր մակերեսով երկհարկանի առանձնատուն։ «Հայշրշին» № 21 ՇՄՇ-ի պետ Ա. Խաչատրյանը ապօրինաբար քառապատիկ ընդլայնված հողամասում կառուցել է 380 քառակուսի մետր մակերեսով երկհարկանի տուն ընդարձակ նկուղով և ավտոտնակով։ Ընդգծենք, որ նա պետական երկու բնա-

կարան ունի Երևանում և Թալինում։ Մի՞թե կարելի է հույս տածել, որ այդպիսի կադրային աշխատանքը և շրջանի ղեկավար կադրերի այդպիսի վարքագիծը կնպաստեն վերակառուցմանը, սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանը, բարոյական մթնոլորտի առողջացմանը։

Վերակառուցման գործում լրջորեն հետ են մնում Գուգարքի (քարտուղար՝ ընկ. Լ. Բաղդասարյան), Ազիզբեկովի (քարտուղար՝ ընկ. Վ. Վարդանյան), Ամասիայի (քարտուղար՝ ընկ. Ի. Բաղիրով) կուսշրջկոմները։ Այստեղ ավելի շատ խոսում են վերակառուցման մասին, բայց քիչ բան են անում իրադրությունը բարեփոխելու համար։

Մենք պետք է վերջ տանք կուսակցական մարմինների կողմից սովետական, տնտեսական ղեկավարներին փոխարինելու մեզ մոտ տակավին հանդիպող պրակտիկային։ Կենտկոմի բյուրոն, քարտուղարությունը պայքարում են այդ հնացած, արմատակալած հիվանդության դրսևորումների դեմ։ Բայց, այդուհանդերձ, այդ ցավից մենք լիովին չենք ազատվել։ Այդ թերությունը առավել խոր արմատներ է գցել կուսակցության քաղկոմներում և շրջկոմներում։ Եվ մենք բոլորս պետք է վճռականորեն թոթափենք ամեն ինչ մեզ հարմարեցնելու ձգտումը, բոլոր կադրերին օգնենք ազատվելու աշխատանքի վարչական-ճնշողական ոճից։

Մեր ընդհանուր խնդիրն է աշխատանքի ծանրության կենտրոնը փոխադրել սկզբնական կուսակցական կազմակերպություններ, առանձնակի ուշադրություն դարձնել այն բանին, որ ընտրովի մարմիններն սկսեն իրոք աշխատել, որ նրանք լիովին ազատվեն իներցիայից, պահպանողականությունից, կազմակերպամոլությունից։ Մեր աշխատանքը պետք է կենտրոնացվի կոմունիստների առավելագույն ակտիվացման վրա։ Եթե կուսակցական կազմակերպություններն իրենց պրակտիկ գործունեության մեջ կարողանան լիովին բացահայտել և ակտիվացնել մարդկային գործոնը, նրա ստեղծագործական պոտենցիալը, գործով ապահովեն ավանգարդային դերը, ապա հաջողությունը երաշխավորված կլինի։

Այս գործում նրանց պետք է ակտիվորեն օգնեն կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները, Կենտկոմը։ Այդ մարմինների աշխատողները պետք է ամենասերտ կերպով կապված լինեն սկզբնական կուսկազմակերպությունների հետ, հաճախ լինեն տեղերում, բանիմացորեն օգնեն վերակառուցմանը, հանդես գան ոչ թե որպես ստուգողներ, այլ՝ խորհրդատուներ, օգնականներ։ Կայացած ժողովներում քանիցս ղեկավար կուսակցական աշխատողների հասցեին կշտամբանք է հնչել այն կապակցությամբ, որ շատ կուսկազմակերպություններում նրանց տարիներով չեն տեսնում։

Ընկերնե՛ր։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն վերակառուցման ուղիով հաջող առաջընթացի երաշխիքը համարում է ներկուսակցական դեմոկրատիայի լայն զարգացումը։ Միայն այդ դեպքում կուսակցական-քաղաքական աշխատանքը կազատվի ձևամոլությունից ու բյուրոկրատիզմից, անպատասխանատվությունից ու լճացումից։ Մենք պարտավոր ենք ավելի հաստատակամորեն խորացնել դեմոկրատացման պրոցեսը, ընդլայնել հրապարակայնությունը, բացախոսությունը կուսակցական կազմակերպությունների աշխատանքում, քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Ըստ որում անհրաժեշտ է հիշել, որ դեմոկրատիան անարխիա և ամենաթողություն չէ, այն նախ և առաջ ենթադրում է աշխատանքային ամուր կարգապահություն, կազմակերպվածություն և կարգուկանոն։ Ցավոք, հանրապետությունում կան օրինակներ, երբ հրապարակայնության լոզունգով քողարկված իրենց գործունեությունն են ծավալում անստորագիր նամակ գրողները, դեմագոգները, զրպարտիչներն ու բանսարկուները, շաղակրատներն ու հարմարվողները, որոնք զինվել են ժամանակակից տերմինաբանությամբ։ Իսկ մենք միշտ չէ, որ ժամանակին և սկզբունքային հակահարված ենք տալիս նրանց, ովքեր շահադիտական նպատակներով ձգտում են խարխլել կարգուկանոնն ու կարգապահությունը։

Առաջիկա համամիութենական կուսակցական կոնֆերանսի կապակցությամբ նպատակահարմար է թվում քննարկել ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման այնպիսի կողմեր, ինչպիսիք են գաղտնի քվեարկությամբ կուսակցական կոմիտեների քարտուղարների ընտրությունը, ըստ



որում առնվազն երկու թեկնածության առաջադրմամբ, համագումարների, կոնֆերանսների, հաշվետու-ընտրական կամպանիաների միջև իրենց կատարած աշխատանքի մասին ընտրովի կուսակցական մարմինների պարտադիր հաշվետվություն մտցնելը։ Հնարավոր է նաև սկզբնական կուսակցական կազմակերպություններին իրավունք տալ թեկնածուներ առաջադրել վերադաս կուսակցական մարմիններում ընտրելու համար։ Մեր կարծիքով, ուշադրության են արժանի կուսանդամության թեկնածուներ ընտրելու և նրանց կուսշարքերն ընդունելու պրակտիկան կատարելագործելու, մասնավորապես ծառայողների սոցիալական դրությունը պարզելիս նրանց սոցիալական ծագումը հաշվի առնելու առաջարկությունները։

Տնտեսական և քաղաքական սիստեմի վերակառուցումը ենթադրում է աշխատավորների լայն և ռեալ ներգրավում պետական և հասարակական գործերի, տնտեսական և սոցիալական խնդիրների լուծման մեջ։ Ապրիլյան պլենումից հետո անցած ժամանակամիջոցում սովետների հեղինակությունը նկատելիորեն աճել է, ընդլայնվել են նրանց իրավունքներն ու կոնկրետ պարտականությունները։ Նրանց գործունեության մեջ սկսել է ավելի ու ավելի լրիվ ու հետևողականորեն իրականացվել օրենսդրության, կառավարման և վերահսկման միասնության լենինյան սկզբունքը։ Ավելի բազմազան են դարձել սովետների գործունեության մասին բնակչությանը տեղեկացնելու, նրանց կողմից կատարվող աշխատանքը քննարկելու ձևերը։ Ընդլայնվել է սովետական մարմինների, ձեռնարկությունների և հիմնարկների ղեկավարների կողմից քաղաքացիների անձնական ընդունելության պրակտիկան։

Գերագույն սովետի նախագահությունը, նրա նախագահը՝ Կենտկոմի բյուրոյի անդամ ընկ. Հ. Ոսկանյանը, դեռ չեն հասել գործկոմների և ամբողջությամբ վերցրած սովետների աշխատանքի վերակառուցման՝ հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման արագացման գործում։ Սովետների և նրանց գործադիր մարմինների աշխատանքում դեռևս քիչ չեն լուրջ թերությունները։ Նախ և առաջ, մեզ չի կարող գոհացնել, թե մի շարք տեղերում փաստորեն ինչպես են իրագործվում ժողովրդապետության մարմինների աճած պոտենցիալը, լայն հնարավորությունները։ Բնավ էլ ոչ բոլոր սովետներն են կարողացել հաղթահարել լճացման իներցիան, իրենց զգալ սեփական տերիտորիաների տերեր։

Արտադրական և սոցիալական հարցերը լուծելիս ավելի հարձակողական դիրք պետք է բռնեն արհմիությունները։ Հարկ է ասել, որ արհմիութենական կազմակերպությունների գործունեությունը դարձել է ավելի բովանդակալից, որոշակիորեն հարստացել աշխատավորներին արտադրության կառավարման մեջ ներգրավելու, «Պետական ձեռնարկության (միավորման) մասին» ՍՍՀՄ օրենքի իրագործումը և աշխատավորական կոլեկտիվները լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման փոխադրելը նախապատրաստելու փորձով։ Սակայն ՀԱՄԽ-ը, նրա նախագահը՝ Կենտկոմի բյուրոյի անդամ ընկ. Մ. Հարությունյանը, դեռևս չեն հասել արհմիութենական շատ կազմակերպությունների պասիվության հաղթահարման, դրանց կազմակերպական ամրապնդման, ժողովրդական տնտեսության ճյուղերում տնտեսավարման նոր մեթոդների արմատավորման համար հանրապետական կոմիտեների պատասխանատվության բարձրացման։ Նրանք հետևողականորեն չեն զբաղվում աշխատավորների արտադրական և սոցիալ-կենցաղային պայմանների բարելավմամբ, մինչև վերջ չեն օգտագործում իրենց լիազորություններն ու իրավունքները արտադրությունում կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման համար, հաստատակամություն չեն դրսևորում ադմինիստրացիաների կողմից աշխատանքային օրենսդրության կիրառման հարցերում։

Հանրապետության կուսակցական կազմակերպության առանձնակի հոգածության առարկան միշտ եղել և մնում են երիտասարդության դաստիարակության և կազմավորման հարցերը, վերակառուցման պրոցեսի արագացման, մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության մեջ կոմերիտմիության դերի բարձրացման հարցերը։ Մենք հպարտանում ենք այն բանով, որ հանրապետությունում աճում է արժանի հերթափոխ, որը խորապես նվիրված է կոմունիզմի իդեալներին։ Ավելի արգասավոր է դարձել հանրապետության երիտասարդության մասնակցությունը պետական գործերի կառավարմանը։

ժողովրդական դեպուտատների բոլոր աստիճանի սովետների կազմի մեկ երրորդից ավելին մինչև 30 տարեկան երիտասարդներ են։ Ակտիվացել է հանրապետական կոմերիտական կազմակերպության գործունեությունը օրենսդրական նախաձեռնության իրավունքի կիրառման հարցում։ Կուսակցական, սովետական մարմինները սկսել են ավելի հաճախ քննության առնել կոմերիտմիության կոմիտեների կողմից ներկայացվող առաջարկությունները։ Միևնույն ժամանակ, մի շարք կոմերիտական կոմիտեներում արմատախիլ չի արվել ձևամոլությունը, կենդանի աշխատանքը ճնշված է կազմակերպամոլությամբ և որպես դրա հետևանք ցածր է կոմերիտականների ակտիվության մակարդակը, մեծ չէ նրանց ավանդը քաղաքի, շրջանի, ձեռնարկության գործերում։ Այդ թերությունների վերացմամբ պետք է ավելի ակտիվորեն զբաղվի բյուրոյի անդամության թեկնածու ընկ. Հ. Հակոբյանը։

Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժինը պետք է ավելի շատ ուշադրություն նվիրի սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, մյուս հասարակական կազմակերպությունների գործունեությանը։ Չէ՞ որ վերջին հաշվով պատասխանատվությունը նրանց վերակառուցման և աշխատանքի համար ընկած է կուսակցական կոմիտեների վրա։ Ինքնաքննադատաբար պետք է ասել. այստեղ Կենտկոմի բյուրոն միշտ չէ, որ պատշաճ պահանջկոտություն է ցուցաբերում։

Ընկերնե՛ր։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, քարտուղարությունը քննադատաբար վերաիմաստավորում են հանրապետությունում ստեղծված տնտեսական իրադրությունը, որոնում լճացման երևույթների առավել ակտիվ հաղթահարման ուղիներ, ձեռնարկում արմատական տնտեսական ռեֆորմի իրագործման նախապատրաստման կոնկրետ քայլեր։

Արդի իրավիճակի բարդությունն այն է, որ զուգահեռաբար գործում են տնտեսավարման թե՛ հին և թե՛ նոր համակարգերը։ Ըստ որում էկոնոմիկայի կառավարման նոր մեթոդները ձևավորման փուլում են, իսկ հին համակարգը աստիճանաբար կորցնում է իր ամբողջականությունը։ Մենք պետք է գործով ապահովենք տնտեսավարման նոր մեթոդների արմատավորման առավելագույն հատույցը, որակական դրական տեղաշարժերի հասնենք հենց այսօր, մեր վերակառուցման վճռական փուլում։ Ցավոք, կյանքում դա առայժմ չկա։

Նախ և առաջ արդյունաբերության մասին։

Ընդհանուր առմամբ թողարկվող արտադրանքի ծավալների աճի տեմպերը համապատասխանում են հնգամյա առաջադրանքներին։ Յուրացվել և թողարկվում են տեխնիկատնտեսական բարձր պարամետրեր ունեցող և բարձրորակ ժամանակակից շատ արտադրատեսակներ։ Տեղի է ունենում տնտեսավարման նոր մեթոդների արմատավորման պրոցես։ Առանձին աշխատավորական կոլեկտիվներ լավ արդյունքների են հասել այդ ճանապարհին։ Ընդհանուր առմամբ նվազում են արտադրության նյութատարությունն ու էներգատարությունը։

Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Ղամբարյանը, Կենտկոմի բաժինների վարիչներ ընկ. ընկ. Վ. Մեհրաբյանը, Ռ. Ստեփանյանը, Ա. Պյատկովան, Գ. Հարությունյանը առայժմ կուսակցության քաղկոմների, շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների միջոցով չեն հասել ձեռնարկությունների ղեկավարների, մասնագետների, աշխատավորական կոլեկտիվների աշխատանքի ատիվացման, իսկական բեկման՝ գիտատեխնիկական առաջադիմության արագացման, աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի, արտադրության արդյունավետության բարձրացման, պլանային և պետական կարգապահության էական բարձրացման գործում։

Անթույլատրելիորեն ցածր մակարդակի վրա է ամբողջ աշխատանքի գնահատման կարևորագույն տնտեսական ցուցանիշի՝ արտադրանքի պայմանագրային մատակարարումների կատարումը։ Մատակարարումների պարտավորությունների հաշվառմամբ. արտադրանքի իրացման պլանը 1987 թվականի տասնմեկ ամսում կատարվել է 97,3 տոկոսով։ Փաստորեն չորս ձեռնարկությունից մեկը ձախողել է արտադրանքի մատակարարումների պայմանագրերի կատարումը։ Հինգ ձեռնարկությունից մեկը չի կատարել աշխատանքի արտադրողականության աճի պլանը։ Ձեռնարկությունների 15,4 տո-



կոսը չի կատարել ինքնարժեքի նվազեցման պլանը, թույլ է տվել 48 միլիոն ռուբլու գերածախս։ 72 ձեռնարկություն աշխատում է վնասով։ Հատկապես անբավարար են գործերը մեքենաշինական համալիրում, որտեղ, մատակարարումների հաշվառմամբ, արտադրանքի իրացման ծավալի պլանը ամբողջությամբ վերցրած թերակատարվել է 6,3 տոկոսով։ Ըստ որում պլանները չի կատարել ձեռնարկությունների ավելի քան 75 տոկոսը։

Ամբողջությամբ վերցրած հանրապետության մեքենաշինական համալիրի վիճակը լուրջ մտահոգություն է հարուցում։ Ընթացիկ տարվա 11 ամսում ժողովրդատնտեսական բոլոր համալիրներից միայն մեքենաշինականն ու մետալուրգիականը չեն ապահովել ապրանքային արտադրանքի պլանի կատարումը։ Մեքենաշինության արտադրության աճի տեմպերը կազմել են ընդամենը 3,5 տոկոս, ինչը մեկ կետով ցածր է ընդհանուր առմամբ արդյունաբերության մեջ եղածից։ Հնգամյակի երկու տարվա աշխատանքի արդյունքներով ճյուղը դուրս չի գալիս հնգամյա պլանով նախատեսված բնագծեր։ Այստեղ դանդաղ է նորացվում արտադրական ապարատը։ Մի շարք պրոբլեմների լուծումը պահանջում է հետևողական աշխատանք միութենական մինիստրությունների հետ, բայց դրանց մի մասը անշահագրգիռ դիրք է բռնել, իսկ հանրապետության Կենտկոմը և կառավարությունը անհրաժեշտ հաստատակամություն ու հետևողականություն չեն դրսևորում։

Հանրապետությունում տարիներ շարունակ չեն կատարվում գիտատեխնիկական առաջադիմության արագացման պլանները։ Պատճառն այստեղ կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների սիստեմային ու կոմպլեքսային աշխատանքի բացակայությունն է, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների ու մասնագետների պատասխանատվության նվազումը։ Այստեղ անհրաժեշտ չափով աշխատանք չի տարել Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Ղամբարյանը։ Նա պետք է խորապես կողմնորոշվի այդ գործում և ներգործուն միջոցներ ձեռնարկի։ Կենտկոմի բաժինները հետևողական աշխատանք պետք է կատարեն թողարկվող արտադրանքի որակի բարձրացման համար կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների ջանքերի մոբիլիզացման նպատակով։ Այստեղ մենք տեղ-տեղ զիջում ենք դիրքերը։ Ինն ամսում որականիշից զրկվել է հինգ անուն արտադրանք։ Ծանր վիճակ է ստեղծվել պետընդունման անցած ձեռնարկություններում։ Պետընդունման պայմաններում գործող 28 միավորումներից ու ձեռնարկություններից 11-ը չի կատարել ապրանքային արտադրանքի, իսկ 26-ը՝ մատակարարումների պլանը։

Շատ ձեռնարկություններում քիչ են իրագործվում նյութախնայողական տեխնիկա ու տեխնոլոգիա, հումքի կոմպլեքսային և անթափոն վերամշակում արմատավորելու, արդյունավետ փոխարինիչներ կիրառելու գործնական միջոցներ։ Ռեսուրսների խնայողությունը դեռ չի դարձել արտադրության ծավալների հավելաճի ապահովման կարևորագույն աղբյուր։ Դանդաղ է ծավալվում ձեռնարկությունները աշխատանքի երկհերթ և եռահերթ ռեժիմի փոխադրելու գործը։ Շատ ձեռնարկություններում աշխատանքի նոր ռեժիմի անցնելը չի ուղեկցվում հիմնական ֆոնդերի օգտագործման բարելավմամբ։

Թերություններ կան ժողովրդական սպառման ապրանքների արտադրության մեջ։

Մի շարք ձեռնարկություններում տասներկուերորդ հնգամյակում դրանց արտադրության ծավալները պլանավորված են ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և բնակչությանը մատուցվող սպասարկումների կոմպլեքսային ծրագրով նախատեսված առաջադրանքներից պակաս, այդ թվում հանրապետության տերիտորիայում գտնվող միութենական ձեռնարկություններում՝ 65,4 միլիոն ռուբլով։

Չլուծված է մնում բարդ ապրանքների և տևական օգտագործման արտադրանքների թողարկման կազմակերպման խնդիրը։ Արդարացում չունի այն փաստը, որ արդյունաբերության «Ա» խմբի մի շարք տեխնիկապես բարձր հանդերձավորված ձեռնարկությունները սահմանափակվում են միայն պարզագույն արտադրանքների թողարկումով։ Այսոր հանրապետություն են ներմուծվում տնտկուլտկենցաղի մի քանի հարյուր անուն արտադրանքներ, որոնց զգալի մասը միանգամայն կարող է յուրացնել մեր արդյունաբերությունը։ Այս գործում անհետևողականություն է թույլ տրվում թե՛ Կենտկոմի





քարտուղարների, բաժինների և թե՛ հանրապետության կառավարության կողմից։

Ընկերնե՛ր։ Ագրոարդյունաբերական համալիրի աշխատանքը ուղղակի կապված է բնակչությանը սննդամթերքներով ապահովելու հետ և պարզ է, որ այն մշտապես գտնվում է Կենտկոմի բյուրոյի ուշադրության կենտրոնում։ Հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի կառավարման նոր մարմինների գործունեության երկու տարում որոշակի աշխատանք է կատարվել պարենի արտադրությունը ավելացնելու, գյուղատնտեսական մթերքների գնումների պլանների կատարումն ապահովելու, դրանք ավելի խոր ու կոմպլեքսայնորեն վերամշակելու, սննդամթերքներով բնակչության մատակարարումը բարելավելու նպատակով։ Ամրապնդվել է կոլտնտեսությունների և սովխոզների նյութատեխնիկական բազան, մեծացել է ուշադրությունը գյուղի սոցիալական զարգացման հարցերի լուծման նկատմամբ։ Մենք ունենք արտադրական նշանակալի պոտենցիալ, որը հուսալի հիմք է պարենային արտադրանքի ծավալների հետագա ավելացման համար։ Սակայն այդ պոտենցիալն օգտագործվում է ակնհայտորեն անարդյունավետ, ինչպես անասնապահության, այնպես էլ բուսաբուծության արտադրանքի ծավալների աճի տեմպերը մեզ չեն կարող գոհացնել։

Գլխավոր պատճառը արմատացած պրակտիկան է՝ նոր խնդիրների լուծմանը ձեռնամուխ լինել հին մեթոդներով, ձգտել վերակառուցման առանց որևէ բան փոխելու։ Արմատախիլ չեն արվել կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարման կարգադրավարչական մեթոդների փաստերը։

Տնտհաշվարկը և աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերը դեռ չեն դարձել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և դրա արդյունավետության բարձրացման գերիշխող միջոցը։ Դանդաղ են արմատավորվում բրիգադային, ընտանեկան և վարձակալական (10—15 տարով) կապալը, աշխատանքի կազմակերպման և վարձատրության մյուս ժամանակակից ձևերը։ Շատ տեղերում այդ աշխատանքը հաճախ ձևական բնույթ է կրում, խախտվում են կապալի հիմնական սկզբունքները։ Միայն ընթացիկ տարում է սկսվել արտադրական ծախքերի օպերատիվ հաշվառման ու վերահսկման չեկային ձևերի կիրառությունը։ Անշտապողականություն է դրսևորվում կոլտնտեսություններն ու սովխոզները ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման փոխադրելիս։

Հանրապետության պետագրոարդը հարկ եղած աշխատանքը չի տանում կոլտնտեսությունների և սովխոզների ֆինանսական վիճակը բարելավելու համար։ Պլանավորման նորմատիվային մեթոդը ներդրվել է հանրապետության միայն 12 շրջաններում և 300 տնտեսություններում։

Գյուղատնտեսական մթերքների աճի տեմպերը հետ են մնում ամենից առաջ հանրապետության հողային ու ջրային ռեսուրսների ոչ ռացիոնալ օգտագործման պատճառով։ Շատ կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում օգտագործվող հանքային պարարտանյութերի քանակը բերքի պատշաճ հավելում դեռ չի ապահովում, ցածր են ագրոտեխնիկայի մակարդակը, կուլտուրաների բերքատվությունը, դանդաղ է ներդրվում կոմպլեքսային մեքենայացումը, առկա տեխնիկան օգտագործվում է ամենևին ոչ լրիվ չափով։

Պարենային ծրագրի բնագիծը դուրս գալու համար հանրապետությունում Կենտկոմի բյուրոյի նախաձեռնությամբ մշակված և հաստատված են գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման 1986—1990 թվականների 12 կոմպլեքսային ծրագրեր։

Կենտկոմի քարտուղար ընկ. Թ. Դիլանյանը, Կենտկոմի գյուղատնտեսության և սննդարդյունաբերության բաժինը գործուն միջոցներ չեն ձեռնարկել, որպեսզի տեղական կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները ակտիվորեն աշխատեն այդ ուղղությամբ։ Կենտկոմի ցածր պահանջկոտության, շրջանային կուսակցական կոմիտեների քաղաքական ու կազմակերպչական թույլ աշխատանքի, ինչպես նաև հանրապետության պետագրոարդի ղեկավարների անպատասխանատու վերաբերմունքի պատճառով դրանք անբավարար են իրականացվում։ Մի շարք շրջաններում (Ապարան,



Ամասիա, Անի, Եղեգնաձոր, Սպիտակ) տնտեսությունների մեծ մասը մինչև հիմա չունի ինտենսիվացման հստակ մշակված ծրագրեր։

Ընկ. Թ. Դիլանյանը պատասխանատվություն է կրում այն բանի համար, որ պետագրոարդը, կուսակցական կոմիտեները ակտիվորեն չեն աշխատում արտադրության հիմնական օղակի՝ կոլտնտեսությունների, սովխոզների, վերամշակման, պահպանման ու վաճառահանման ձեռնարկությունների արդյունավետ աշխատանքի համար առավել բարենպաստ պայմաններ ստեղծելու ուղղությամբ։ Դանդաղ են ընթանում ինտեգրացիոն պրոցեսները, կառավարման մեջ դեմոկրատական հիմունքների հաստատումը։

Պետագրոարդի, նրա տեղական մարմինների աշխատանքում չկա հարկ եղած նպատակասլացությունը։ Այդ աշխատանքը հաճախ կատարվում է առանց հաշվի առնելու ամենագլխավորը՝ վերջնական արդյունքը։ Կենտկոմի բյուրոյի անդամ, պետագրոարդի նախագահ ընկ. Վ. Մովսիսյանը անհետևողականություն է հանդես բերում ընդունված որոշումների իրականացումը կազմակերպելու գործում։ Ինչպես արդեն ասվել է, նա չի դրսևորում պարենային ապրանքներով հանրապետության բնակչության ապահովման համար պատասխանատվության սուր զգացում։ Նա դեռևս չի կարողացել պետագրոարդի հսկայական ապարատը ակտիվորեն ներգրավել վերակառուցման գործի, ճյուղի առջև կանգնած նոր խնդիրների լուծման մեջ։ Նա շատ խնդիրների լուծումը անձամբ իր վրա է վերցնում, խիստ պատասխան չի պահանջում իր տեղակալներից, որոնք 11-ն են և որոնցից մի քանիսը աշխատում են աննախաձեռնողաբար, դրսևորում են անպատասխանատվություն։ Կատարելագործման կարիք ունի պետագրոարդի բուն ապարատը։

Սուր է անասնապահական մթերքներով բնակչության ապահովման պրոբլեմը, չի պակասում համամիութենական դոտացիայի հաշվին պահանջմունքների, մասնավորապես մսի ու կաթի նկատմամբ նրա պահանջմունքների բավարարման բաժինը։ Այստեղ մի ուղի կա՝ ճյուղի ինտենսիվացումը, տոհմաբուծական գործի շեշտակի բարելավումը և կերի կայուն բազայի ստեղծումը։ Խնդիրը պարզ է, որը, սակայն, շատ տնտեսություններում կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, շրջգործկոմների, շրջանային ագրոարդյունաբերական միավորումների անբավարար կազմակերպական ու քաղաքական աշխատանքի պատճառով չի լուծվում։ Ավելին, այս տարի ամբողջությամբ վերցրած հանրապետությունում մեկ կովի կաթնատվությունը ընկել է 55 կիլոգրամով։

Պարենային ծրագրի կատարման գործում կարևոր տեղ են գրավում կոլեկտիվ այգեգործությունը, քաղաքացիների անձնական տնտեսությունները և ձեռնարկությունների, կազմակերպությունների ու հիմնարկությունների օժանդակ գյուղական տնտեսությունները։ Ընկ. ընկ. Թ. Դիլանյանը և Վ. Մովսիսյանը, չնայած Կենտկոմի և հանրապետության կառավարության բազմաթիվ որոշումներին, էական տեղաշարժերի չեն հասել այդ ուղղությամբ տեղական կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների կողմից տարվող աշխատանքում, զարգացման տեմպերը ծայրաստիճան անբավարար են։

Հանրապետությունում բոլոր հնարավորությունները կան կարտոֆիլի, բանջարեղենի, պտուղների և խաղողի հարցում բնակչության պահանջմունքը ամենաբարձր և որակյալ մակարդակով լրիվին բավարարելու համար։

Սակայն պտուղ-բանջարեղենի տնտեսության կոմպլեքսային զարգացումն ապահովելու, բնակչության մատակարարումը բարելավելու աշխատանքում էական թերությունների առկայության պատճառով մենք այդ պրոբլեմը դեռ մինչև վերջ չենք լուծել։ Ուսումնասիրելով այդ ուղղությամբ մեր կողմից տարվող աշխատանքը, ՍՄԿԿ Կենտկոմը իրավացիորեն այն անբավարար համարեց։

Արտաքուստ կարծես թե պրոբլեմ չկա։ Բնակչության մեկ շնչի հաշվով բանջարեղենի (կիլոգրամներով) սպառման խնդիրը թվում է վատ չի լուծված, այդ սպառումը մոտ է ֆիզիոլոգիական նորմաներին։ Բայց բանը բանջարեղենի տեսականին է, դրանով բնակչության ապահովումն ամբողջ տարվա ընթացքում։ Սիստեմատիկաբար ձախողվում են քիչ տարածված բանջարեղենի և կանաչեղենի գնումների պլանները։ Անցած տարի մշակվող 17 տեսակ բանջարեղենից 11-ի գծով պլանների կատարումը չապահովվեց։ Ցածր է

բերքատվությունը ջերմոցային կոմբինատներում։ Այստեղ բերքատվությունը այս տարի միայն հասավ 12 կիլոգրամի մեկ քառակուսի մետրից։ Այստեղ ուղղակի մեղք ունի ընկ. Վ. Մովսիսյանը։

Այս հանգամանքը, ինչպես նաև պահեստներով հանրապետության ցածր ապահովվածությունը թույլ չեն տալիս բնակչությանը լրիվ չափով կարտոֆիլ և պտուղբանջարեղեն մատակարարել ձմռան շրջանում։ Երկար ժամանակ մեկ բնակչի հաշվով պահեստավորվում են 34 կիլոգրամից ոչ ավելի կարտոֆիլ, բանջարեղեն ու միրգ՝ նորմայով նախատեսված 104 կիլոգրամի դիմաց։ Վատ է կազմակերպված պտուղբանջարեղենի առևտուրը։ Այս ամենը հանգեցնում է նրան, որ քաղաքի բնակիչը ստիպված է թարմ մթերքների իր պահանջմունքները բավարարել շուկայի հաշվին։

Այս հարցը մենք հատուկ քննության կառնենք։

Վերջին տարիներին թուլացել է ուշադրությունը խաղողագործության նկատմամբ։ Բյուրոն դա անթույլատրելի է համարում։ Այստեղ մենք պետք է աշխատենք պլանտացիաների վերակառուցման, խաղողի սպիտակ, սեղանի սորտերի արտադրության ավելացման ուղղությամբ։ Պետք է ավելի ակտիվորեն կատարել աշխատանքները ինտենսիվ պտղատու այգիների ստեղծման նպատակով։

Հարկ է ամենաանհետաձգելի միջոցներ ձեռնարկել վերամշակող ճյուղերի աշխատանքի բարելավման, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման և տեսականու ընդլայնման համար։

Անհրաժեշտ ենք համարում ասել, որ ես և ընկ. Ֆ. Սարգսյանը վերավստահել ենք այդ կարևոր գործերը, պատշաճ վերահսկողություն չենք սահմանել նախատեսված ծրագրերի իրականացման նկատմամբ։

Մեզ մոտ թույլ է տարածվում առաջավոր փորձը։ Այստեղ մենք բացահայտորեն պետք է հավելենք աշխատանքը։ Մի՞թե թույլատրելի է, երբ կերարտադրության ինտենսիվացման բնագավառում էջմիածնի շրջանի կատարած աշխատանքի փորձը, որի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմը անդրկովկասյան սեմինար-խորհրդակցություն անցկացրեց, մեզանում հարկ եղած կիրառումը չի գտնում։

ՍՄԿԿ Կենտկոմը նամակով դիմել է ագրոարդյունաբերական համալիրի բոլոր աշխատավորական կոլեկտիվներին, կոչ անելով արագացնել հողագործական մթերքների արտադրության աճի տեմպերը, ապահովել պարենային ծրագրի լրիվ կատարումը։

Այս տեսակետից բեկումնային պետք է դառնա 1988 թվականը, որը որոշիչ նշանակություն ունի ամբողջությամբ վերցրած հնգամյա պլանի կատարման համար։

Պետագրոարդը, նրա տեղական մարմինները, կուսակցական, սովետական մարմիններն ու կազմակերպությունները պետք է յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սովխոզում, հաշվի առնելով աշխատանքի արդյունքները, կուտակված փորձն ու թույլ տրված սխալները, մշակեն և իրականացնեն կազմակերպական, տնտեսական, տեխնոլոգիական և այլ ներգործուն միջոցների կոմպլեքս, որոնք երաշխավորված կերպով ապահովեն առավելագույն բերքի ստացումը յուրաքանչյուր դաշտից, յուրաքանչյուր ֆերմայի առավելագույն մթերատվությունը, բուսաբուծական և անասնապահական բոլոր մթերքների արտադրության զգալի ավելացումը։

Ընկերնե՛ր։ Կենտկոմի բյուրոն վերակառուցման ներկա փուլում հիմնական խնդիրներից մեկն է համարում կապիտալ շինարարության վիճակի վճռական բարելավումը։

Հանրապետությունում աշխատանք է տարվում կապիտալ շինարարության զարգացման նոր ուղղությունների իրացման համար։ 1987 թվականից իրականացված է անցում նորմատիվային ժամկետներում օբյեկտների պլանավորմանը և կառուցմանը։ Հանրապետության շինարարության մինիստրությունը լրիվ անցել է մեծածախ առևտրի միջոցով նյութատեխնիկական մատակարարման։ Սոցիալական և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը փոխադրված է պայմանագրային գների։ 1986 թվականի համեմատությամբ 25 տոկոսով կրճատվել է միաժամանակ կառուցվող օբյեկտների թիվը։ Հատուկ ուշադրություն է նվիրվում սոցիալական նշանակության օբ-



յեկտների շինարարությանը։ Մշակված և հաստատված է «Արագացում—90» ծրագիրը, որով նախատեսվում է շինմոնտաժային աշխատանքների ընդհանուր ծավալը մեծացնել 27,3 տոկոսով, այդ թվում բնակարանային շինարարության գծով՝ 54 տոկոսով, սոցիալական և կուլտուր-կենցաղային շինարարության գծով՝ 44,4 տոկոսով։

Ամբողջությամբ վերցրած կապիտալ շինարարության մեջ տեղաշարժեր կան։ Բայց դրանք հիմնականում ձեռք են բերվել պլանային առաջադրանքների իրագործման համար կատարողների պատասխանատվությունը ուժեղացնելու, առաջադրված հարցերը նախկինի համեմատ ավելի օպերատիվորեն լուծելու միջոցով, այսինքն հիմնականում կազմակերպական բնույթի միջոցառումներով։ Այս ամենն օգնեց և իրականում ապահովեց մի շարք պլանային ցուցանիշների կատարումը, բայց կապիտալ շինարարության մեջ որակական փոփոխությունների հասցնել չէր կարող։

Կապիտալ շինարարության վիճակը միաժամանակ պահանջում է պլանավորման, կառուցվածքի կատարելագործման, նախագծային գործի բարելավման, ժամանակակից մակարդակով շինարարական ինդուստրիայի բազայի զարգացման պրոբլեմների կոմպլեքսային լուծում։ Միայն տնտեսավարման տնտեսագիտական մեթոդները գործի դնելով մենք կկարողանանք հաջողություն ակնկալել, կապիտալ շինարարության պլանների կայուն, համաչափ կատարման և որակի բարձրացման հույս ունենալ։

Իսկ դա պահանջում է Կենտկոմի բյուրոյի և հանրապետության կառավարության աշխատանքում շեշտադրումների տեղափոխում։ Ցածր է ընկ. Մ. Մուրադյանի պահանջկոտությունը շինարարական համալիրի ղեկավար աշխատողների նկատմամբ՝ նրանց կողմից շինարարական ինդուստրիայի զարգացման, շինարարական գործի կազմակերպման կատարելագործման, նոր տնտեսական մեխանիզմի ներդրման նպատակային ծրագրերի կատարման բնագավառում։ Նա և իր գլխավորած բաժինը էական փոփոխությունների չեն հասել կապիտալ շինարարության ղեկավարման ուղղությամբ կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների աշխատանքում։ Դրանք դեռևս անբավարար են զբաղվում շինարարության վերակառուցման հարցերով, հաշտվում են լճացման երևույթների, պլանային առաջադրանքների չկատարման փաստերի հետ։ Միշտ չէ, որ սկզբունքային կուսակցական գնահատական են տալիս դրան։ Կուսակցական կոմիտեները, Կենտկոմի բաժինները քիչ և ոչ կոնկրետ ձևով են աշխատում սկզբնական կուսակցական կազմակերպությունների հետ, հարկ եղածին պես չեն հոգում նրանց մարտականության բարձրացման մասին։

Հանրապետության պետպլանը չի հաղթահարել պատվիրատու մինիստրությունների ու գերատեսչությունների, տեղական մարմինների կողմից դրսևորվող նեղ գերատեսչական մոտեցումը և թույլ է տալիս, որ շինարարության պլանների մեջ մտցվեն ոչ ռեալ ծավալներ։ Պատվիրատուների անկարգապահության պատճառով խախտվում են կառուցման ենթակա օբյեկտները կապալառուների հետ համաձայնեցնելու, ինչպես նաև կապալի պայմանագրեր կնքելու ժամկետները։ Ընկ. Մ. Մուրադյանը, Կենտկոմի բաժինը պատշաճ հաստատակամություն և հետևողականություն չեն ցուցաբերում նման գործողությունները կասեցնելու գործում։

Այսպես այլևս շարունակվել չի կարող։ Անհրաժեշտ է վերջ դնել պլանավորման այդ արատավոր պրակտիկային։

Գործի շահերը պահանջում են շտապ կարգով անցնել կապիտալ շինարարության երկամյա և հեռանկարային պլանավորման, հասնել այն բանին, որ օբյեկտները կառուցվեն խստիվ նորմատիվային ժամկետներում։ Այդ մասին մենք առաջին տարին չէ, որ խոսում ենք, սակայն հանրապետության պետպլանը, պատվիրատուները, կապալային կազմակերպությունները ի վիճակի չեղան լուծելու հարցը։ Հանրապետության Մինիստրների խորհուրդը, նախագահի տեղակալ ընկ. Վ. Արծրունին պետք է սպառիչ միջոցներ ձեռնարկեն։

Լուրջ բարելավման կարիք ունի նախագծային գործը։ Կենտկոմի բաժնի կողմից կատարման թույլ վերահսկողության պատճառով և 1986 թվականին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյում կայացած քննարկումից հետո

Հայկական ՍՍՀ պետշինը համապատասխան եզրակացություններ չարեց և վիճակը փոխելու համար վճռական միջոցներ չձեռնարկեց։

Կենտկոմի բյուրոն չի հասել այն բանին, որ կապիտալ շինարարության մասշտաբների մեծացումը ուղեկցվի նրա կառավարման կատարելագործմամբ։ Շինարարական համալիրի կառավարման կազմակերպական ձևերը և տրեստների կառուցվածքը այն ձևով, որով գործում են այժմ, հետ են մնացել շինարարական արտադրության զարգացման մակարդակից և արգելակում են ճյուղի գործերի բարելավումը։ Լուրջ թերություններ կան տնտեսավարման նոր մեթոդների ներդրման աշխատանքում։

Հետագա կատարելագործման կարիք ունի շինարարության բուն պրոցեսը։ Շատ տրեստներում և վարչություններում անցումը կոլեկտիվ կապալի չէր նախապատրաստվել կազմակերպորեն և տնտեսագիտորեն։ Կուսակցության քաղկոմները և շրջկոմները հարկ եղածին պես չէին վերահսկում այդ աշխատանքը։

Դեռևս կան անտնտեսվարության և առկա արտադրական պոտենցիալի ոչ արդյունավետ օգտագործման փաստեր։ Մի՞թե թույլատրելի է, երբ հիմնական շինարարական մեխանիզմներն օգտագործվում են լավագույն դեպքում մեկ լրիվ հերթափոխով։

Շինարարական կոնվեյերը հաճախ պարապուրդներ է տալիս նյութատեխնիկական մատակարարման խախտումների, շինարարական մեքենաների ու մեխանիզմների պակասի պատճառով։ Այդ ամենը հանգեցնում է ոչ ռիթմիկ աշխատանքի, պլանային առաջադրանքների թերակատարման։

Արդի պահանջներին չեն համապատասխանում շինարարության ինդուստրիալ բազայի տեխնիկական մակարդակն ու վիճակը։ Առաջվա պես չեն կատարվում դրա վերակառուցման և տեխնիկական վերազինման պլանները։

Կենտկոմի շինարարության բաժնի ցածր պահանջկոտության պատճառով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում արված քննադատությունից հետո էլ լուրջ փոփոխություններ չեն կատարվել երկաթբետոնե կոնստրուկցիաների արտադրության համար խոշորապանել տնաշինության կարողությունների օգտագործման մեջ։

Շինարարության, առանձնապես բնակելի տների, սոցկուլտկենցաղային օբյեկտների շինարարության ռիթմի և որակի վրա չափազանց բացասաբար է անդրադառնում այն հանգամանքը, որ հանրապետությունում չեն ստեղծված տաղձագործական իրերի արտադրության անհրաժեշտ կարողություններ։ Դա հանրապետության կառավարության կողմից թույլ տրված ուղղակի վրիպում է։

Անբավարար վիճակում է շինանյութերի արդյունաբերության նյութատեխնիկական բազան։ Այստեղ մեծ է ձեռքի աշխատանքի բաժինը, կաղում է արտադրական կարգապահությունը, ցածր է թողարկվող շինանյութերի, գաջի, խեցեգործական և այլ առարկաների որակը։

Առանձնապես հարկ է ընդգծել մեր պատասխանատվությունը երկրի մյուս ռեգիոններում օբյեկտների շինարարության համար։ Կենտկոմի բյուրոյի, կառավարության ցածր պահանջկոտության հետևանքով հանրապետությունը չկատարեց Սլավուտիչ և Նովի Ուրենգոյ քաղաքներում սոցիալական օբյեկտների կառուցման իր պարտավորությունները։

Կենտկոմի բյուրոյին չի հաջողվել ինչպես հարկն է կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները դեմքով շրջել դեպի շինարարության որակը։ Վերջին ժամանակներս դրա բարելավման նպատակով ձեռնարկված միջոցներն առայժմ մեզ գոհացնել չեն կարող։ Այստեղ բոլորս, հատկապես հանրապետության պետպլանը, պետշինը, շինարարական մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է համառորեն և ակտիվորեն աշխատենք, մանավանդ որ արդեն եկող տարվանից Երևանում, ապա նաև ամբողջ հանրապետությունում պետընդունում է ներդրվելու։

Մեր ամենակարևոր խնդիրը բնակարանային պրոբլեմի լուծումն է։ Հանրապետությունում մշակված և հաստատված է մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիքի առանձին կամ անհատական տնով ապահովելու ծրագիր։ 1992 թվականին բնակարանով կապահովվեն 1987 թվականի հունվարի 1-ի դրությամբ հաշվառման վերցված քաղաքացիները։ Հինգ շրջաններում



բնակարանային պրոբլեմը լրիվ լուծված կլինի մինչև 1990 թվականը, իսկ 23 շրջաններում՝ մինչև 1995 թվականը։

Այդ պրոբլեմի լուծումը պահանջում է բնակարանային շինարարության ծավալները մեծացնել գրեթե երկու անգամ։

Այդ նպատակով մշակվում են համապատասխան ծրագրեր։ Կմեծացվեն կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարության ծավալները, կզարգանան շինարարության տնտեսական և խառը (կապալային-տնտեսական) եղանակները, կստեղծվեն ավելի շատ երիտասարդական բնակելի համալիրներ, կկազմակերպվեն գյուղում բնակելի տների շինարարության կոոպերատիվներ։

Կուսակցության քաղկոմները, շրջկոմները, ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմները, մինիստրությունները և գերատեսչությունները, ամեն մի ձեռնարկություն պետք է բնակարանային պրոբլեմի լուծումը համարեն իրենց ամենակարևոր խնդիրը և դրա կատարման համար գործի դնեն բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները։

Բնակարանային պրոբլեմը լուծելիս անհրաժեշտ է խստիվ կիրառել սոցիալական արդարության և լայն հրապարակայնության սկզբունքները, հըստակ կարգուկանոն հաստատել բնակմակերեսի հաշվառման ու բաշխման գործում։

Մեր մարդկանց համար սուր, շատ կենսական պրոբլեմ է ջրամատակարարման պրոբլեմը։ Բնակչության մեկ շնչին ընկնող ջրի սպառման մակարդակով հանրապետությունը կանգնած է միջին միութենական ցուցանիշից բարձր (ՍՍՀՄ-ում 440 լիտր/օր, Հայաստանում՝ 455)։ Դրա հետ մեկտեղ Երևանում, Լենինականում, Կիրովականում, Դիլիջանում ջուրը փաստորեն չի բավականացնում։

Պատճառն այն է, որ չեն ստեղծված ջրաբաշխման և ջրակարգավորման օպտիմալ համակարգեր։ Անհրաժեշտ քանակությամբ օրական կարգավորման ջրավազաններ չեն կառուցվում։ Անբավարար վիճակում են ջրմուղցանցերը, ցածր է դրանց շահագործման մակարդակը, ինչը հանգեցնում է խմելու ջրի մեծ կորուստների։ Ակտիվ պայքար չի մղվում նաև ջրի ռացիոնալ ու խնայողական օգտագործման համար։ Կենտկոմի բյուրոյի հանձնարարությամբ մշակվում է «Ջրամատակարարում» նպատակային ծրագիրը, որով նախատեսվում է ինչպես այդ հարցերի լուծումը, այնպես էլ նոր ջրատարների, այդ թվում գյուղական վայրերի համար փնջային ջրատարների շինարարություն։ Այդ ծրագրի իրագործումը պետք է գտնվի կուսակցության քաղկոմների, շրջկոմների, ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմների, հանրապետության համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների սևեռուն ուշադրության կենտրոնում։

Հետևողականորեն պետք է լուծվի նաև ջերմամատակարարման և տաք ջրի մատակարարման պրոբլեմը։ Եվ առհասարակ մենք պետք է շեշտակիորեն փոխենք վերաբերմունքը կոմունալ տնտեսության նկատմամբ։ Սա ասվում է այն պատճառով, որ հանրապետության պետպլանը դեռևս չի հաղթահարել կոմունալ տնտեսության զարգացման պլանավորման մնացորդային սկզբունքը։ Դրա նյութատեխնիկական բազայի զարգացմանը հատկացվող ռեսուրսները չեն համապատասխանում ռեալ պահանջմունքներին, չեն ապահովում քաղաքային տնտեսության համամասնական զարգացումը։ Կուսակցական մարմինների կողմից թուլացված է շինարարական մինիստրությունների և գերատեսչությունների, բնակարանային-կոմունալ տնտեսության մինիստրության, ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմների պատասխանատվությունը կոմունալ շինարարության պլանների կատարման համար։ Տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակներում կոմունալ նշանակության օբյեկտների շինարարությունում պակաս է իրացվել մոտավորապես 65 միլիոն ռուբլի։

Հատկապես պետք է զբաղվել բնակչության տրանսպորտային սպասարկման բարելավմամբ։ Եթե ժողովրդական տնտեսության տրանսպորտային սպասարկման հարցերը մշտապես գտնվում են Կենտկոմի ու կառավարության ուշադրության կենտրոնում, և այդտեղ գործերը ընդհանուր առմամբ վատ չեն, ապա նույնը չի կարելի ասել մարդատար տրանսպորտի, առանձ-

նապես Երևանում, աշխատանքի բարելավման մասին։ Այս հարցում ցածր է կատարողների նկատմամբ պահանջկոտությունը Կենտկոմի տրանսպորտի բաժնի կողմից (ընկ. Մ. Մինասբեկյան)։

Այն պատճառով, որ էլեկտրատրանսպորտը և ավտոտրանսպորտը Երևանում ենթարկվում են տարբեր գերատեսչությունների, այդ հարցը ասես մնացել է առանց տնօրենի։

Այստեղ քաղսովետը մեղքը գցում է ավտոտրանսպորտի մինիստրության վրա, և ընդհակառակը։ Գլխավոր շահագրգիռ անձը՝ բյուրոյի անդամության թեկնածու, Երքաղսովետի գործկոմի նախագահ ընկ. Է. Ավագյանը հարկ եղած ակտիվությունը և պատասխանատվությունը հանդես չի բերում։ Մայրաքաղաքի աշխատավորները հիմնավոր դժգոհություն են հայտնում մարդատար տրանսպորտի վատ աշխատանքի առթիվ։ Ընկերներ Կ. Ղամբարյանը, Լ. Սահակյանը, Է. Ավագյանը, Յու. Խոջամիրյանը պետք է կոնկրետ և արդյունավետ միջոցներ ձեռնարկեն այդ կարևոր սոցիալական հարցի լուծման համար։

Կենտկոմի բյուրոն, հանրապետության կառավարությունը հարկ եղած հաստատակամությունը չեն ցուցաբերում, ներգործուն միջոցներ չեն ձեռնարկում «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կատարումն ապահովելու համար նաև մեր նախորդ պլենումում արված քննադատությունից հետո։ Այստեղ մեղավոր են ընկ. ընկ. Լ. Սահակյանը, Է. Ավագյանը։ Դրա համար պատասխանատվություն է կրում նաև Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Մուրադյանը։

Ընկերնե՛ր։ Պետք է նկատի ունենալ, որ հանրապետության աշխատավորները թողարկվող ապրանքների որակով, առևտրական ու կենցաղային սպասարկման մակարդակով են նշանակալիորեն դատում հանրապետությունում տեղի ունեցող վերակառուցման պրոցեսների մասին։ Պետք է ուղղակի ասել, որ այստեղ փոփոխությունները դյուրությամբ չեն կատարվում։ Առևտրաարդյունաբերական համալիրի և սպասարկման ոլորտի շատ ղեկավարներ գերի են մնացել դարն ապրած մեթոդներին և պատկերացումներին։ Փոփոխությունները դանդաղ են կատարվում առևտրի մինիստրության, Հայկոոպի, սպասարկման ոլորտի համար պատասխանատու մյուս մինիստրությունների, գերատեսչությունների և կազմակերպությունների գործունեության մեջ։ Մենք դեռևս չենք օգտագործում սպառողական ապրանքների արտադրության և սպասարկումների ավելացման բոլոր առկա հնարավորությունները, իսկ դրանք բավական են վերը նշված ապրանքների ու սպասարկումների հարցում բնակչության պահանջմունքները լրիվ ապահովելու համար։ Բնակչության վճարովի սպասարկումների իրացման պլանային առաջադրանքները 11 ամսում կատարվել են 96 տոկոսով, դրանց աճի տեմպերը չեն համապատասխանում սահմանված առաջադրանքների մակարդակին։ Բնակչության մեկ շնչին ընկնող վճարովի սպասարկումների ծավալով հանրապետությունը միջին միութենական մակարդակից հետ է մնում 40 ռուբլով։ Միջին միութենական մակարդակից ավելի քան 200 ռուբլով մենք հետ ենք մնում նաև բնակչության մեկ շնչին ընկնող մանրածախ ապրանքաշրջանառության ծավալով։ Ընդ որում ահա արդեն երկրորդ տարին է, ինչ չի ապահովվում ապրանքաշրջանառության պլանների կատարումը։

Կենտկոմի բյուրոյի անդամ, հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ ընկ. Ս. Հարությունյանը չի հասել արդյունաբերության և առևտրի աշխատանքի հարկ եղած կոորդինացման, որն ապահովեր համաձայնեցված պահանջարկն ու առաջարկը։ Ցածր պահանջկոտության հետևանքով հանրապետության առևտրական կազմակերպությունները հարկ եղած առևտրական աշխատանք չեն տանում ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ձեռնարկությունների հետ, չեն ապահովում ապրանքային ռեսուրսներով ճկուն և օպերատիվ մանևրումը, մատակարարողները թույլ են տալիս պայմանագրային խախտումներ։

Դրա հետևանքով մերթ այստեղ, մերթ այնտեղ առաջանում է այնպիսի ապրանքների դեֆիցիտ, որոնք մեզ մոտ արտադրվում են մեծ քանակությամբ, կան բազաներում, առևտրական ցանցում։ Առևտրի ղեկավարները



գործուն միջոցներ չեն ձեռնարկում ինքնասպասարկման միջոցով չափակշռված ապրանքների վաճառքն ավելացնելու համար, ինչը գնորդի ժամանակի տնտեսումից բացի, կկասեցնի նաև ամեն կարգի չարաշահումները, գնորդներին հաշվի մեջ խաբելը, թերակշռելը։ Առևտրի, կենցաղային սպասարկման բնագավառում բացասական երևույթների դեմ պայքարը հարկ եղածին պես չի մղվում։ Այս գործում առևտրի, կենցաղային սպասարկման և Հայկոոպի ղեկավարները լիակատար անպատասխանատվություն են հանդես բերում, չկիտես ինչու դա համարելով ուրիշ մարմինների պարտականությունը։ Այստեղ ցածր է նաև քաղգործկոմների և շրջգործկոմների նախագահների պատասխանատվությունը։ Ընկ. Ս. Հարությունյանը պետք է ակտիվորեն շտկի այդ վիճակը։ Նա պետք է առավել հետևողականորեն խորամուխ լինի ապրանքաշրջանառության պլանների թերակատարման պատճառների մեջ, վճռական միջոցներ ձեռնարկի բարելավելու դրությունը, ավելի մեծ հաստատակամություն դրսևորի առևտրի, կենցաղի ոլորտի աշխատանքի, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության բարելավմանն առնչվող մի ամբողջ շարք հարցերի առաջադրման և լուծման գործում։ Խնդիր է դրված այստեղ վերակառուցմանը լրիվ ընթացք տալ, հաղթահարել իներցիան և քարացածությունը, վճռաբար ազատվել, մաքրվել այն ամենից, ինչը մռայլում է հանրապետության աշխատավորների սոցիալական ինքնազգացողությունը, չի համապատասխանում ժամանակի պահանջներին։ Այս ուղղություններում ռեալ տեղաշարժեր են հարկավոր։

Ընկ. Մ. Մուրադյանը, առևտրի բաժնի վարիչ ընկ. Ա. Արզումանյանը պետք է բարձրացնեն կուսակցության քաղկոմների և շրջկոմների, դրանց առաջին քարտուղարների պատասխանատվությունը առևտրի և սպասարկման ոլորտի վիճակի համար, որոնք պարտավոր են այդ հարցերով զբաղվել մշտապես, սիստեմատիկաբար և ոչ թե դեպքից դեպք։

Բնակչության պահանջմունքների ապահովման գործում որոշակի ավանդ պետք է ներդնի կոոպերատիվ և անհատական աշխատանքային գործունեության զարգացումը։ Հանրապետությունում արդեն գործում է 173 կոոպերատիվ և որոշակի դրական փորձ կա։ Միաժամանակ մի շարք տեղական սովետներ, հանրապետական մինիստրություններ ու գերատեսչություններ չարդարացված կերպով ձգձգում են կոոպերատիվներ կազմակերպելու, նրանց շենքեր հատկացնելու հարցերի լուծումը, քաշքշուկ և բյուրոկրատիզմ է թույլ տրվում նրանց գրանցման, փաստաթղթերի ձևակերպման գործում։ Դրա հետևանքով 1987 թվականի դեկտեմբերի 1-ի դրությամբ տասը շրջաններում ոչ մի կոոպերատիվ չէր գործում, իսկ ութ շրջաններում անհատական աշխատանքային գործունեությամբ զբաղվողների թիվը չէր անցնում 20—30 հոգուց։ Շատ տեղերում չեն կատարվում կոոպերատիվների ստեղծման վերաբերյալ պահանջները, հիմնականում այն քաղաքացիների ներգրավմամբ, ովքեր հանրային արտադրության մեջ չեն զբաղված։ Թերություններ կան կոոպերատիվները և անհատական աշխատանքային գործունեությամբ զբաղվող մարդկանց հումքով, կիսաֆաբրիկատներով ապահովելու գործում, այստեղ թույլ են տրվում նաև խախտումներ։

Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել կոոպերատիվների զարգացմանը գործունեության այն ոլորտներում, որտեղ չի բավարարվում ապրանքների ու սպասարկումների պահանջարկը, ինչպես նաև ուժեղացնել վերահսկողությունը նրանց տնտեսական գործունեության նկատմամբ, կասեցնել պետությանը խաբելու, սպեկուլյացիայի, եկամուտների ոչ ճիշտ բաշխման փաստերը, միևնույն ժամանակ թույլ չտալ նրանց տրված իրավունքների ոտնահարում։

Կենտկոմի բյուրոն գտնում է, որ չնայած սոցիալական ոլորտի պրոբլեմների նկատմամբ եղած վերաբերմունքի որոշակի բարեշրջմանը, կադրերի աշխատանքի վերակողմնորոշումը դեռևս դանդաղ է ընթանում։ Ամենքը պետք է խորապես հասկանան, որ սոցիալական քաղաքականության մեջ թույլ տրվող վրիպումները հարվածում են թե՛ էկոնոմիկային և թե՛ մարդկանց գիտակցությանը։ Սոցիալական ոլորտի նկատմամբ իսկական կուսակցական վերաբերմունք պետք է լինի։

Ընկերնե՛ր։ Այսօր մեր աշխատանքի առանցքը պետք է լինեն արմատական տնտեսական ռեֆորմի իրականացումը, ժողովրդական տնտեսության հե-

տնօրական փոխադրումը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման, տնտեսական, կազմակերպական, կուսակցական-քաղաքական անհրաժեշտ նախադրյալների ստեղծումը, որպեսզի եկող տարվա հունվարի 1-ից կիրարկվող պետական ձեռնարկության (միավորման) մասին ՍՍՀՄ օրենքը գործի լրիվ ուժով։

1988 թվականի հունվարի 1-ին լրի՛վ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատելու կփոխադրվեն միութենական և միութենական-հանրապետական ենթակայության 101 ձեռնարկություն, ինչպես նաև հանրապետության տեղարդմինի, կենցաղմինի, ավտոտրանսմինի և կապի մինիստրության բոլոր ձեռնարկությունները։

Շատ ձեռնարկություններ և կազմակերպություններ, մինիստրություններ և գերատեսչություններ ժամանակին նախապատրաստական աշխատանք են տարել տնտեսավարման նոր մեթոդների անցնելու համար։ Մշակվել և իրականացվում են կադրերի ուսուցման, արտադրության տեխնիկական մակարդակի և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, պայմանագրային կարգապահության ամրապնդման, ֆինանսական վիճակի բարելավման միջոցառումներ։ Կենտկոմի բյուրոն այս հարցերը պահում է իր ուշադրության կենտրոնում։

Բայց շատ ձեռնարկություններ դեռ պատրաստ չեն նոր պայմաններում աշխատելու։ Այսպես, Երևանում նոր պայմանների փոխադրվող 44 ձեռնարկություններից 4-ը չունեն հաստատված նորմատիվներ, իսկ 10-ը գտնվում են ֆինանսական բարդ վիճակում։ Դժվարին կացության մեջ են նաև Կիրովականի ճշգրիտ հաստոցների և քիմիական մանրաթելի գործարանները։ Մինիստրությունները, հիմնականում միութենական, կամայական կերպով 1988 թվականի համար մի քանի ձեռնարկությունների իջեցրել են այնպիսի պլանային առաջադրանքներ, որոնք գերազանցում են կարողությունների նրանց հնարավորությունները (ՍՍՀՄ հաստոցարդմինի կողմից՝ Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանին, գունարդմինի կողմից՝ Կանազին, էլեկտրատեխարդմինի կողմից՝ «Լույս» արտադրական միավորմանը)։ Իմաստավորում է պահանջում պետական պատվերի ձևավորման պրակտիկան։ Շատ ձեռնարկությունների գծով այն ընդգրկում է ամբողջ արտադրական ծրագիրը։ Այդպիսի վիճակ է ստեղծվել Քանաքեռի ալյումինի գործարանում, Կիրովականի ճշգրիտ հաստոցների, «Ավտոգենմաշ» գործարաններում, Ալ. Մյասնիկյանի անվան կա՛հույքի միավորումում և այլուր։ Կենտկոմը և հանրապետության մինիստրների խորհուրդը պետք է լրջորեն զբաղվեն այդ հարցերով։

Լուրջ մտահոգություն են հարուցում շատ ձեռնարկություններում ու կազմակերպություններում տնտեսագիտական աշխատանքի թույլ դրվածքը, ներարտադրական տնտհաշվարկի, աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևերի և աշխատանքի վարձատրության կոլեկտիվ ձևերի դանդաղ ներդրումը։ Արդեն այսօր տնտհաշվարկային բրիգադների աշխատանքի արտադրողականությունը 3—4 անգամ, նյութական, վառելիքաէներգետիկ ռեսուրսների տնտեսումը 2,5 անգամ ավելի բարձր են, քան մյուս կոլեկտիվներում։ Կենտկոմի բյուրոն գտնում է, որ կոլեկտիվ կապալի սկզբունքներով աշխատանքի կազմակերպման գործը պետք է տարվի ավելի հետևողականորեն և ընդգրկի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։ Այդ գործում ձևականությունը և կիսատպռատությունը կարող են բացասական լուրջ հետևանքներ ունենալ։ Վերակառուցումը իրողություն կդառնա, երբ արտադրության հենց սկզբնական օղակներում մարդիկ դրվեն նոր տնտեսական պայմանների մեջ և նախապատրաստվեն նոր ձևով աշխատելու։

Այս առումով ուսանելի շատ բան է տալիս լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում ձեռնարկությունների աշխատանքի փորձը։ Հանրապետությունում 1987 թվականի հունվարի 1-ից լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում են աշխատում 61 արդյունաբերական միավորում և ձեռնարկություն։ Լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատելով, հաջողության են հասել այն կոլեկտիվները, որոնք այդ պայմաններին անցնելու նախապատրաստությունը սկսել էին մինիստրություններից մեթոդական փաստաթղթեր ստանալուց դեռ շատ առաջ։ Այսպես, Երևանի Ալ. Մյասնիկյանի անվան տրիկոտաժի № 1



միավորումում, Կիրովականի Ստ. Շահումյանի անվան կարի միավորումում, «Լյուքս» կոշիկի փորձնափորձարարական ֆաբրիկայում և թեթև արդյունաբերության մի շարք ուրիշ ձեռնարկություններում տնտեսավարման նոր մեթոդների անցնելու նախապատրաստության ընթացքում մանրամասնորեն վերլուծել էին տնտեսական գործունեության արդյունքները, արտադրությունից հանել վնասաբեր և սակավ շահութաբեր արտադրատեսակները, լրիվ տնտհաշվարկի փոխադրել արտադրական ստորաբաժանումները, միջոցառումներ իրականացրել աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի որակը բարելավելու, առկա արտադրական պոտենցիալը ավելի լրիվ օգտագործելու համար։ Դրա շնորհիվ 1987 թվականի 11 ամսվա արդյունքների հիման վրա այդ ձեռնարկությունների խթանման ֆոնդերին հաշվեգրվել են 1,5—2,6 անգամ ավելի միջոցներ, քան նախատեսված է պլանով, և մեկ աշխատողի հաշվով դրանք կազմում են 450-ից մինչև 900 ռուբլի։

Իսկ այն ձեռնարկությունները, որոնք վատ էին նախապատրաստվել, այդպիսի միջոցներ շատ քիչ ունեն (Լենտեքստիլկոմբինատում մեկ աշխատողի հաշվեգրված է 21 ռուբլի) կամ էլ աշխատում են վնասով (Լենինականի ու Ալավերդու կարի միավորումները, Երևանի մետաքսի կոմբինատը)։

Տնտեսական մեխանիզմի արմատական վերակառուցման կենսական հարցերի հաջող լուծման համար առանձնակի կարևորություն ունեցող պրոբլեմ է հանրապետության կառավարման կազմակերպական կառուցվածքների կատարելագործումը, կառավարման գլխավոր սխեմայի մշակումը։ Մեզանում ստեղծված է և արդեն մի քանի ամիս գործում է կենտրոնական կոմիտեի և Մինիստրների խորհրդի հատուկ հանձնաժողովը, որը քննության է առնում կազմակերպական կառուցվածքների վերանայման և կառավարչական ապարատի թվակազմի կրճատման վերաբերյալ մինիստրությունների ու գերատեսչությունների առաջարկությունները։ Նախագծի մշակման աշխատանքն արդեն ավարտված է։ Նախատեսված է միավորել առանձին մինիստրություններ ու գերատեսչություններ, դրանց թվի, հաստիքների կրճատում, կառավարման վերին օղակների գործունեության կենտրոնացում տնտեսական ու սոցիալական զարգացման գլխավոր խնդիրների լուծման վրա, միաժամանակ ընթացիկ աշխատանքի ծանրության կենտրոնը տեղափոխելով աշխատավորական կոլեկտիվների և ժողովրդական դեպուտատների տեղական սովետների մակարդակ։ Առաջին քայլերն են արված տնտեսական կառավարման նոր ձևերի կազմավորման՝ պետական արտադրական միավորումների ստեղծման ուղղությամբ։ Մենք պետք է ուժեղացնենք կառավարման ամբողջ համակարգի վերակառուցման կուսակցական-քաղաքական աշխատանքը, հատուկ միջոցառումներ իրականացնենք կառավարման ապարատը կրճատելիս ազատվող աշխատողներին աշխատանքի տեղավորելու, այլ մասնագիտությունների ժամանակին յուրացման գործում նրանց օգնելու համար։

Մենք պետք է ամրապնդենք մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների տնտեսագիտական ծառայությունները։ Անցյալում այդ հարցի նկատմամբ ցուցաբերված անբավարար ուշադրությունը հասցրել է այնտեղ, որ ներկայումս ոչ միայն ժողովրդական տնտեսության ճյուղերում, այլև տնտեսագիտական գերատեսչություններում որոշակի թվով աշխատողներ համապատասխան մասնագիտական կրթություն չունեն, ցածր է տնտեսագիտական մտածողության մակարդակը, պրոֆեսիոնալ պատրաստության աստիճանը։ Դեռևս ցածր է տնտեսագիտական անգրագիտության վերացման ուղղությամբ տարվող աշխատանքի արդյունավետությունը։ Անհրաժեշտ է էապես բարելավել կադրերի տնտեսագիտական ուսուցման կուսակցական ղեկավարումը, այն մոտեցնել տնտեսական մեխանիզմի կատարելագործման պրակտիկային, բոլոր մակարդակներում ապահովել տնտհաշվարկի սկզբունքների, սոցիալիստական ինքնակառավարման ձևերի ու մեթոդների խոր ուսումնասիրություն։ Կենտկոմի բաժինները, կուսակցական կոմիտեները պետք է գլխավորեն այդ աշխատանքը և անդուլ ուշադրություն նվիրեն դրան։ Անհրաժեշտ է բարձրացնել կուսակցական կազմակերպությունների, տնտեսագիտական գերատեսչությունների բոլոր կադրերի պատասխանատվությունը հանրապետության էկոնոմիկան աշխատանքի նոր մեթոդների փոխադրելու անհետաձգելի խնդիրների լուծման համար։

Կենտկոմի բյուրոն, քարտուղարությունը քիչ են քննարկել ռեֆորմի իրականացման ուղղությամբ ընդունված որոշումների կատարման ընթացքին վերաբերող հարցեր։

Արմատական տնտեսական ռեֆորմը պահանջում է կտրականապես փոխել մեր բոլոր տնտեսական մարմինների, դրանց ղեկավարների աշխատանքի ոճն ու մեթոդները։ Հանրապետության կառավարությունը պետք է նրանց օգնի ճիշտ կողմնորոշվելու նոր տնտեսական իրավիճակում, պետական ձեռնարկության մասին օրենքի գործողության պայմաններում, որոշելու իրենց անելիքները, որ թույլ չտրվի ձեռնարկությունների իրավունքների ոտնահարում, նոր ձևով կառուցվեն հարաբերությունները աշխատավորական կոլեկտիվների հետ։ Կենտկոմի բյուրոյի անդամ, հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Սարգսյանը պետք է բարձրացնի մինիստրների, գերատեսչությունների ղեկավարների պատասխանատվությունը ռեֆորմի իրականացման համար, իր տեղակալների հետ համատեղ ներգործուն միջոցներ ձեռնարկի հանրապետության էկոնոմիկայի ֆինանսական առողջացման, ժողովրդատնտեսական համալիրի կառավարումը կատարելագործելու նպատակով։ Նա պետք է իր վրա վերցնի տնտեսական, սցիալական և հոգևոր զարգացման գլխավոր, ստրատեգիական խնդիրների լուծումը, ազատվի ընթացիկ շատ հարցերի լուծումից։ Հարկավոր է, որ նա խստապահանջ լինի իր տեղակալների նկատմամբ, բարձրացնի նրանց պատասխանատվությունն իրենց իրավասության տակ գտնվող աշխատանքի բնագավառներում տիրող վիճակի, կառավարության որոշումների և կարգադրությունների լրիվ ու ժամանակին կատարման համար։ Մյուս կողմից անհրաժեշտ է բարձրացնել ընդունվող որոշումների որակն ու հիմնավորվածությունը, դրանց կոմպլեքսային բնույթը։

Պետք է ընդգծել Կենտկոմի, կուսակցության քաղկոմների և շրջկոմների, ամեն սկզբնական կազմակերպության առանձնակի պատասխանատվությունը նոր տնտեսական մեխանիզմի, լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման ներդրման համար։ Անհրաժեշտ է ապահովել ձեռնարկությունների բազմակողմ նախապատրաստությունն ու կազմակերպված փոխադրումը նոր աշխատապայմանների։

Հարկավոր է գործն այնպես տանել, սոցիալիստական մրցությունը այնպես կազմակերպել, որ յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ ապահովի արտադրանքի իրացման պլանների համաչափ կատարումը՝ հաշվի առնելով պայմանագրերի և պատվերների գծով պարտավորությունները, ֆոնդերի արդյունավետ օգտագործումը, նորագույն տեխնիկայի ստեղծումը, արտադրանքի որակի արմատական բարելավումը։ Անհրաժեշտ է ուժեղացնել վերահսկողությունը ռեսուրսախնայիչ տեխնոլոգիաների յուրացման, արտադրության վերակառուցման և արդիականացման ընթացքի, պետընդունման ներդրման նկատմամբ։

Կենտկոմի բյուրոյի յուրաքանչյուր անդամ և անդամության թեկնածու այդ խնդիրների իրականացումը պետք է համարի իր առաջնային գործը և լիակատար պատասխանատվություն կրի դրա համար։

Այս տեսակետից առանձնակի պատասխանատվություն է ընկնում Կենտկոմի բյուրոյի անդամներ ընկ. ընկ. Լ. Սահակյանի, Դ. Հարությունյանի և բյուրոյի անդամության թեկնածու ընկ. Հ. Օհանյանի վրա, որոնք ներկայացնում են ամենախոշոր կուսակցական կազմակերպությունները։ Նրանք պետք է իրենց աշխատանքը այնպես կառուցեն, որ Կենտկոմի նախատեսած ծրագրերը, նպատակային խնդիրները, որոշումները ժամանակին ու լրիվ ծավալով իրականացվեն, վերակառուցումն առավել ակտիվորեն ընթանա նախ և առաջ Երևանի, Լենինականի և Կիրովականի կուսկազմակերպություններում։ Դա կարևոր է, մանավանդ որ վերոհիշյալ կուսակցական կազմակերպությունների, նրանց ղեկավարների աշխատանքում դեռ կան շատ թերություններ, լուծում պահանջող պրոբլեմներ։

Կենտկոմի բյուրոյի անդամ ընկ. Ս. Պետրոսյանը արժանի կերպով է ներկայացնում հանրապետության բանվոր դասակարգին, ակտիվորեն մասնակցում բյուրոյի աշխատանքին, բյուրո ներբերում աշխատավորական կոլեկտիվների, մեր աշխատավորների տրամադրությունը։



Ընկերնե՛ր։ Կենտկոմի բյուրոն հետևողականորեն զբաղվել է ժողովրդագրական պրոբլեմներով, աշխատունակ բնակչության զբաղվածության ապահովման, միգրացիոն պրոցեսների նպատակամետ կառավարման, գյուղական բնակչության արտահոսքի կրճատման հարցերի լուծմամբ։

Հանրապետության արդյունաբերության մեջ և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակների տարիներին ստեղծվել են 324 հազար նոր աշխատատեղեր։ Դա հնարավորություն է տվել կրճատել հանրային արտադրության մեջ չզբաղված աշխատունակ բնակչության բաժինը։ Փոքր արդյունաբերական ձևերի ստեղծումը թույլ է տվել հանրապետության արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի մեջ մեծացնել միջին, փոքր քաղաքներում ու գյուղերում արտադրվող արտադրանքի տեսակարար կշիռը, որն այսօր հասել է ավելի քան 40 տոկոսի։ Անցումը տնտեսավարման նոր պայմանների պահանջում է ազատ աշխատանքային ռեսուրսների օգտագործման ուղղությամբ մեր կողմից տարվող աշխատանքի նոր իմաստավորում, այդ հարցի լուծման համար մշակված ծրագրի համապատասխան ճշտումներ։

Որոշակի արդյունքներ են տվել Երևանի բնակչության մեխանիկական հավելաճը սահմանափակելու միջոցառումները։ 1981—1986 թվականներին այն կրճատվել է՝ հասնելով տարեկան միջին հաշվով 3 հազար մարդու՝ 1959—1979 թվականների 14 հազարի դիմաց։

Զգալիորեն պակասել է բնակչության ներհանրապետական միգրացիան։ Մի շարք շրջաններում նկատվում է որակապես նոր երևույթ, երբ գյուղական շրջաններ մշտական բնակության են վերադառնում նախկինում այնտեղից մեկնած քաղաքացիներ։ Հանրապետությունում հիմնականում հաջողվել է կասեցնել փոքր բնակավայրերը և տնտեսությունները լուծարքի ենթարկելու պրոցեսը։ Ներկայումս կոնկրետ խնդիր է դրված՝ այսուհետև էլ ամրապնդել գյուղերը և աստիճանաբար ավելացնել դրանց բնակչությունը։ Անցկացվում է նախկինում լուծարքի ենթարկված 140 գյուղերի կոմպլեքսային հետազոտություն՝ նպատակ ունենալով որոշել դրանց վերականգնման տնտեսական ու սոցիալական նպատակահարմարությունը, դրանց տարածքներն օգտագործել, մասնավորապես, կոլեկտիվ այգեգործության և օժանդակ տնտեսության վարման համար։

Մենք հատուկ կարևորության պրոբլեմ ենք համարում լեռնային և նախալեռնային շրջանների գերադաս զարգացումը, բնակավայրերի ամրապնդումը, դրանց ժողովրդագրական աճի ապահովումը։ Այդ պրոբլեմի առնչությամբ մշակված ծրագրի իրագործումն արդեն դրական արդյունքներ է տալիս։

Հանրապետության շրջանների գերակշիռ մեծամասնությունում (բացի չորսից) ապահովված է բնակչության բացարձակ աճ։ Սակայն դա մեզ չի կարող հանգստացնել, քանի որ հանրապետության մի շարք շրջաններում բնակչության ընդհանուր թվի աճի պարագայում տեղի է ունենում շատ բնակավայրերի բնակիչների թվի կրճատում։

Լեռնային և նախալեռնային շրջաններում կան 40-ից ավելի փոքր գյուղեր, որոնք լուծարքի ենթարկվելու սպառնալիքի տակ են։ Պատճառները հիմնականում հանգում են շրջկենտրոնների և մյուս բնակավայրերի համեմատությամբ դրանց սոցիալական ենթակառուցվածքի թույլ զարգացմանը։ Առանձնապես չի գոհացնում ճանապարհների և մյուս կոմունիկացիաների վիճակը։ Անչափ ցածր է կուլտուր-կենցաղային սպասարկման մակարդակը, չկան անհրաժեշտ քանակությամբ աշխատատեղեր։

Առանձին շրջկենտրոնների և քաղաքների չարդարացված ընդարձակման, այնտեղ արտադրողական ուժերի չհիմնավորված տեղաբաշխման պատճառով շրջանների ներսում տեղի է ունենում բնակչության անցանկալի համակենտրոնացում՝ գյուղական բնակիչների թվի կրճատման հաշվին։

Այս ամենը պահանջում է աշխատանքի շեշտը տեղափոխել գյուղ։ Կոնկրետ կերպով զբաղվել հանրապետության յուրաքանչյուր գյուղի, բնակավայրի տնտեսական, սոցիալական և ժողովրդագրական զարգացման հարցերով։

Յուրաքանչյուր կուսշրջկոմ և ժողովրդական դեպուտատների սովետի գործկոմ պետպլանի ակտիվ օգնությամբ պետք է մշակի և իրականացնի

շրջանի յուրաքանչյուր բնակավայրի բնակչության թվի ավելացման, բնակավայրերի հաշվին շրջկենտրոնների մեխանիկական աճի կանխման միջոցառումներ։

Կենտկոմը և հանրապետության մինիստրների խորհուրդը պետք է այս գործը հատուկ վերահսկողության տակ առնեն։

Կենտկոմի բյուրոն հետևողականորեն զբաղվում է էկոլոգիայի պրոբլեմներով։ Մշակվել և իրականացվում է հանրապետությունում էկոլոգիական իրադրությունը բարելավելու կոմպլեքսային երկարաժամկետ ծրագիր։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի օգնությամբ մի շարք խոշոր միջոցառումներ են իրականացվել գործող ձեռնարկությունները վերապրոֆիլավորելու, վերակառուցելու և տեխնիկապես վերազինելու նպատակով՝ հատկապես քիմիական արդյունաբերության մեջ, բնօգտագործումը ռացիոնալացնելու և անթափոն ու սակավաթափոն արտադրական շրջափուլեր ստեղծելու, առանձին արտադրություններ վերապրոֆիլավորելու և այլ նպատակով։

Հանրապետության էկոլոգիական առանձնահատկությունները հաշվի առնվեցին նախ և առաջ արդյունաբերության ճյուղային կառուցվածքը կատարելագործելիս։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ արդյունաբերական արտադրության կառուցվածքում նվազեց քիմիական ու նավթաքիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի տեսակարար կշիռը։ Վերջին 10 տարում արդյունաբերական արտադրության ծավալների մոտավորապես կրկնակի ընդլայնման պայմաններում մի շարք ճյուղերում կրճատվել են աղտոտող նյութերի արտանետումները։

1979—1986 թվականներն ընդգրկող ժամանակամիջոցում կառուցվել և շահագործման են հանձնվել կենսաբանական մաքրման կառուցվածքներ, ինչը հնարավորություն տվեց 1986 թվականին կենսաբանական մաքրման ենթարկել 310 միլիոն խորանարդ մետր հոսող կեղտաջրեր՝ 1975 թվականի 31 միլիոն խորանարդ մետրի դիմաց։ Արտադրական կարիքների համար ջրօգտագործման ընդհանուր ծավալում ավելացել է շրջանառու և հաջորդաբար օգտագործվող ջրի քանակությունը։ Այդ աշխատանքները շարունակվում են։

Փակվել են «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման կալցիումի կարբիդի, քլորբենզոլի, քլորաջրածնի, մինովինիլացետատի և դրանից պատրաստվող քլորոպրենի արտադրությունները։ Եթե 1980 թվականին քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների թունավոր նյութերի արտանետումները Երևան քաղաքի մթնոլորտ կազմել էին 37,7 հազար տոննա, ապա 1986 թվականին՝ 18,86 հազար տոննա։ Այդ նույն ժամանակամիջոցում «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ընդհանուր արտանետումները կրճատվել էին ավելի քան կրկնակի։

1984 թվականին Քանաքեռի ալյումինի գործարանում նախնական ալյումինի արտադրությունը (էլեկտրոլիզի արտադրամասը) փակելու շնորհիվ լրիվին դադարեցվել են փոշու, ինչպես նաև ֆտոր պարունակող գերթունավոր միացությունների արտանետումները մթնոլորտ։

Երևանում կենտրոնացված կաթսայատների կառուցման հաշվին 1987 թվականի հոկտեմբերի դրությամբ վերացվել են 325 փոքր կաթսայատներ, որոնք էապես աղտոտում էին մթնոլորտը։ 1986 թվականի հունվարից Երևանն ապահովվում է տետրաէթիլակապար չպարունակող բենզինով։ Որոշակի բնապահպան նշանակություն ունի Երևան քաղաքը շրջանցող ավտոմոբիլային ճանապարհի շահագործման հանձնումը 1986 թվականին։

Մեծ աշխատանք է կատարվել և կատարվում Կիրովականի (որտեղ օրերս դադարեցվեցին ազոտի օքսիդների արտանետումները՝ «աղվեսի պոչը»), Ալավերդու և այլ քաղաքների օդային ավազանն առողջացնելու նպատակով։

Ինչպես տեսնում եք, էկոլոգիական վիճակը բարելավելու նպատակով քիչ գործ չի արված։ Բայց մենք դեռ շատ անելիքներ ունենք այդ ուղղությամբ։



Վերջին տարիներս Երևանում կտրուկ ավելացել են թունավոր նյութերի արտազատումները ավտոտրանսպորտից (տարեկան ավելի քան 200 հազար տոննա), որոնք արդեն այսօր կազմում են բոլոր արտանետումների մոտ 70 տոկոսը։ Հիմնականում դրա հաշվին է վատանում քաղաքի մթնոլորտային օդի ընդհանուր էկոլոգիական ֆոնը։ Եթե 1975 թվականին Երևանում կար 50,5 հազար ավտոմեքենա, որից 31,7 հազարը՝ մարդատար, ապա 1986 թվականին՝ համապատասխանաբար 116,6 և 87,6 հազար։ Այդ պրոբլեմը լուծելու համար մեզ անհրաժեշտ է մշակել և իրականացնել միջոցառումների հատուկ կոմպլեքս։

Մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ անկարգապահություն են դրսևորում, գործուն միջոցներ չեն ձեռնարկում բնապահպան միջոցառումներ իրականացնելու, տեխնոլոգիական և արտադրական կարգապահությունն ամրապնդելու, փոշեգազորսիչ սարքավորումները ժամանակին և որակով նորոգելու ու փոխարինելու համար։ Բնապահպան օբյեկտների կառուցման պլանները չեն կատարվում. դրանք կառուցվում են խիստ դանդաղ տեմպերով։ Միայն տասնմեկերորդ հնգամյակի տարիներին այդ օբյեկտների շինարարությունում պակաս է իրացվել 12,2 միլիոն ռուբլի։ 1986 թվականին կապիտալ ներդրումների և շինմոնտաժային աշխատանքների պլանի կատարումը կազմել էր համապատասխանաբար 87,9 և 91,9 տոկոս։ Գործերի վիճակը բարվոք չէ նաև այս տարի։

Ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետները անբավարար են օգտագործում իրենց տրված իրավունքները՝ վերահսկելու և կոորդինացնելու ձեռնարկությունների և կազմակերպությունների գործունեությունը բնապահպան օբյեկտների ժամանակին կառուցման, արտադրությունում տեխնոլոգիական կարգապահության պահպանման, արդյունաբերական ձեռնարկությունների սանիտարապաշտպանական գոտիների ստեղծման ուղղությամբ։ Քաղաքներում, մասնավորապես Երևանում նրանք չեն կազմակերպում նաև զանգվածային ծառատունկ փողոցներում, գործարանների տարածքներում։ Այդ մասին մեկ անգամ չէ, որ ասվել է, բայց առայժմ քիչ բան է արվում։ Իսկ չէ որ տնկված մեկ ծառից ավելի շատ օգուտ կա, քան էկոլոգիայի պահպանության մասին անվերջ մտահոգ խոսակցություններից։ Պետք է ենթադրել, որ սովետները այս գործը վերջապես կվերցնեն իրենց ձեռքը և կկազմակերպեն քաղաքները կանաչապատելու իսկական շարժում։

ՍՄԿԿ Կենտկոմը և միութենական կառավարությունը նոր մեծ օգնություն են ցույց տվել մեզ։

Երևան քաղաքի շրջակա միջավայրի վիճակը արմատապես բարելավելու նպատակով ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում է ընդունել, որի համաձայն «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում ներմուծված կոմպլեքսային սարքավորումների հիմքի վրա ստեղծված քլորոպրենային կաուչուկների («Կաուչուկ—2») արտադրության օբյեկտներում նորոգման-վերականգնման աշխատանքները 1988 թ. հունվարի 1-ին ավարտելուց և այդ արտադրության նախագծային կարողության յուրացումն ապահովելուց հետո կփակվի քլորոպրենային կաուչուկների հնացած արտադրությունը («Կաուչուկ—1»-ի) արտադրության կազմում։ Կարագացվեն հանրապետության տարածքից դուրս այդ արտադրանքի թողարկման նոր կարողություններ ստեղծելու աշխատանքները։

«Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում մշակվել է նշված միջոցառումների իրականացման պլան-գրաֆիկ, եռանդուն աշխատանք է տարվում կարողությունների յուրացման համար, սկսվել են կաուչուկների հին արտադրությունը փակելու նախապատրաստական աշխատանքները, որ իրականացվելու է 1988 թվականի փետրվարին։

1988 թվականից սկսած պետք է ապահովվի քլորոպրենի առավել թույլատրելի խտությունների («Կաուչուկ—2»-ի արտադրության արտանետումներ) նորմաների խստիվ պահպանումը սահմանված սանիտարապաշտպանական գոտու սահմանագծում։ Որոշմամբ ՍՍՀՄ քիմարդմինին և Հայկական

ՍՍՀ Մինիստրների խորհրդին հանձնարարված է մշակել քաղաքի քիմիական ձեռնարկությունների սանիտարապաշտպանական գոտիների նախագծեր և ապահովել դրանց կազմակերպումը։ Գործուն միջոցառումներ կիրականացվեն Երևանի քաղաքի քիմիական խմբի ձեռնարկությունների արտադրությունների էկոլոգիական անվտանգությունը բարձրացնելու նպատակով։ Առանձնակի ուշադրություն է դարձված հոսող կեղտաջրերի մաքրման ապահովմանը։ Նախատեսված է Երևանի ջերմաէլեկտրակենտրոնը փոխադրել գազի, կոնկրետ միջոցառումներ իրականացնել նրա արտանետումները կրճատելու համար։

Կիրականացվեն վերահսկողության անհրաժեշտ սարքերով ավտոմեքենաների շարժիչների բանեցրած գազերի թունավորության աստիճանը ստուգող հսկիչ-կարգավորիչ կետերի հանդերձավորման կոմպլեքսային միջոցառումներ։ Կվերանայվի Երևանի գլխավոր տրանսպորտային սխեման, նկատի ունենալով էլեկտրատրանսպորտի տեսակարար կշռի ավելացումը։ Հնարավորություններ են ստեղծվում Երևանի աերացիայի կայանը օրական 375 հազար խորանարդ մետր կեղտաջրեր մաքրելու չափով ընդլայնելու համար։ Միջոցառումներ են նախատեսված Երևանի բնության պահպանության տարածքային կոմպլեքսային սխեմա մշակելու համար։ Առանձնակի ուշադրություն է նվիրվում ավտոտրանսպորտի թունավոր արտանետումները կրճատելու, մի շարք ձեռնարկություններ վերակառուցելու և քաղաքի սահմաններից դուրս հանելու, ձեռնարկությունների տեխնիկական ջրամատակարարման պրոբլեմը լուծելու և այլ միջոցառումներին։

Էկոլոգիական պրոբլեմների լրիվ լուծման համար Կենտկոմի բյուրոյի հանձնարարությամբ ներկայումս համապատասխան հանրապետական մարմիններ, ներգրավելով գիտնականների ու մասնագետների, մշակում են «Էկոլոգիա» կոմպլեքսային ծրագիրը։

Կուսակցության քաղկոմը, շրջկոմները, շրջանային սովետները, մամուլն ու հեռուստատեսությունը պետք է բնակչության շրջանում բացատրական լայն աշխատանք կազմակերպեն այն միջոցառումների շուրջ, որ ձեռնարկվում են Երևան քաղաքի, հանրապետության էկոլոգիական իրադրությունը առողջացնելու համար։

Մի քանի խոսք Սևանա լճի մակարդակը բարձրացնելու նպատակով վերջին տարիներս ձեռնարկվող միջոցների մասին։ Ինչպես հայտնի է, 1979 թվականից դադարեցվել են էներգետիկ բացթողումները լճից։ 1981 թվականից մինչև 1986 թվականը Արփա—Սևան թունելով լիճ է ուղղվել մոտ մեկ միլիարդ խորանարդ մետր ջուր, որով կանխվել է մակարդակի նվազումը 70 սանտիմետրով։ Հանրապետությունում նպատակամղված մեծ ծրագիր է իրականացվում ջրամբարների և ոռոգման համակարգերի կառուցման նպատակով, որոնք թույլ են տալիս ընդլայնել ոռոգովի հողագործությունը, ընդ որում, ոչ միայն չավելացնելով լճից ջրի բացթողումը, այլ նաև կրճատելով այն։

Ավարտված են Արփա—Սևան թունելի վերականգնման աշխատանքները։ Կառուցվում է Որոտան—Արփա թունելը։

Սևանա լճի ավազանի բնական ռեսուրսների պահպանության և ռացիոնալ օգտագործման մշակված կոմպլեքսային սխեմայով նախատեսվում է լճի ջրի մակարդակի 5—6 մետր բարձրացում, ինչպես նաև այլ միջոցառումներ, որոնց իրականացումը զգալիորեն կբարելավի լճի ջրի որակը, կվերականգնի արժեքավոր ձկնատեսակների հարցում նրա արդյունագործական նշանակությունը։

Բացառիկ կարևորություն ունի արդյունաբերական, կոմունալ և գյուղատնտեսական կեղտաջրերով լճի ջրի հետագա աղտոտումը կանխելու պրոբլեմը։

Տարիներ շարունակ «Կոմունալ տնտեսություն» ճյուղում հանրապետության հատկացվող միջոցների անբավարարության, ինչպես նաև կատարողների անպատասխանատվության հետևանքով խիստ դանդաղ տեմպերով է իրականացվում Սևանա լճի ափի օղակաձև կոյուղու կոլեկտորի շինարարու-



թյունը։ Մինչև օրս այն գործարկվել է միայն Սևան—Ծովագյուղ—Արևիկ հատվածում։ Առավել կարևոր Սևան—Կամո—Մարտունի—Վարդենիս տեղամասի կառուցմանը դեռ ձեռնամուխ չեն եղել։

Կենտկոմի բյուրոյի հանձնարարությամբ ընթացիկ տարվա հոկտեմբերին Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը որոշում ընդունեց Քաղսի գյուղում գործող մաքրման կառույցների ընդլայնումով կոլեկտորի շինարարությունն արագացնելու մասին։ Համապատասխան միութենական մինիստրությունների հետ համաձայնեցված է այդ աշխատանքի մեջ Հայգլխջրշինի, Հայգազշինի և Անդրկովկասխողովակաշինի ներգրավումը։

Ընկերնե՛ր։ Մեր գաղափարադաստիարակչական աշխատանքի բովանդակությունը սահմանում են ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության համագումարի, Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումներով, ինչպես նաև մեր հաշվետվության առթիվ և «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում գաղափարախոսական աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները։

Մշակվել և ձեռնարկվել են գաղափարախոսական աշխատանքի բարելավման, կուլտուր-լուսավորական հիմնարկների նյութատեխնիկական բազայի ամրապնդման միջոցներ։ Փոքր-ինչ ակտիվացել է բնակչության աթեիստական դաստիարակության նպատակամղված գործունեությունը։ Մամուլում, հեռուստատեսությամբ և ռադիոյով ավելացել են այն հրապարակումներն ու հաղորդումները, որոնք լուսաբանում են վերակառուցման, հասարակական կյանքի բոլոր կողմերի դեմոկրատացման արմատական հարցերը։ Սկսել են ավելի հաճախ հրապարակվել ընթերցողների նամակներ, որոնք արծարծում են տնտեսական և մշակութային զարգացման, իրավակարգի ամրապնդման ցավոտ հարցեր։

Ավելի շատ ուշադրություն է նվիրվում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին։ Ընդհանուր առմամբ հաջողությամբ է իրագործվում 1986—1990 թվականներին Անդրկովկասի երեք եղբայրական հանրապետությունների կոմկուսների Կենտկոմների միջոցառումների համատեղ կոմպլեքսային պլանը՝ ուղղված ինտերնացիոնալ կապերի հետագա զարգացման նպատակին։

Ուժեղացվել է ուշադրությունը գիտության, կրթության և առողջապահության հարցերի նկատմամբ։ Կենտկոմի բյուրոյի և քարտուղարության որոշումներին համապատասխան այժմեականացման առումով վերանայվել է գիտական հետազոտությունների թեմատիկան, աշխատանք է կատարվում բարձրագույն կրթության, գիտության և արտադրության ինտեգրացման, մասնագետների պատրաստության որակի բարձրացման նպատակով։ Մշտական ուշադրություն է դարձվում մայրենի և ռուսաց լեզուների դասավանդման բարելավմանը։ Փոքր-ինչ նվազել է ընդհանուր և մանկական մահացությունը։

Իրենց աշխատանքն են ակտիվացրել գեղարվեստական մշակույթի գործիչները։ Նրանք սկսել են առավել ակտիվորեն մասնակցել հանրապետության հասարակական-քաղաքական կյանքին։

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները որոնում են նոր պայմաններում գաղափարաքաղաքական աշխատանքի ուղիներ, ձևեր ու մեթոդներ։ Կատարվում է գաղափարաբարոյական մթնոլորտի առողջացման, իրավակարգի ամրապնդման աշխատանք, որոնվում են կաշառակերության, սպեկուլյացիայի, անաշխատ եկամուտների, մյուս բացասական երևույթների դեմ մղվող պայքարի արդյունավետության բարձրացման ուղիներ։

Բազմակողմանի գաղափարախոսական աշխատանքի արդյունքն է այն, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ամբողջովին հավանություն են տալիս վերակառուցման, մեր հասարակության կյանքի բոլոր կողմերի հեղափոխական նորացման կուսակցության գծին։

Սակայն գաղափարախոսական աշխատանքի վերակառուցումը դեռևս հարկ եղած տեմպեր չի ստացել։

Կենտկոմի քարտուղար ընկ. Ռ. Արզումանյանը, Կենտկոմի գաղափարախոսական բաժինները չեն հասել վերակառուցման գաղափարախոսական ապահովման աշխատանքի պատշաճ ակտիվացման, այն բանին, որ գաղափարադաստիարակչական աշխատանքի բոլոր ուժերն ու միջոցները լրիվ չափով նպատակամղված լինեն և գործի դրվեն հօգուտ վերակառուցման, հօգուտ արմատական տնտեսական ռեֆորմի, մարդկային գործոնի ակտիվացման։ Գաղափարախոսական աշխատանքում ինչպես հարկն է չեն օգտագործվում մեր հասարակագետների ուժերը։

Պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի թույլ վերահսկողության, ցածր պահանջկոտության, անբավարար օգնության պատճառով (ընկ. Գ. Ասատրյան) մի շարք տեղերում ցածր է կուսակցական կազմակերպությունների գաղափարադաստիարակչական աշխատանքի մակարդակը աշխատավորական կոլեկտիվներում։ Հին ձևով, ցածր արդյունավետությամբ է անցկացվում աշխատավորների քաղաքական և տնտեսագիտական ուսուցումը։ Այն նպատակամղված չէ արմատական տնտեսական ռեֆորմին։ Աշխատավորական կոլեկտիվներում, տնտեսավարման նոր պայմաններում աշխատել սկսած կամ դրան պատրաստվող ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատավորները հստակորեն չեն պատկերացնում ո՛չ տնտհաշվարկի, ո՛չ ինքնաֆինանսավորման, ո՛չ էլ ինքնակառավարման օգուտները։ Թույլ են յուրացվում նոր մոտեցումները գաղափարադաստիարակչական աշխատանքում, դրան ներկայացվող պահանջները։

Կենտկոմը, քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է բոլոր ջանքերը նպատակամղեն այն բանին, որ վերակառուցման կոնցեպցիաները, գաղափարները համակեն մեր մարդկանց, դառնան շարժիչ ուժ, որոշեն մեր կադրերի, մասնագետների, աշխատավորական կոլեկտիվների բոլոր անդամների կոնկրետ գործողությունները։ Նրանցից յուրաքանչյուրը պետք է դառնա վերակառուցման ակտիվ մասնակից, կազմակերպիչ։ Սա մեր ամենակենսական խնդիրն է։

Կենտկոմի բյուրոյի կարծիքով մեր մարդկանց թե՛ դաստիարակության և թե՛ նրանց ջանքերի մոբիլիզացման տեսանկյունից օգտակար կլիներ, եթե Կենտկոմի բյուրոյի անդամները, քարտուղարները, մյուս ղեկավար աշխատողները հանրապետության տնտեսական, սոցիալական ու հոգևոր զարգացմանը վերաբերող խոշոր որոշումների ընդունումից թե՛ առաջ և թե՛ հետո խորհուրդ անեին աշխատավորների հետ, պարզաբանեին դրանց նշանակությունը, նրանց հետ սահմանեին այդ որոշումների հաջող կատարման ուղիները։

Ընկ. Ռ. Արզումանյանին, Կենտկոմի բաժիններին դեռևս չի հաջողվել կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների գործունեությունը շրջել դեպի մարդկանց հետ տարվող անհատական աշխատանքը, տարբերակված մոտեցումը բնակչության տարբեր կատեգորիաներին։ Գաղափարադաստիարակչական աշխատանքը դեռևս թույլ է նպատակամղված խորթ հայացքների ու տրամադրությունների դեմ, հաճախ տարվում է կոնկրետ իրադրությունից կտրված։ Այս կամ այն հարցում մոլորության մեջ ընկած շատ մարդիկ դրա հետևանքով երկար ժամանակ չեն ազատվում սխալ դատողություններից, ավելին, այս կամ այն «պրոբլեմի» լուծման առանձին ջատագովների ազդեցությամբ թույլ են տալիս այնպիսի գործողություններ, որոնք հասնում են իրավազանցության։

Կուսակցական, սովետական, կոմերիտական և տնտեսական աշխատողները միշտ չէ, որ սուր և սկզբունքային գնահատական են տալիս մեր սովետական իրականությանը խորթ երևույթներին։

Ինչպես հարկն է չի վերակառուցվել մամուլի ու հեռուստատեսության, մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցների աշխատանքը։ Նրանք չեն դարձել տնտեսավարման նոր մեթոդների իսկական պրոպագանդիստներ ու կազմակերպիչներ։ Շատ նյութեր չունեն հարկ եղած բանիմացությունը, խորությունը, վերլուծականությունը։ Ինչպես հարկն է ցույց չեն տրվում աշխա-



տելու կարողությունը և անկարողությունը, վերակառուցվելու ցանկությունը կամ դրա բացակայությունը։ Լավ է, որ մամուլի օրգաններում սկսվել է կոնկրետ հասցեագրված սուր քննադատություն, սակայն առանձին թերթերի էջերում այդ քննադատությունը միջին օղակից վեր չի բարձրանում։ Դեռևս երկչոտ է քննադատությունը կառավարման հանրապետական օղակների հասցեին։

Դրա համար պատասխանատու է Կենտկոմի քարտուղար ընկ. Ռ. Արզումանյանը։ Նա, պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը դեռևս չեն հասել այն բանին, որ բարձրացվի մամուլի ու հեռուստատեսության ղեկավարների պատասխանատվությունը հրապարակվող նյութերի գաղափարաքաղաքական բովանդակության ու որակի, այդ մասին բյուրոյի որոշումը լրիվին կատարելու համար։

Երբեմն թույլ են տրվում բացահայտ վրիպումներ և սխալներ։ Օրինակ, վերցնենք հենց էկոլոգիայի պրոբլեմը։ Այդ մասին հարկավոր է գրել օբյեկտիվորեն, շահագրգիռ, առանց ծայրահեղությունների մեջ ընկնելու, ոչ այնպես, ինչպես դա եղավ «Գրական թերթի» և «Կոմսոմոլեց»-ի էջերում։ Տպագրելով մի խումբ գրողների, ժուռնալիստների և գիտնականների ժողովի հաշվետվությունը, «Գրական թերթը» բերել էր ոչ արժանահավատ, անստույգ թվեր ու փաստեր։ Հաշվետվության մեջ և ոչ մի խոսք չկար շրջակա միջավայրի առողջացման այն մեծ աշխատանքի մասին, որ կատարվել ու կատարվում է մեր հանրապետությունում։ Ի վերջո ընթերցողին ներկայացվել էր խեղաթյուրված պատկեր։

Մեզ չեն կարող բավարարել բարձրագույն կրթության վերակառուցման, դպրոցի ռեֆորմի իրականացման տեմպերն ու խորությունը։ Այստեղ Կենտկոմի բյուրոյին անհրաժեշտ է հավելել աշխատանքում։ Դանդաղ է վերակառուցվում ստեղծագործական միությունների աշխատանքը։ Լուրջ բարելավման կարիք ունի ակադեմիական գիտությունը։ Դեռևս քիչ չեն այնպիսի գիտական ստորաբաժանումներն ու բուհերը, որոնք իրենց գործունեությամբ էական ազդեցություն չեն գործում գիտատեխնիկական առաջադիմության արագացման, սոցիալ-տնտեսական զարգացման վրա։ Առանձին բժշկական հիմնարկներում ցածր է ախտորոշման և բուժման աշխատանքի որակը, արմատախիլ չեն արված դրամաշորթումը, այլ բացասական երևույթներ։

Ընկերնե՛ր։ Չնայած որոշ ակտիվացմանը, արմատական բեկում չի կատարվել նաև զանազան բացասական, հակահասարակական երևույթներ արմատախիլ անելու աշխատանքում։ Հանցագործությունների և իրավախախտումների դեմ մղվող պայքարը հարկ եղած լայնությունն ու թափը չունի, միշտ չէ, որ մղվում է նպատակամետ ու հաստատակամ։ Այդ պայքարը դեռևս տառապում է կամպանիականությամբ։ Հենց որ վարչական մարմինները զգում են կուսակցական կոմիտեների բարձր պահանջկոտությունը, անմիջապես ակտիվացնում են աշխատանքը, բայց դրանից հետո ամեն ինչ շարունակվում է հին ձևով։ Այդ մարմիններն իրենց ընձեռված լայն լիազորություններն ու հնարավորությունները դեռևս լրիվ չեն օգտագործում ամեն կարգի խարդախների, գողերի, սպեկուլյանտների, պորտաբույծների, հակահասարակական մյուս տարրերի դեմ ակտիվ և անխնա պայքար մղելու համար։

Կենտկոմը, կուսակցության քաղկոմները, շրջկոմները պետք է վճռական միջոցներ ձեռնարկեն, որպեսզի արմատապես բարելավեն իրավապահ մարմինների կուսակցական ղեկավարումը, բարձրացնեն կոմունիստների պատասխանատվությունն իրենց վրա դրված խնդիրների հստակ կատարման համար։

Վերջին ժամանակներս ավելի խստապահանջորեն են գնահատվում այդ մարմինների աշխատողների բարոյաքաղաքական ու գործարար հատկանիշները, ավելի շատ ուշադրություն է նվիրվում նրանց գաղափարաքաղաքական ու բարոյական դաստիարակությանը, այդ մարմինները պատահական, վարկաբեկված մարդկանցից մաքրելուն։ Սակայն այստեղ անբարեխիղճ, անազնիվ մարդկանցից լրիվին ազատվել դեռևս չի հաջողվել։

Այն բանի համար, որ իրավապահ մարմինները և նրանց կուսակցական կազմակերպությունները դանդաղ են վերակառուցվում, պատասխանատվությունը պետք է իրենց վրա վերցնեն Կենտկոմի քարտուղար ընկ. Յու. Կոչետկովը, վարչական մարմինների բաժնի վարիչ ընկ. Մ. Դավթյանը։ Նրանք սիստեմատիկ վերահսկողություն չեն սահմանել սոցիալիստական օրինականության և իրավակարգի հետագա ամրապնդման, քաղաքացիների իրավունքների և օրինական շահերի պաշտպանության ուժեղացման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման նկատմամբ։ Տվյալ որոշման իրականացման ուղղությամբ պետք է ակտիվ աշխատանք կատարի նաև Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու ընկ. Մ. Յուզբաշյանը։

Մենք դեռևս չենք հասել կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպությունների հետ իրավապահ մարմինների հստակ փոխգործողության։ Իրավապահ մարմինների գործունեությունը բարելավելու, մեր կյանքից օրինականության խախտումներն ու չարաշահումները արմատախիլ անելու համար ինչպես հարկն է չի բարձրացված կուսակցության շրջկոմների ու քաղկոմների և տեղական սովետների պատասխանատվությունը։

Ամեն կարգի խախտումների ու բացասական երևույթների դեմ մղվող պայքարի ուժեղացումը, բարոյական իրադրության բարելավումը պահանջում են խստացնել վերահսկողությունը, ընդլայնել հրապարակայնությունը, քննադատությունն ու ինքնաքննադատությունը։

Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու ընկ. Գ. Մարտիրոսյանը, որի վրա դրվել է վերահսկողության կոորդինացումը ամբողջ հանրապետությունում, չի կարողացել գործն այնպես կազմակերպել, որպեսզի ձեռնարկություններն ու կազմակերպություններն ազատվեն բազում իրար կրկնող ստուգումներից, որոնց իրական արդյունքը մեծ չէ, իսկ փոխարենը խանգարում են գործին, ավելորդ նյարդայնություն առաջացնում աշխատողների մեջ։ Այդ բանը պետք է շտկել։

Անհրաժեշտ է ուժեղացնել ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքը։ Ժողովրդական վերահսկողության կոմիտեն սակավ է Կենտկոմի քննարկմանը ներկայացնում սուր հարցեր։ Կոմիտեի ղեկավարությունը, անձամբ նրա նախագահը հաճախ լիբերալ մոտեցում են հանդես բերում մինիստրությունների, գերատեսչությունների, այլ կազմակերպությունների ու մարմինների ղեկավարների գործունեությունը գնահատելիս, խախտումների համար պատասխանատվության ենթարկելով երկրորդական պաշտոնատար անձանց։

Ընկ. Գ. Մարտիրոսյանը պետք է ուժեղացնի ժողովրդական վերահսկողության կոմիտեի ղեկավարության կապերը ժողովրդական վերահսկողության քաղաքային ու շրջանային կոմիտեների և խմբերի հետ, բարձրացնի ապարատի աշխատողներին ներկայացվող պահանջկոտությունը, ուժեղացնի կատարման վերահսկողությունը։

Հանրապետական կուսակցական կազմակերպության կյանքում ավելացել է քննադատությունը։ Այն նպաստել է կոմունիստների ակտիվացմանը, բացահայտել է թերություններ ու բացթողումներ, ակտիվորեն օգնել գործերի վիճակի բարելավմանը աշխատանքի տարբեր տեղամասերում։

Կենտկոմի բյուրոն ամենայն ուշադրությամբ քննության է առնում այն քննադատական դիտողությունները, որոնք վերաբերում են ինչպես առանձին մարմիններին, այնպես էլ կոնկրետ անձանց ձեռնարկել է և կձեռնարկի բոլոր միջոցները, որպեսզի յուրաքանչյուր ճիշտ, արդարացի, կոնստրուկտիվ քննադատական դիտողություն հաշվի առնվի և այդ առթիվ ընդունվի համապատասխան որոշում։ Մենք պարտավոր ենք և բոլոր միջոցները կձեռնարկենք, որպեսզի քննադատությունից դուրս չմնա ոչ մի գոտի, ոչ մի դեմք, ինչպիսի պաշտոն էլ զբաղեցնելիս լինի, որ քննադատությունը հնչի մեր կենսագործունեության բոլոր օղակներում։ Ընդ որում մենք պետք է հետևենք, որ քննադատությունը հաստատուն կերպով հիմնավորվի մեր կուսակցական տանը, որ կուսակցական ժողովներում, հատկապես կուսակցական կոմիտեների պլենումներում, սկսած շրջկոմի պլենումից մինչև Կենտկոմի պլենում,



մշտապես հնչի հասցեագրված, առողջ, կոնստրուկտիվ, կուսակցական քննադատություն, այնպիսի քննադատություն, որն օգնում է սխալներն ուղղելուն, թերությունները վերացնելուն, ցանկացած աշխատողի ճիշտ ուղղություն տալուն։

Դրա հետ մեկտեղ մեր ընդհանուր հոգսը պետք է լինի քննադատության կուլտուրայի բարձրացումը։ Չէ որ գաղտնիք չէ, որ առանձին անձինք երբեմն իջնում են մինչև հարաբերությունների պրիմիտիվ պարզում, անձնական հաշիվներ, մաքրում, բորբոքում, անբարո և անպատասխանատու «քննադատախաղ», նիհիլիստորեն բացասում ամենքին և ամեն ինչ, պաշտպան կանգնում կեղծ ու պատիր սկզբունքների, ինչն, իհարկե, միայն վնասում է գործին։ Սրա դեմ հարկավոր է ակտիվորեն պայքարել։

Քննադատությունը մեզ օգնել է ճանաչելու շատ թերություններ։ Այսօր կարևորագույն խնդիրը թերությունների վերացումն է։ Թե ինչպես վերացնել դրանք, ինչպես շտկել վիճակը, մենք պետք է ճշտենք կոլեկտիվ վերլուծությամբ և միջոցառումների մշակումով, գործերի իրապես բարելավման ուղիներ, մեթոդներ և միջոցներ որոնելով, ընդ որում յուրաքանչյուր մակարդակում։ Իսկ դա պահանջում է քննադատությունը զուգորդել այդ ուղիների կոնկրետ առաջարկության հետ։ Միևնույն թերություններն անվերջ մատնանշելով, դրանք չես վերացնի։ Հարկավոր են կոնստրուկտիվ առաջարկություններ, հարկավոր են եռանդուն գործողություններ։

Մենք թևակոխում ենք վերակառուցման երկրորդ փուլը, և վերակառուցման քաղաքականությունը, կոնցեպցիան պետք է վերածվեն կոնկրետ գործերի։ Թույլ տվեք Կենտկոմի բյուրոյի անունից վստահություն հայտնել, որ Կենտկոմի պլենումին ներկայացված հաշվետվության քննարկումը կընթանա հենց կոնստրուկտիվ քննադատության ու ինքնաքննադատության ոգով, կօգնի վերակառուցման երկրորդ փուլի խնդիրների հաջող լուծմանը, մեր կուսակցության քաղաքականության իրականացման գործուն միջոցառումների մշակմանը։

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ 1987 ԹՎԱԿԱՆԻ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 26-Ի VII ՊԼԵՆՈՒՄԻ

# ՈՐՈՇՈՒՄԸ

## «ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՅԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ»

*Լսելով և քննարկելով «Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի հաշվետվությունը վերակառուցման ղեկավարման աշխատանքի մասին» Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցումը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը նշում է, որ Հայաստանում վերակառուցումն արագացնելու և խորացնելու գործում բեկումնային իրադարձություն էր ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումը։ Հանրապետական կուսակցական կազմակերպություններում նրա որոշումների քննարկման շրջանը դարձավ աշխատավորների քաղաքական ու սոցիալական ակտիվության բարձրացման, հասարակական կյանքի դեմոկրատացման, քննադատության և ինքնաքննադատության զարգացման կարևոր փուլը։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն սկզբունքային հետևություններ է արել այն քննադատությունից, որ հնչեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում։ Վերակառուցումը ղեկավարելու նրա աշխատանքում ավելացել են գործարարությունը, պահանջկոտությունը, դեմոկրատայնությունը, հրապարակայնությունը։ Կուսակցական կարևոր որոշումներ են ընդունվել էկոնոմիկան տնտեսավարման նոր մեթոդների փոխադրելու, տնտեսական ու սոցիալական զարգացման հրատապ պրոբլեմները արագորեն լուծելու, գաղափարաբարոյական մթնոլորտը առողջացնելու նպատակով։ Բարձրացվել են կադրերին ներկայացվող պահանջները, փոխվել է մոտեցումը նրանց ընտրությանն ու տեղաբաշխմանը։ Հաղթահարվում են նախկինում այդ գործում թույլ տրված սխալներն ու վրիպումները։ Ավելի հաճախ են լսվում կուսակցության քաղկոմների, շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետվությունները։ Աճել է ժողովրդական դեպուտատների սովետների, հասարակական կազմակերպությունների գործունեության կուսակցական ղեկավարման մակարդակը, բարձրացել է պահանջկոտությունը տնտեսական մարմինների նկատմամբ։ Հանրապետությունում նկատելի են դրական տեղաշարժերը տնտեսական ու սոցիալական զարգացման որոշ ուղղություններում։ Ավելի ակտիվորեն է պայքար մղվում բացասական երևույթների, զանազան կարգի խախտումների ու չարաշահումների դեմ, այդ գործում հետզհետե ավելի են ընդգրկվում բնակչության լայն խավերն ու աշխատավորական կոլեկտիվները։*

*Սակայն դանդաղում են նորացման պրոցեսը, բարելավման ուղղությամբ իրական տեղաշարժերը, տնտեսական, սոցիալական և հոգևոր ոլորտներում դրական արդյունքները։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի և նրա առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի գործունեության մեջ դեռևս չկա*



*կադրերին ներկայացվող պատշաճ պահանջկոտություն ընդունված որոշումների կատարման համար։ Բյուրոյի, քարտուղարության կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակը ոչ լիովին է համապատասխանում վերակառուցման խնդիրներին։ Կուսակցության Երևանի (ընկ. Լ. Գ. Սահակյան), Լենինականի (ընկ. Դ. Ա. Հարությունյան), Կիրովականի (ընկ. Հ. Ա. Օհանյան) քաղկոմների կազմակերպչական աշխատանքը տակավին չի ապահովում արմատական բարելավումը տնտեսական, սոցիալական և հոգևոր ոլորտներում։*

*Կենտկոմի բյուրոյում չի հաջողվել ուշադրությունը կենտրոնացնել կազմակերպական-կուսակցական աշխատանքի առավել գլխավոր ուղղությունների վրա։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Յու. Պ. Կոչետկովը, կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժինը (ըն. Ք. Լ. Մանդալյան) պատշաճ հաստատակամություն չեն ցուցաբերում կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործի բարելավման, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, վերակառուցման ղեկավարման առաջավոր փորձի ընդհանրացման և կուսակցական աշխատանքի պրակտիկայում այդ փորձի ներդրման ուղղությամբ քաղկոմների, շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու աշխատանքում։ Ամեն ինչ չի արված կուսակցական կազմակերպությունների աշխատանքում ներկուսակցական դեմոկրատիան, հրապարակայնությունն ու բացախոսությունը զարգացնելու համար, քննադատությունն ու ինքնաքննադատությունը թույլ են օգտագործվում որպես թերությունների և վրիպումների դեմ պայքարելու միջոց։ Վերակառուցումն իրականացնելու գործում ցածր է տեղական սովետների, արհմիութենական, կոմերիտական և հասարակական կազմակերպությունների դերը։*

*Կենտկոմի պլենումը նշում է, որ հանրապետության էկոնոմիկայի զարգացման բնագավառում անհրաժեշտ կայունություն և դինամիկություն ձեռք չի բերված։ Ընդհանուր դրական ցուցանիշների հետևում շատ են լուրջ թերությունները աշխատանքի կոնկրետ ուղղություններում։ Բյուրոյի անդամներ ընկ. ընկ. Ֆ. Տ. Սարգսյանը, Կ. Հ. Ղամբարյանը, Թ. Ա. Դիլանյանը, Մ. Հ. Մուրադյանը, Ս. Գ. Հարությունյանը, Վ. Մ. Մովսիսյանը կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների ջանքերը լրիվ չափով չեն կենտրոնացնում գիտատեխնիկական առաջընթացի արագացման պլանների պարտադիր կատարման, պայմանագրային կարգապահության ամրապնդման, արտադրանքի որակի բարձրացման վրա։ Լուրջ մտահոգության տեղիք են տալիս մեքենաշինական համալիրի վիճակը, բնակարանների և սոցիալական ոլորտի մյուս օբյեկտների շինարարության ընթացքը։ Վճռական տեղաշարժեր չկան ագրոարդյունաբերական համալիրի ձեռնարկությունների և կազմակերպությունների գործունեության բարելավման ասպարեզում։ Թերություններ կան տնտհաշվարկին և ինքնաֆինանսավորմանը ձեռնարկությունների ու միավորումների անցումը նախապատրաստելու գործում։*

*Պլենումը գտնում է, որ Կենտկոմի բյուրոն չի ապահովել վերակառուցման գաղափարախոսական ապահովման աշխատանքի պատշաճ ակտիվացում։ Կենտկոմի քարտուղար ընկ. Ռ. Ս. Արզումանյանը բավականաչափ հաստատակամորեն չի իրականացնում նոր մոտեցումները գաղափարադաստիարակչական գործունեության նկատմամբ և դրան ներկայացվող պահանջները, ցածր արդյունավետությամբ է անցկացվում աշխատավորների քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումը։ Մասսայական ինֆորմացիայի միջոցները ակտիվորեն չեն գործում վերակառուցման օգտին։ Անբավարար են բարձրագույն կրթության վերակառուցման, դպրոցական ռեֆորմի իրականացման տեմպերն ու խորությունը։*

*Կենտկոմի բյուրոն չի ապահովել արմատական բեկում ամեն կարգի բացասական, հակահասարակական երևույթների, հանցագործությունների և իրավախախտումների դեմ մղվող պայքարում։ Այն բավականաչափ նպատակասլաց ու հաստատակամորեն չի մղվում։ Այստեղ ցածր է իրավապահ մարմինների դերն ու պատասխանատվությունը։ Լուրջ թերություններ կան բնակչության առևտրական, բժշկական, տրանսպորտային, կենցաղային սպասարկման ոլորտում։*

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը որոշում է.

1. Նշել, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1887 թվականի հունիսյան պլենումից հետո Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն ակտիվացրել է վերակառուցման կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը։ Սակայն նրա արագացման ու խորացման գործում արմատական փոփոխություններ ձեռք չեն բերվել։

Հանձնարարել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին, քարտուղարությանը կոնկրետ միջոցներ ձեռնարկել արագացնելու հանրապետության սոցիալ-տնտեսական, կուլտուրական, հասարակական-քաղաքական զարգացման ծրագրի իրագործումը։ Այդ նպատակով կտրուկ շրջադարձ կատարել դեպի վերակառուցման ղեկավարման քաղաքական մեթոդները, ըստ ամենայնի ուժեղացնել, էլ ավելի նպատակասլացություն հաղորդել կազմակերպչական, գաղափարադաստիարակչական, կադրային աշխատանքին յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում։ Ամենուրեք հաստատել և ամրապնդել հրապարակայնության մթնոլորտ, ընդլայնել դեմոկրատիան, քննադատությունն ու ինքնաքննադատությունը, նպաստել ստեղծագործական մթնոլորտի հաստատմանը, անզիջում պայքար մղել բացասական, հակահասարակական երևույթների դեմ։ Կատարելագործել և հարստացնել կուսակցական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Արմատապես բարելավել կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, ժողովրդական վերահսկողության մարմինների, հասարակական մյուս կազմակերպությունների գործունեության ղեկավարումը։ Բարձրացնել դրանց դերը որպես տեղերում վերակառուցման կազմակերպիչների։

Հաշվի առնելով մի շարք կազմակերպություններում վերակառուցման ղեկավարման վերաբերյալ ընտրովի մարմինների հաշվետվություններին նվիրված պլենումների և կուսակցական ժողովների անցկացման գործում էական թերությունների առկայությունը, Կենտկոմի բյուրոյին և քարտուղարությանը հանձնարարել ապահովել այդ հարցերին նվիրված բոլոր հետագա ժողովների ու պլենումների անցկացումը ՍՄԿԿ Կենտկոմի պահանջներին ու ցուցումներին խստիվ համապատասխան։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին՝ միջոցներ ձեռնարկել կուսակցական կոմիտեների պլենումների և կուսակցական ժողովների նախապատրաստման ու անցկացման ընթացքում Հայաստանի կոմկուսի Կենտկոմում ստացված քննադատական դիտողությունների ու առաջարկությունների իրականացման համար։

2. Հանձնարարել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին, կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանին՝ ուժեղացնել աշխատանքի կոորդինացումն ու պահանջկոտությունը Կենտկոմի բյուրոյի անդամներից, քարտուղարներից, բաժիններից, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների քարտուղարներից, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներից յուրաքանչյուրի կողմից իր պարտականությունների, իր կուսակցական պարտքի բարեխիղճ կատարման համար, հասնել վերակառուցման գլխավոր ուղղություններում նրանց գործողությունների ներդաշնակության։

3. Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին, քարտուղարությանը, Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Յու. Պ. Կոչետկովին՝ կոնկրետ միջոցներ ձեռնարկել կուսակցական աշխատանքի արմատական վերակառուցումն ապահովելու, կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը բարելավելու համար։ Կադրային աշխատանքին հաղորդել սիստեմայնություն ու գիտականություն, ձգտել այն բանին, որ բոլոր ղեկավար, պատասխանատու պոստերում լինեն բանիմաց, սկզբունքային, քաղաքականապես հասուն, բարոյապես անբասիր, պրոֆեսիոնալ տեսակետից գրագետ աշխատողներ, որոնք ընդունակ լինեն ապահովել հանձնարարված տեղամասում վերակառուցման իրագործումը։ Վճռականորեն պայքարել հովանավորչականության, անձնական նվիրվածության հատկանիշներով կադրերի առաջքաշման փաստերի դեմ։

Էլ ավելի զարգացնել ընտրովիության սկզբունքները ղեկավար պաշտոնների զբաղեցման գործում, առանձնակի ուշադրություն նվիրել աշխատավորական կոլեկտիվներում գործնական աշխատանքի դպրոց անցած երիտասարդ աշխատողների, կանանց, ոչ տեղաբնիկ ազգության ներկայացուցիչների առաջքաշմանը։ Մեծ արդյունավետություն ու գործնական հասունց ապահովել վերակառուցման վճռական փուլում կուսակցության բոլոր քաղկոմների. շրջկոմների, նրանց առաջին քարտուղարների աշխատանքում։

Վճռական միջոցներ ձեռնարկել իրավապահ մարմինների կողմից կուսակցական ղեկավարումը արմատապես բարելավելու ուղղությամբ, նրանց գործունեությունը նպատակամղել կաշառակերության, սպեկուլյացիայի, սոցիալիստական սեփականության հափշտակումների, առևտրի, բնակչության կենցաղային սպասարկման ոլորտում տեղ գտած չարաշահումների դեմ արդյունավետ պայքարին։ Շարունակել նրանց կադրային կազմի ամրապնդումը։

4. Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին, Կենտկոմի բյուրոյի անդամներ ընկ. ընկ. Ֆ. Տ. Սարգսյանին, Կ. Հ. Ղամբարյանին, Թ. Ա. Դիլանյանին, Մ. Հ. Մուրադյանին, Վ. Մ. Մովսիսյանին, Ս. Գ. Հարությունյանին՝ ապահովել առավելագույն հասունց տնտեսավարման նոր մեթոդների արմատավորումից, դրական որակական տեղաշարժեր՝ վերակառուցման վճռական փուլում, գիտատեխնիկական առաջադիմության անհրաժեշտ արագացում, արտադրության արդյունավետության, արտադրանքի որակի, պլանային, պետական ու պայմանագրային կարգապահության բարձրացում արդյունաբերության մեջ։ Գործուն միջոցներ ձեռնարկել հանրապետության էկոնոմիկայի ֆինանսական առողջացման նպատակով։

Հասնել ագրոարդյունաբերական համալիրում առկա բնատնտեսական պոտենցիալի լրիվ օգտագործման, գյուղատնտեսական մթերքների արտադրության դինամիկ ավելացման։ Ապահովել գյուղատնտեսության ու նրա հետ կապված ճյուղերի կայուն, ինտենսիվ զարգացումը, մթերքների կորուստների կրճատումը դրանց արտադրության, պահպանման ու վերամշակման բոլոր փուլերում, գիտության ու առաջավոր պրակտիկայի նվաճումների լայն արմատավորումը, գյուղի սոցիալական վերակառուցման պրոբլեմների հաջող լուծումը, գյուղական վայրերում մասնագետ կադրերի ամրացումը։ Ավելի լայնորեն արմատավորել պլանավորման նորմատիվային մեթոդը, տնտհաշվարկը, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջադիմական ձևերը։

Սոցիալ-կուլտուրական զարգացման բնագավառում ապահովել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության առաջանցիկ զարգացում, բարձրացնել դրանց սպառողական հատկանիշները, ընդլայնել տեսականին։ Արմատապես բարելավել առևտրի, բնակչության կենցաղային սպասարկման, տրանսպորտի ձեռնարկությունների. բժշկական հիմնարկների աշխատանքը։ Մշակել հանրապետության բնակչության ջրամատակարարման պրոբլեմի արմատական լուծման նպատակային ծրագիր։ Ընդլայնել առևտրի օբյեկտների, հիվանդանոցների ու պոլիկլինիկաների, կուլտուր-կենցաղային հիմնարկների ցանցը։ Ժողովրդական տնտեսության մեջ լրացուցիչ տեղերի ստեղծման, կոոպերատիվ, անհատական աշխատանքային գործունեության հետագա զարգացման հաշվին հասնել աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածության։ Իրականացնել բնապահպանական միջոցառումների լայն կոմպլեքս, նորմալացնել հանրապետության էկոլոգիական իրավիճակը։

Կապիտալ շինարարության մեջ առաջնահերթ խնդիր համարել «Արագացում» ծրագրի և մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիքի առանձին բնակարանով կամ անհատական տնով ապահովելու աշխատանքի անվերապահ կատարումը։ Ամրապնդել շինարարական ինդուստրիայի նյութատեխնիկական բազան, լիովին գործի դնել այստեղ առկա արտադրական պոտենցիալը։ Լայնորեն զարգացնել ու արմատավորել բնակարանների և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության տնտհաշվարկային եղանակը, ըստ ամենայնի բարձրացնել շինարարության, հատկապես բնակարանային շինարարության որակը։

5. Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին, քարտուղարությանը, Կենտկոմի քարտուղար ընկ. Ռ. Ա. Արզումանյանին՝ ուժեղացնել աշխատավորական կոլեկտիվներում, աշխատավորների տարբեր կատեգորիաների և սոցիալական խմբերի շրջանում տարվող գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կուսակցական ղեկավարումը։ Կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին նպատակամղել տնտեսավարման նոր պայմաններում քաղ-

մասսայական, պրոպագանդիստական աշխատանքի արդյունավետ ձևերի որոնմանն ու արմատավորմանը։ Առանձնակի ուշադրություն նվիրել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով աշխատավորության դաստիարակության հարցերին, վերակառուցել քաղաքական ու տնտեսագիտական կրթության համակարգը, քաղդաստիարակչական գործունեության բարելավման գործունեության բարելավման միջոցառումները սերտորեն շաղկապելով էկոնոմիկայի արմատական ռեֆորմի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում և ամբողջությամբ վերցրած հասարակության մեջ սոցիալական զարգացումն արագացնելու գործնական խնդիրների լուծման հետ։ Բարելավել ստեղծագործական կազմակերպությունների ղեկավարումը։

Հանրապետության թերթերին, հանդեսներին, հեռուստատեսությանն ու ռադիոյին՝ ուշադրության կենտրոնում պահել դեմոկրատացման ու տնտեսական ռեֆորմի հրատապ հարցերը, ըստ ամենայնի պաշտպանել ու լայնորեն պրոպագանդել վերակառուցման առաջավոր փորձը, լինել սոցիալ-տնտեսական, կուլտուրական զարգացման հասունացած պրոբլեմների շուրջը կարծիքների փոխանակության ամբիոն, զարգացնել դրանց քննադատական ուղղվածությունը, համարձակորեն բացահայտել սխալները, թերությունները ու վրիպումները։

***

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները իրենց ջանքերը, գիտելիքները, եռանդը կնվիրաբերեն հասունացած պրոբլեմների անվերապահ լուծմանը, կկարողանան վերջնականապես հաղթահարել էկոնոմիկայի ասպարեզում, գաղափարաքաղաքական ոլորտում եղած թերությունները։ Հայաստանի կուսակցական կազմակերպությունը կապահովի կուսակցության XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի որոշումների անշեղ կենսագործումը, հանրապետության աշխատավորներին կմոբիլիզացնի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում բարձր ցուցանիշների ձեռք բերմանը։

---

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԿՈՒՐՍՈՎ

**Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հաջողությամբ կատարեց տասներկուերորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանային առաջադրանքները և ձեռնամուխ է եղել երրորդ տարվա խնդիրների կենսագործմանը։

Անցած հոբելյանական տարին հարուստ էր ոչ միայն աշխատանքային նվաճումներով, այլև կարևորագույն հասարակական քաղաքական անցքերով։ Մեծ Հոկտեմբերի պանծալի յոթանասունամյակը ջերմ խանդավառությամբ նշվեց ողջ աշխարհում, վերածվեց իսկական համաժողովրդական, միջազգային տոնի։ Հանդիսություններին Մոսկվա էին ժամանել 119 երկրների 163 պատվիրակություններ։ Նրանց թվում էին ականավոր պետական, քաղաքական ու հասարակական գործիչներ, փառաբանված հերոսներ, իրենց երկրներում և ամբողջ աշխարհում լայնորեն հայտնի մարդիկ։ Տոնակատարության օրերին իրենց պատվիրակություններն ուղարկած կուսակցությունների և կազմակերպությունների նախնական համաձայնությամբ տեղի ունեցավ նրանց հանդիպումը, որին ներկա էին 178 պատվիրակություններ։ Ելույթի համար ցուցակագրված 119 կուսակցությունների և կազմակերպությունների ներկայացուցիչներից հանդես եկան 63 մարդ։ Եզրափակելով հանդիպումը, Մ. Ս. Գորբաչովը հատկապես շեշտեց. բոլոր տարբերություններով ու առանձնահատկություններով հանդերձ, որ այստեղ առկա էին, մեզ միավորում է, և դա միանգամայն ակնհայտ է բոլոր ելույթներից, երկու բան. մենք բոլորս գործում ենք հօգուտ աշխատավորության և մենք բոլորս պատրաստ ենք առավելագույնն անելու, որպեսզի վերացնենք պատերազմի սպառնալիքը, առողջացնենք միջազգային հարաբերությունները։

Հանդիպումն, իրոք, արտացոլեց արդի աշխարհի բազմազանությունը և այն տարբեր պայմանները, որոնցում մեզանից յուրաքանչյուրն աշխատում է, մտքերի և մոտեցումների կերպի յուրօրինակությունը։

Հոբելյանական հանդիսությունների կիզակետը ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի «Հոկտեմբերը և վերակառուցումը. հեղափոխությունը շարունակվում է» զեկուցումն էր։ Այդ բովանդակալից ելույթը մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման վառ արտահայտություն է, որի հիմնադրույթները արտացոլում են արդիականության կարևոր սոցիալ-քաղաքական տեղաշարժերը, կանխանշում սոցիալական պրոցեսների հեռանկարը։

Հիրավի, յոթ տասնամյակը միանգամայն փոքր ժամանակահատված է համաշխարհային քաղաքակրթության բազմադարյան վերընթացի ճանապարհին։ Սակայն մեծագործությունների մասշտաբներով պատմությունը դեռ չէր իմացել այնպիսի ժամանակաշրջան, որ մեր երկիրն անցել է մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո։ Իրոք, չկա ավելի բարձր պատիվ, քան նախագնացների ուղիով ընթանալը, բոլոր ուժերի, եռանդի, գիտելիքների, ընդունակությունների նվիրաբերումը հանուն Հոկտեմբերի գաղափարների ու նպատակների հաղթանակի։ Լավ է ասված զեկուցման մեջ՝ հոբելյանը հպարտանալու պահ է, հիշատակի պահ, մտորումների պահ, այն նաև հայացք է ապագային։

Մենք հպարտանում ենք, որ մեր հեղափոխությունը, աշխատանքը և պայքարը շարունակում են խորագույն ազդեցություն գործել համաշխարհային

---

ՍԻՄՈՆՅԱՆ Արամ Սիմոնի — «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագիր

զարգացման բոլոր կողմերի՝ քաղաքականության ու էկոնոմիկայի, սոցիալական ոլորտի և ժամանակակիցների գիտակցության վրա։ Մենք երախտագիտությամբ ենք նշում այն միլիոնավոր մարդկանց հիշատակը, որոնցից յուրաքանչյուրը ավանդ է ներդրել մեր ընդհանուր սոցիալիստական նվաճումների մեջ։ Այդ աննախադեպ արարումներում ու պայքարում եղել է ամեն ինչ՝ թե՛ հերոսական և թե՛ ողբերգական, թե՛ մեծ հաղթանակներ և թե՛ դառն անհաջողություններ։ Սոցիալիզմի զարգացման մեջ, լենինիզմի ու Հոկտեմբերի գաղափարների և պրակտիկայի շարունակման մեջ ենք մենք տեսնում մեր այսօրվա գործերի ու հոգսերի էությունը, մեր առաջնագույն խնդիրն ու բարոյական պարտականությունը։

Պատմությունը անողոք վերջնագիր ներկայացրեց նոր կարգերին. կամ ամենասեղմ ժամկետում ստեղծելով իր սոցիալ-տնտեսական ու տեխնիկական բազան՝ գոյատևել և մարդկությանը տալ հասարակության արդարացի կազմակերպման առաջին փորձը, կամ մարել և դարերի հիշողության մեջ մնալ լավագույն դեպքում լոկ որպես հերոսական, բայց չհաջողված սոցիալական փորձ։ Երբ ակնբախորեն ուժեղանում էր իմպերիալիստական ագրեսիայի սպառնալիքը, կուսակցության մեջ հաստատվեց այն համոզմունքը, որ անհրաժեշտ է ոչ թե քայլելով, այլ պատմական ամենակարճ ժամկետներում բառացիորեն վազելով անցնել տարածությունը՝ կռանից ու գյուղական արորից դեպի զարգացած ինդուստրիան։ Կուսակցության կոչով միլիոնավոր մարդիկ ձեռնամուխ եղան սովետական ինդուստրիայի կառուցմանը։ Ծանրագույն հանգամանքներում, մեքենայացման բացակայության պայմաններում, կիսաքաղց օրապահիկով մարդիկ հրաշքներ էին գործում։ Մեր պապերի և հայրերի աշխատանքն ու անշահախնդիր ինքնանվիրումը ապարդյուն չէին։ Նրանք հաղթահարեցին այն ամենը, ինչ նրանց վիճակված էր և մեծագույն ավանդ ներդրեցին Հոկտեմբերի նվաճումների հաստատման, հայրենիքը մահացու վտանգից փրկելու գործում։

Այդ ժամանակ առաջացավ երկրի կուսակցական-պետական ղեկավարման վարչահրամայողական համակարգ, ուժեղանում էր բյուրոկրատիզմը, որի վտանգի մասին ժամանակին նախազգուշացնում էր Լենինը։ Եթե արդյունաբերության մեջ այն ժամանակվա ծավալների պարագայում կառավարման այդպիսի համակարգը ընդհանուր առմամբ արդյունքներ տալիս էր, նույնը չէր կարելի ասել գյուղի վերափոխման խնդիրները լուծելիս։ Այստեղ թույլ տրվեց նահանջ գյուղացիության նկատմամբ լենինյան քաղաքականությունից։ Կոլեկտիվացման սկզբունքների կոպիտ խախտումները համատարած բնույթ ստացան։ Խոտորումներ եղան կուլակության դեմ պայքարում, որը տարածվեց նաև միջակ գյուղացիության զգալի մասի վրա։ Ինչ խոսք, գյուղում սոցիալիզմի դիրքերի ամրապնդման գործում կոլեկտիվացումը սկզբունքային նշանակություն ուներ։ Վերջինս ստեղծեց սոցիալական հիմք ագրարային հատվածը արդիականացնելու և այն կուլտուրական տնտեսավարման ուղու վրա փոխադրելու համար։ Կոլեկտիվացման շնորհիվ զգալի բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, սոցիալիստական շինարարության մյուս ոլորտներն ապահովվեցին անհրաժեշտ բանվորական ուժով։ Վարչական, հրամայողական համակարգը, հաստատվելով էկոնոմիկայում, տարածվեց նաև վերնաշենքի վրա՝ սահմանափակելով սոցիալիզմի դեմոկրատական պոտենցիալի ծավալումը, արգելակելով սոցիալիստական դեմոկրատիայի առաջադիմությունը։

Փաստ է, սակայն, որ սովետական հասարակության դեմոկրատացման պատշաճ մակարդակի բացակայությունը հնարավոր դարձրեց թե՛ անհատի պաշտամունքի և թե՛ 30-ական թվականների օրինականության խախտումների, կամայականության ու բռնությունների երևան գալը։ Ուղղակի ասած՝ իսկական հանցագործություններ՝ իշխանության չարաշահման հողի վրա։ Այդ բարդ ու ողբերգական ժամանակաշրջանում զանգվածային բռնությունների ենթարկվեցին բազմահազար կուսակցականներ և անկուսակցականներ։ Լուրջ վնաս հասցվեց սոցիալիզմի գործին, կուսակցության հեղինակությանը։ Այսօր այդ մասին կուսակցությունն ասում է հանուն սոցիալիզմի լենինյան իդեալի վերջնական և անշրջելի հաստատման։ Ո՛չ կոպիտ սխալները, ո՛չ էլ սոցիալիզմի սկզբունքներից թույլ տրված նահանջները չէին կարող մեր ժողովրդին, մեր երկիրը շեղել այն ուղուց, որ նա ընտրել էր 1917 թվականին։ Հիրավի, չափազանց մեծ էր Հոկտեմբերի ազդակը, չափազանց զորեղ էին սոցիալիզմի գա-



ղափարները, որոնք տիրեցին մասսաներին։ Ժողովուրդն իրեն զգաց մեծ գործի մասնակիցը, սկսեց օգտվել իր աշխատանքի պտուղներից։ Նրա հայրենասիրությունը նոր, սոցիալիստական բովանդակություն ստացավ, այն ամբողջ ուժով դրսևորվեց 1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմի դաժան փորձություններում։ Հոկտեմբերի հայրենիքը ֆաշիզմի դեմ գոտեմարտում ոչ միայն հաղթանակ տարավ, այլև ահեղ, ամենաավերիչ պատերազմից դուրս եկավ բարոյապես, քաղաքականապես կոփված, ամրապնդեց իր հեղինակությունն ու ազդեցությունը ամբողջ աշխարհում։ Պատերազմի ավարտից հետո սովետական ժողովուրդը կարճ ժամանակամիջոցում վերականգնեց ավերված քաղաքներն ու գյուղերը, փլատակների վրա կառուցեց գործարաններ ու ֆաբրիկաներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, դպրոցներ, բուհեր, մշակույթի հիմնարկներ։ Հանուն սոցիալիզմի ժողովրդական նոր սխրագործության ժամանակներում իրեն ավելի ու ավելի շոշափելիորեն էր զգալ տալիս մեր հասարակության զարգացման նոր աստիճանի և ղեկավարման նախկին մեթոդների միջև եղած հակասությունը։ Մարդիկ անձնուրաց աշխատում էին, սովորում, ձգտում նոր գիտելիքների, հաշտվում դժվարությունների և պակասությունների հետ, բայց զգում էին, որ հասարակության մեջ կուտակվում են թե՛ տագնապը և թե՛ հույսը։ Ստալինի մահից անմիջապես հետո այդ ամենը ընկալեց հասարակական գիտակցությունը։

50-ական թվականների կեսերին, առանձնապես ՍՄԿԿ XX համագումարից հետո, երկրի վրայով անցավ փոփոխությունների հողմը, ժողովուրդը ոգի առավ, ավելի համարձակ ու ավելի վստահ դարձավ։ Կուսակցությունը, Ն. Ս. Խրուշչովի գլխավորած ղեկավարությունը ցուցաբերեցին կամք ու արիություն պսակազերծելու անհատի պաշտամունքն ու նրա հետևանքները, վերահաստատելու սոցիալիստական օրինականությունը։ Ներքին ու արտաքին քաղաքականության մեջ դեն նետվեցին նախկին ստերեոտիպերը։ Փորձեր արվեցին հրաժարվելու 30—40-ական թվականներին հաստատված՝ կառավարման հրամայողական բյուրոկրատական մեթոդներից, սոցիալիզմին հաղորդելու ավելի մեծ դինամիկություն, շեշտելու հումանիստական իդեալներն ու արժույթները, վերածնելու լենինիզմի ստեղծագործական ոգին տեսության մեջ և պրակտիկայում։

ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թվականի սեպտեմբերյան և 1955 թվականի հուլիսյան պլենումների որոշումները տոգորված էին տնտեսական զարգացման գերակայությունները փոխելու, աշխատանքի արդյունքներով անձնական շահագրգռությանն առնչվող խթանները գործի դնելու ձգտումով։ Առավել մեծ ուշադրություն դարձվեց գյուղատնտեսության զարգացմանը, բնակարանային շինարարությանը, թեթև արդյունաբերությանը, սպառման ոլորտին, այն ամենին, ինչ կապված է մարդու պահանջմունքների բավարարման հետ։ Սակայն հարկ է նկատել, որ ներքին ու արտաքին քաղաքականության, կուսակցական շինարարության որակապես նոր խնդիրները հաճախ լուծվում էին վոլյունտարիստական մեթոդներով, քաղաքական ու տնտեսական հին մեխանիզմի օգնությամբ։ Ասենք նաև, որ այդ ժամանակաշրջանում ձեռնարկված ռեֆորմների անհաջողությունների գլխավոր պատճառներն այն էին, որ դրանք չէին հենվում դեմոկրատացման պրոցեսների լայն ծավալման վրա։

Չնայած ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումից հետո որոշ բարեփոխումներ եղան, սակայն առկա հնարավորությունները օգտագործելու, դրանք գործի դնելու համար հարկավոր էին նոր արմատական փոփոխություններ հասարակության մեջ և, իհարկե, համապատասխան քաղաքական կամք։ Հայտնի է, որ թե՛ մեկը և թե՛ մյուսը պակասում էին։ Նույնիսկ շատ բան այն ամենից, ինչ որոշված էր, մնաց թղթի վրա։ Երկրի զարգացման տեմպերը լրջորեն դանդաղեցին։

Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը, այնուհետև ՍՄԿԿ XXVII համագումարը վեր հանեցին ստեղծված իրավիճակի պատճառները։ Ցույց տրվեց, որ Լ. Ի. Բրեժնևի կյանքի ու գործունեության վերջին տարիներին մեր հասարակության հետագա առաջընթացի ուղիների որոնումը շատ բանում կասեցվում էր սովորական դարձած բանաձևերի ու սխեմաների նկատմամբ հակվածությամբ, որոնք չէին արտացոլում նոր իրողությունները։ Ուժեղացավ խզումը խոսքի ու գործի միջև։ Էկոնոմիկայում աճում էին բացասական պրոցեսները, որոնք ըստ էության նախաճգնաժամային վիճակ էին ստեղծել։ Հասարա-

կական կյանքում, հոգևոր-բարոյական ոլորտում առաջացել էին անբնականոն շատ երևույթներ, որոնք աղավաղում, խեղաթյուրում էին սոցիալիստական արդարության սկզբունքները, սասանում ժողովրդի հավատը դրա հանդեպ, ծնում սոցիալական խորթացում և բարոյազրկություն՝ դրա տարբեր ձևերով։ Անհանդուրժելի էր դարձել հակասությունը սոցիալիզմի վեհ սկզբունքների ու կյանքի ամենօրյա իրողության միջև։

Արդարությունը պահանջում է ասել, որ կուսակցության և հասարակության մեջ առողջ ուժերը խորն էին զգում բացասական երևույթները հաղթահարելու, իրադարձությունների ընթացքը փոխելու, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն ապահովելու, բարոյական մաքրման և սոցիալիզմի նորացման հասնելու հրամայական պահանջմունքն ու անհրաժեշտությունը։

Ստեղծված իրավիճակից դուրս գալու ելքը եղան կուսակցության Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի առաջադրած երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կոնցեպցիան և ստրատեգիան, սոցիալիզմի խորացման կուրսը, որոնք տեսական ու քաղաքական զարգացում ստացան XXVII համագումարի, Կենտկոմի հետագա պլենումների որոշումներում և ձևակերպվեցին՝ որպես սոցիալիստական հասարակության կյանքի բոլոր կողմերի հեղափոխական վերակառուցման գլխավոր գիծ։ Այսօր երկրում ստեղծվել է քաղաքական, բարոյահոգեբանական նոր իրադրություն։ Կուսակցությանը հաջողվել է բարձրացնել մարդկանց շահագրգռությունը հասարական գործերի նկատմամբ, նրանց ակտիվությունը, մեծացնել պահանջկոտության, քննադատության ու ինքնաքննադատության, հրապարակայնության մակարդակը, նախադրյալներ ստեղծել մարդկանց մտածողության ու տրամադրությունների մեջ ռեալ փոփոխությունների համար։

Էկոնոմիկայի կառավարումը վերակառուցելու կուսակցության մշակած կոնցեպցիան ունի կոմպլեքսային բնույթ, ներառնում է տնտեսական մեխանիզմի բոլոր տարրերի փոխկապակցված որակական կատարելագործումը։ Ձեռնարկությունների ինքնուրույնության ընդլայնումը, անցումը ինքնակառավարման, տնտհաշվարկային փոխհարաբերությունների զարգացումը, տնտեսական պրակտիկայում տնտեսագիտական լծակների ու խթանների դերի շեշտակի բարձրացումը իրականացվում են պլանավորումը, գնագոյացումը, նյութատեխնիկական մատակարարումը, ֆինանսավարկային մեխանիզմը, կառավարման կազմակերպական կառուցվածքը արմատապես վերակառուցելու պայմաններում։

Հանրապետական կուսակցական կազմակերպությունը ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումից հետո որոշ չափով ակտիվացրել է վերակառուցման արագացման և խորացման կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը։ Աճել է կոմունիստների, բոլոր աշխատավորների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, կադրերի պատասխանատվությունը և նրանց նկատմամբ հանդես բերվող պահանջկոտությունը, ծավալվում են քննադատությունն ու ինքնաքննադատությունը, ընդլայնվում է հրապարակայնությունը։ Աշխատանք է կատարվում էկոնոմիկան կառավարման նոր համակարգի փոխադրելու, տնտհաշվարկն ու ինքնաֆինանսավորումը արմատավորելու նպատակով։

Այնուհանդերձ, վերակառուցումը, նորացման պրոցեսը հանրապետությունում առայժմ դանդաղ են ընթանում։ Անհրաժեշտ հետևողական աշխատանք չի տարվում կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման ուղղությամբ։ Միութենական ու հանրապետական ենթակայության շատ ձեռնարկություններ և միավորումներ չեն կատարում պլաններն ու պայմանագրային պարտավորությունները։ Անբավարար է իրականացվում արտադրության տեխնիկական վերազինումը։ Ցածր են աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը։ Աշխատանքային կոլեկտիվներում դանդաղ են հաղթահարվում անձեռներեցությունը և իներտությունը։ Որոշ ղեկավարներ տակավին գերի են մնում նախկին պատկերացումներին ու չափանիշներին, մտածում են հին կատեգորիաներով։ Առանձին կուսկազմակերպություններում հրապարակայնությունը, քննադատությունն ու ինքնաքննադատությունը կյանքի նորմ չեն դարձել։ Պատշաճորեն չեն լուծվում սոցիալական հարցերը, արդյունավետ պայքար չի ծավալվել բացասական երևույթների դեմ, թույլ են տրվում սոցիալական արդարության սկզբունքների խախտումներ։



Կուսակցական կազմակերպությունների, կուսակցական մարմինների ու կադրերի գործունեության արմատական բարելավումը դառնում է այսօրվա գլխավոր խնդիրը։ Անհրաժեշտ է բեկման հասնել յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության գործունեության մեջ, ակտիվացնել յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի, յուրաքանչյուր կոմունիստի աշխատանքը։ Օրվա հրամայականն է մասսաների նախաձեռնության ու ինքնագործունեության զարգացումը, համարձակորեն բռնել դեմոկրատացման ու հրապարակայնության, տնտհաշվարկի, կոլեկտիվ կապալի արմատավորման ուղին, արմատավորել աշխատանքի կազմակերպման ու խթանման, մարդկանց պահանջմունքների բավարարման նոր ձևեր։

Ընդհանուր առմամբ, հանրապետության էկոնոմիկան զարգանում է հնգամյակում նախանշված բնագծերին համապատասխան։ Արդյունաբերության, գյուղատնտեսության, ժողովրդական տնտեսության մի շարք այլ ճյուղերում շատ աշխատավորական կոլեկտիվներ զգալի ձեռքբերումներ ունեն տնտեսավարման նոր մեթոդները ներդնելու, գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա արտադրության արդյունավետության բարձրացման գործում։ Յուրացվել և թողարկվում են բարձր տեխնիկատնտեսական ցուցանիշներ ունեցող շատ արտադրատեսակներ։

Իրողություն է, սակայն, որ ընդհանուր թվերի հետևում տակավին թաքնվում են շատ ձեռնարկություններ և տնտեսություններ, որտեղ չեն կատարում առաջադրված խնդիրները, թողարկում են ցածրորակ արտադրանք, պատրաստ չեն տնտեսական մեխանիզմի վերակառուցման պայմաններում աշխատելուն, լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելուն։ Չեն կատարվում արտադրանքի առաքման պայմանագրային պարտավորությունները։ Կարելի է թվարկել բազմաթիվ կոլեկտիվներ, որտեղ դեռևս լրջորեն չեն զբաղվում արտադրության արդյունավետության բարձրացման, ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման, արտադրանքի նորացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրների լուծմամբ, մինչև վերջ չի գիտակցված նյութական և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ ծախսման գծի անշեղ ուժեղացման բացառիկ կարևորությունը։ Ըստ էության ռեսուրսախնայողությունը դառնում է ժողովրդական տնտեսության հարաճուն կարիքների բավարարման միակ աղբյուրը։

Վերջին երկու հնգամյակում արտադրական, գիտատեխնիկական պոտենցիալի զգալի մեծացում է տեղի ունեցել։ Դա հնարավորություն է ընձեռել ավելի արագորեն լուծելու էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման խնդիրը։ Սակայն այդ պոտենցիալն ինչպես հարկն է գործի չի դրվել։ Ժողովրդական տնտեսության զարգացման շատ ուղղություններում լճացման երևույթները դանդաղ են հաղթահարվում։ Հետևողական, սիստեմային աշխատանք չի տարվում արտադրության ներկա վիճակը որակապես բարեփոխելու ուղղությամբ։ Տարբեր ճյուղերի շատ ձեռնարկություններում տեխնիկայի ու տեխնոլոգիայի, արտադրության կազմակերպման ու կուլտուրայի մակարդակը չի համապատասխանում արդի պահանջներին, այն չի կարող ապահովել աշխատանքի արդյունավետության և արտադրանքի որակի շեշտակի բարձրացում։ Այս իրադրության պայմաններում հետևողականորեն չեն լուծվում արտադրական ապարատի արդիականացման խնդիրները, տարեցտարի չեն կատարվում նոր տեխնիկայի արմատավորման պլանները, իսկ դա չի կարող չանդրադառնալ աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի վրա։

Հանրապետության ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում ցածր է պետական պլանային կարգապահության մակարդակը։ Արդյունաբերության մեջ ամեն տարի ձեռնարկությունների 8—14 տոկոսը չի ապահովում ապրանքային արտադրանքի արտադրության և իրացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի նվազեցման պլանների կատարումը։ Դանդաղ է նորացվում թողարկվող արտադրանքը։ Մեքենաշինության ձեռնարկություններում դրա տարեկան նորացումը չի անցնում 5—6 տոկոսից, ճյուղում թողարկվող արտադրանքի 28,2 տոկոսը յուրացվել է տասը և ավելի տարի առաջ։ Իրենց որակական հատկանիշներով շատ արտադրատեսակներ չեն համապատասխանում արդի պահանջներին։ Մի շարք կարևոր ուղղությունների գծով արդյունաբերական արտադրության աշխատանքի ցուցա-

մաժողովրդական գործում։ Այսօր բոլորը պետք է ձեռնամուխ լինեն կենսականորեն կարևոր խնդիրների լուծմանը, որոնք ուղղակի առնչվում են մարդու ամենօրյա կյանքին, նրա մեջ ստեղծում աշխատանքային տրամադրություն, հնարավորություն տալիս նորմալ հանգստանալ, խելամտորեն տնօրինել ազատ ժամանակը։ Իրականում, եթե ժողովուրդը չզգա իրավիճակի բարելավում, նա անկեղծորեն ձեռնամուխ չի լինի նոր խնդիրների լուծմանը։

Կուսակցության ստրատեգիական գիծը քաղաքական և հասարակական հաստատությունների ողջ համակարգի ակտիվացումն է, հասարակական կյանքի դեմոկրատացման, մտածելակերպի ու գործելակերպի մեջ դեմոկրատական աշխարհըմբռնման ու աշխարհազգացողության հաստատման անհետաձգելիությունը։

Դեմոկրատիան սոցիալիզմի էության դրսևորման միջոց է։ Նկատենք, որ մարքսիզմը սոցիալիզմի սոցիալ-տնտեսական էությունը բնավ չի հանգեցնում սոսկ արտադրության միջոցների հանրայնացման։ Հանրայնացված արտադրությունը սոցիալիստական է դառնում, երբ գործնականում իրենց՝ աշխատավորներին է պատկանում արտադրական և հասարակական այլ գործերում կառավարման վճռական դերը, երբ կոլեկտիվներն իրենք են լուծում տնտեսական ու սոցիալական զարգացման կենսական հարցերը։ Նոր տնտեսական մեխանիզմի արմատավորումը ամենուրեք աշխատավորական կոլեկտիվներում օրակարգի հարց է դարձնում տնտեսագիտական գիտելիքների լայն տիրապետման անհրաժեշտությունը, մասնավորապես տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման հարցերին վերաբերող գիտելիքների յուրացումը։ Հասարակության մեջ տեղի ունեցող սոցիալ-քաղաքական պրոցեսները անհրաժեշտ են դարձնում գիտելիքների, աշխարհայացքային գիտությունների ամբողջ համալիրի տիրապետման մակարդակի որակական բարձրացումը։

Կադրերի ուսուցման կազմակերպումը, պատրաստումն ու վերապատրաստումը պետք է ուղեկցվեն վճռական շրջադարձով դեպի կադրերի հետ տարվող աշխատանքի դեմոկրատացում։ Նրանց ուշադիր ընտրություն, առաջքաշում։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, ներքևից եկող վերահսկողությունը, ղեկավարների հաշվետվությունը, նրանց փոխելիությունը, քննադատությունն ու ինքնաքննադատությունը պետք է ամենուրեք դառնան կուսակցական կյանքի նորմեր։ Այսօր կադրերի աշխատանքի գնահատման չափանիշը մեկը պետք է լինի՝ վերակառուցման մեջ կատարած կոնկրետ գործերը։

Վերակառուցումը պահանջում է զերծ լինել գովաբանումից, ներբողումից, անքննադատական մոտեցումից։ Հաղթահարել միտինգային խանդավառությունը, տոգորվել գործնական պատրաստակամությամբ՝ կենսագործելու կուսակցության առաջադրանքները։ Վերակառուցման նոր փուլում ամենուր հաջողությունն ամբողջովին պայմանավորվում է նրանով, թե իրենց պրակտիկ գործունեության մեջ կուսակցական կազմակերպությունները որքանով կկարողանան ի հայտ բերել ու ակտիվացնել մարդկային գործոնը, նրա ստեղծարար պոտենցիալը, իրականում ապահովել կոմունիստների ավանգարդային դերը։

Մեզ մոտ վերակառուցումն արագացնելու և խորացնելու համար բեկումնային իրադարձություն եղավ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումը։ Այնտեղ ՀԿԿ Կենտկոմի ղեկավարության, կուսակցական կազմակերպությունների հասցեին ուղղված խիստ ու արդարացի քննադատությունը ալեկոծեց հանրապետության կոմունիստներին, բոլոր աշխատավորներին։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1987 թվականի դեկտեմբերյան պլենումը, լսելով և քննարկելով ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի հաշվետվությունը վերակառուցման ղեկավարման աշխատանքի մասին, շեշտեց, որ հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի որոշումների քննարկման շրջանը դարձավ աշխատավորների քաղաքական ու սոցիալական ակտիվության բարձրացման, հասարակական կյանքի դեմոկրատացման, քննադատության և ինքնաքննադատության զարգացման կարևոր փուլը։ Հանրապետական կուսակցական կազմակերպությունր ինքնաքննադատաբար գնահատեց իր գործունեությունը, արվեցին որոշակի



հետևություններ։ Կուսակցական կոմիտեների աշխատանքներում արմատավորվում են փոխադարձ պահանջկոտությունը, գործարարությունն ու սկզբունքայնությունը, ապահովվում է ընդունվող որոշումների կոլեգիալությունը, ավելի ակտիվորեն է պայքար մղվում բացասական երևույթների, զանազան կարգի խախտումների ու չարաշահումների դեմ։ Այդ պայքարում ավելի լայնորեն են ընդգրկվում բնակչության տարբեր խավերն ու աշխատավորական կոլեկտիվները։

Հոբելյանական տարվա նշանակալից իրադարձություններից էր դեկտեմբերին Վաշինգտոնում կայացած սովետա-ամերիկյան բարձր մակարդակի հանդիպումը, որն արժանացավ բովանդակ աշխարհի հասարակայնության ձնշող մեծամասնության հավանությանը։ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև միջին ու փոքր հեռահարության հրթիռները վերացնելու պայմանագրի ստորագրումը կարևոր փուլ է միջազգային զարգացման ասպարեզում։ Այդ պայմանագրով մեծ տերությունները առաջին անգամ համաձայնեցին ոչնչացնել երկու կարգերի միջուկային սպառազինություններ։ Նախատեսված վերահսկողության ամենախիստ միջոցները հուսալիորեն ապահովում են պայմանագրի կատարման երկուստեք ստուգումը։ Սովետա-ամերիկյան պայմանագիրը համապատասխանում է բոլոր ժողովուրդների շահերին, անվտանգության մակարդակը բարձրացնում է գլոբալ մասշտաբով։

Հաստատակամ ու նպատակամետ ջանքերի շնորհիվ հաջողվեց զգալի առաջընթացի հասնել հակահրթիռային պաշտպանության պայմանագրի կատարման պայմաններում ստրատեգիական հարձակողական սպառազինությունների արմատական կրճատման պրոբլեմի առթիվ։ Վերջինս մնում է որպես կենտրոնականը սովետա-ամերիկյան հարաբերություններում, և ՍՍՀՄ-ը ելնում է խնդրի իրողությունից, որ համապատասխան պայմանագիր նախապատրաստվի ԱՄՆ-ի պրեզիդենտի այս տարվա առաջին կեսին Սովետական Միություն կատարելիք պատասխան այցի ժամանակ Մոսկվայում ստորագրելու համար։

Բանակցությունների ընթացքում երկուստեք ցանկություն է հայտնվել նըպաստելու սովետա-ամերիկյան երկկողմ հարաբերությունների զարգացմանը, բացախոս և կոնստրուկտիվ երկխոսություն անցկացնելու հումանիտար պրոբլեմների շուրջը։ Ջնայած աշխարհի մի շարք ռեգիոնների դրությունը քննարկելիս լուրջ տարաձայնությունների հավաստմանը, սովետական կողմը հետևողականորեն վարել է կոնֆլիկտային իրավիճակների կարգավորման նկատմամբ նոր մոտեցումների որոնման գիծը, անսասանորեն պաշտպանելով բոլոր ժողովուրդների՝ առանց արտաքին միջամտության զարգացման սեփական ուղու ընտրություն կատարելու իրավունքը։

Խաղաղության ու փոխըմբռնման համար մեր ժողովրդի հաստատակամ, անձնվեր պայքարը դարձել է համաշխարհային քաղաքակրթության պահպանման, մոլորակի խաղաղության ամրապնդման օգտին երկրագնդի բոլոր մարդկանց միասնական վիթխարի շարժման բաղկացուցիչ մասը։

ՍՄԿԿ առաջիկա XIX կոնֆերանսը խոշորագույն քաղաքական իրադարձություն է կուսակցության և երկրի կյանքում։ Ինչպես ասում է Մ. Ս. Գորբաչովը, մեզ համար, կոմունիստներիս համար, կոնֆերանսը կդառնա ըստ էության քաղաքական քննություն մեր կյանքի գլխավոր առարկայից՝ վերակառուցումից։

Էկոնոմիկայի բնագավառում, մյուս ոլորտներում մեր ամբողջ պրակտիկ աշխատանքը մենք պետք է այնպես վարենք, որ այդ քննությունը հանձնենք արժանավայել կերպով, կոնֆերանս տանենք պրակտիկ լավ փորձ, ռեալ արդյունքներ, դասեր քաղենք ապագայի համար։

Համամիութենական կուսակցական կոնֆերանսը քննության կառնի ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների իրականացման ընթացքը, տասներկուերորդ հնգամյակի առաջին կեսի հիմնական արդյունքները, վերակառուցման պրոցեսի խորացման ասպարեզում կուսակցական կազմակերպությունների խնդիրները, կքննարկի կուսակցության և հասարակության կյանքի հետագա դեմոկրատացման հարցերը։

Ընթանալով վերակառուցման հեղափոխական կուրսով՝ սովետական մարդիկ նոր բնագծեր կնվաճեն ընթացիկ հնգամյակի երրորդ տարում։

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՐԱԳԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

Ռ. ՀԱԿՈԲՅԱՆ

**ՄՇԱԿԵԼՈՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ** պլանաչափ կատարելագործման, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման մոտակա և հեռանկարային խնդիրները՝ կուսակցությունն առաջնորդվում է կարևորագույն այն օղակի առանձնացման լենինյան սկզբունքով, որը բռնելով կարելի է դուրս քաշել ամբողջ շղթան: ՍՄԿԿ XXVII համագումարը այդպիսի վճռական օղակ համարեց գիտության և տեխնիկայի արդի նվաճումների հիման վրա ժողովրդական տնտեսության խոր վերակառուցումը, սոցիալ-տընտեսական զարգացման արագացումը: ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ նշվեց, որ արագացման էությունը «աճի նոր որակն է՝ արտադրության ըստ ամենայնի ինտենսիֆիկացումը գիտատեխնիկական առաջընթացի, էկոնոմիկայի կառուցվածքային վերակառուցման, աշխատանքի կազմակերպման ու խթանման արդյունավետ ձևերի հիման վրա» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 30)**:

Կուսակցության գործունեության մեջ տնտեսական ստրատեգիայի առաջադաս լինելը պայմանավորված է նրանով, որ այն նպատակաուղղված է նյութական արտադրության որակական վերափոխմանն ու վերակառուցմանը: Դրա հաջողությունը էապես նպաստում է հասարակության քաղաքական, սոցիալական ու հոգևոր առաջընթացին, երկրի միջազգային դիրքերի, սոցիալիզմի հեղինակության ամրապնդմանը:

Տնտեսության զարգացման գլխավոր ուղին արտադրության նորացումն է և աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացումը: Մեզ համար լուրջ դաս էր մեր շրջկոմի գործունեության համակողմանի քննարկումը ՀԿԿ Կենտկոմի բյուրոյում: Հարցը դրված էր կոնկրետ. ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսով շրջկոմն ինչպես է բարձրացնում սկզբնական կուսկազմակերպությունների պատասխանատվությունը գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար:

Արժեքավորելով այդ ասպարեզում կատարված որոշակի աշխատանքը՝ Կենտկոմի բյուրոն արձանագրեց, որ շրջանի աշխատանքային կոլեկտիվներում չեն ստեղծվել գիտատեխնիկական առաջընթացին կոմունիստների, աշխատավորների ստեղծագործական մասնակցության անհրաժեշտ պայմաններ: Նշվեց, որ վերակառուցումն ընթանում է դանդաղ և ոչ հետևողականորեն, դեռևս ոչ բոլոր ղեկավարներն են գիտակցել այդ միջոցառման կարևորությունը, թույլ է կուսակցական կոմիտեների և բյուրոների պահանջկոտությունը վերակառուցման ընթացքի հաջողության համար: Գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում լուրջ թերությունները հետևանք են այն բանի, որ կուսշրջկոմի, նրա բյուրոյի աշխատանքի ոճում չեն կատարվում էական փոփոխություններ:

Մեր առջև խնդիր դրվեց կարճ ժամանակամիջոցում վերակառուցել շրջկոմի, կուսկազմակերպությունների, տնտեսական ղեկավարների գործունեությունը: Ի՞նչ էր հարկավոր անել: Առաջին հերթին՝ նորից վերլուծել գործերի վիճակը աշխատավորական կոլեկտիվներում, կուսկազմակերպություններում, մշակել և իրականացնել

ՀԱԿՈԲՅԱՆ Ռուբեն Յակովի— *ՀԿԿ Երևանի Լենինյան շրջկոմի առաջին քարտուղար*



կոնկրետ միջոցառումներ գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում տեղ գտած թերությունները վերացնելու համար, բարձրացնել կուսկազմակերպությունների մարտունակությունը, որպեսզի արագացման ստրատեգիան հիրավի դառնա մեր աշխատանքի գլխավոր բովանդակությունը:

Եվ, բնականաբար, շրջանային կուսկազմակերպության գործունեության մեջ սկսել են առավել մեծ տեղ գրավել արտադրության ինտենսիֆիկացման հարցերի ուսումնասիրությունն ու քննարկումը: ՍՄԿԿ XXVII համագումարից հետո քանիցս կուսշրջկոմի բյուրոյում և պլենումում անդրադարձել ենք արագացման ստրատեգիայից բխող մեր խնդիրներին և նշել դրանց լուծման կոնկրետ ուղիներն ու միջոցները: Անցած տարվա փետրվարին, օրինակ, կուսշրջկոմի հերթական պլենումում գործարար մթնոլորտում քննարկվեց գիտատեխնիկական առաջընթացի արագացման նպատակով տարվող աշխատանքի վիճակը: Այդ ասպարեզում շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած գործունեությունը արժեքավորելու և ուսանելի փորձը ընդհանրացնելու հետ միասին, պլենումը բացահայտեց նաև լուրջ թերություններ: Կուսկազմակերպությունների ու տնտեսական ղեկավարության ուշադրությունը հրավիրվեց արտադրության և գիտության կապերի ամրապնդման, ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցման ու վերազինման, միջազգային շուկայում մրցողունակ, արդի պահանջները բավարարող արտադրատեսակների արտադրության յուրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման մյուս խնդիրների անվերապահ լուծման վրա:

Հատկանշական է, որ արդյունաբերական շատ ձեռնարկությունների կուսկազմակերպություններ արագացման ու վերակառուցման կուրսից բխող խնդիրների լուծումը, հատկապես գիտատեխնիկական առաջընթացի արագացումը համարում են իրենց կենսական, առաջնահերթ գործը, հիմնական անելիքը և դրսևորում են մեծ ակտիվություն ու շահագրգռություն:

Շրջանի կուսկազմակերպությունների գործունեության մեջ ներկայումս հատկանշականը ձեռնարկությունների ղեկավարների, բոլոր կադրերի կողմնորոշումն է տնտեսական աճի ինտենսիվ գործոնների դերի մեծացման վրա: Եվ, եթե հաշվի առնենք, որ արտադրատնտեսական հաջողությունները ձեռք են բերվում տնտեսավարման մեխանիզմի կատարելագործման, արտադրության կառավարման նոր ու արդյունավետ ուղիների որոնման պայմաններում, ապա այդ ամենը վերակառուցման շրջանի քաղաքական ու քաղաքացիական հասունության լուրջ քննություն պետք է դիտել նաև «Անդրկովկասկաբել», «Հայկենցաղքիմ», «Պոլիվինիլացետատ» արտադրամիավորումների, շրջանի արդյունաբերական այլ ձեռնարկությունների կոլեկտիվների համար: Այս տեսակետից հատկանշական է «Հայկենցաղքիմ» արտադրամիավորման կուսկազմակերպության ծավալած գործունեությունը: «Հայկենցաղքիմ»-ի օրինակը պերճախոս վկայությունն է այն իրողության, որ մենք, իրոք, ունենք սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ռեալ հնարավորություններ: Աճի տեմպերի արագացումը միանգամայն իրագործելի է, եթե կուսակցական և տնտեսական ղեկավարների, բոլոր կադրերի աշխատանքի հիմքում դրվի արտադրության ինտենսիվացման, կառավարման ու պլանավորման վերակառուցման խնդիրը, ամենուրեք բարձրացվի կազմակերպվածությունը, ամրապնդվի կարգապահությունը, արմատապես բարելավվեն աշխատանքի ձևերն ու մեթոդները:

Սակայն մեզ խիստ անհանգստացնում է այն հանգամանքը, որ այսօր էլ մեր շատ ձեռնարկություններում գործում են բարոյապես և ֆիզիկապես մաշված մեքենասարքավորումներ: Մինչդեռ ֆոնդահատույցի բարձրացման նպատակով հարկավոր է շտապույթ ազատվել դրանցից, արտադրությունը հագեցնել բարձրարտադրողական մեքենասարքավորումներով, ներդնել առաջավոր տեխնոլոգիաներ: Այլ խոսքով, ամեն ինչ և ամենուրեք նորացնել: Դա, անտարակույս, հնարավորություն կընձեռի օգտագործել այնպիսի հզոր ռեզերվ, ինչպիսին անցումն է երկհերթ և եռահերթ աշխատանքի: Որքան զարմանալի է, նույնիսկ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման նման խոշոր ձեռնարկությունում մեքենասարքավորումների 43,8 տոկոսը շահագործվում է 20 տարուց ավելի: Այստեղ, ինչպես նաև Ջերմինկու անվան հաստոցաշինական, ավտոագրեգատների և այլ ձեռնարկություններում անարդյունավետ են օգտագործվում ծրագրային կառավարման սարքավորումները, որոնց արժեքը կազմում է 2,6 միլիոն ռուբլի: Դրանք ժամանակին չեն տեղադրվում, պարապուրդ են տալիս:

Գաղտնիք չէ, որ սոցիալ-տնտեսական զարգացման արագացման նպատակով

տարվող աշխատանքում կարևորը դրա արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումն է: Դա կուսակցության այսօրվա պահանջն է: Այդ հարցի շուրջ կուսշրջկոմում շատ ենք խորհել: Եվ ծնունդ է առել կոլեկտիվ մտքի արգասիքը: Խոսքը շրջկոմին առընթեր սոցիալ-տնտեսական զարգացման և գիտատեխնիկական խորհրդի ստեղծման մասին է:

Հաշվի առնելով արտադրության հետ գիտության մերձեցման անհրաժեշտությունը՝ շրջկոմում նպատակահարմար գտանք, ելակետ ունենալ «Ինտենսիվացման ծրագիր—90» լենինգրադյան փորձը, մշակել գիտատեխնիկական առաջընթացի արագացման սեփական շրջանային ծրագիրը: Սակայն ոչ թե կրկնել լենինգրադյան փորձը, այլ հաշվի առնել շրջանի արդյունաբերության առանձնահատկությունները: Մեր ծրագրի նպատակն է պլանավորված միջոցառումներն իրականացնել անմիջականորեն կուսակցական հսկողության ներքո, վերացնել գերատեսչական պատնեշները, օգտագործել ոչ միայն արդյունաբերական ձեռնարկությունների, շրջանի գիտահետազոտական հիմնարկությունների, այլև մինիստրությունների ու գերատեսչությունների, հատկապես Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի գիտական պոտենցիալը:

Խորհրդի գործունեությունը կոորդինացվում է անմիջականորեն գիտատեխնիկական առաջընթացի արագացման ծրագրերի, սոցիալական զարգացման բյուրոների և շրջկոմի գաղափարական հանձնաժողովի միջոցով: Նորի պրակտիկ իրականացմամբ զբաղվում են խորհրդի ճյուղային սեկցիաները և ենթասեկցիաները: Գիտատեխնիկական աշխատանքի նկատմամբ հսկողությունը սահմանում է կուսշրջկոմի կոորդինացիոն կենտրոնը, որի կազմի մեջ մտնում են ձեռնարկությունների ղեկավարները, կուսկազմակերպությունների քարտուղարները, գիտնականներ և բարձր որակավորում ունեցող մասնագետներ: Խորհրդի աջակցությամբ և ստեղծագործական համագործակցությամբ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները մշակել են և գործողության մեջ դրել տասներկուերորդ հնգամյակի գիտատեխնիկական աշխատանքների կոմպլեքսային ծրագրեր: Օրինակ, «Գիտատեխնիկական առաջընթաց—90» ծրագրին համապատասխան արտադրության ինտենսիվացումն իրագործվում է ավտոմատացման և մեքենայացման, սարքավորումների առաջավոր տեսակների ներդրման ուղիով, ապահովվում է անցումը այնպիսի առաջավոր տեխնոլոգիական գործընթացների, ինչպիսիք են փոշեմետալուրգիան, պլազմային, էլեկտրաֆիզիկական, էլեկտրամեխանիկական և լազերային մշակման ձևերը: Այսպես, շրջանի ձեռնարկություններում անցած տարի անցկացվել են 10 ավտոմատացված հոսքագծեր, տեղադրվել է վերամշակող կենտրոնով ճշգրիտ կառավարման 25 հաստոց, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման են ենթարկվել տասնյակ արտադրություններ, արտադրամասեր ու տեղամասեր: Արտադրական նոր հզորություններ են գործարկվել «Պոլիվինիլացետատ», «Մասիս» արտադրամիավորումներում, քիմռեակտիվների գործարանում:

Միջճյուղային և վարչատնտեսական համագործակցության հիման վրա մշակվել են «Առաջընթաց—90», «Քիմիացում—90», «Գիտություն-բուհ-արտադրություն» կոմպլեքսային ծրագրեր, որոնք հնարավորություն են ընձեռում գերատեսչական արգելքների հաղթահարմամբ ապահովել տնտեսական զգալի օգուտ: Տասներկուերորդ հնգամյակի միայն առաջին տարում գիտահետազոտական կազմակերպությունները շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում իրականացրել են 20-ից ավելի միջոցառում: Դրանց շնորհիվ հնարավոր է դարձել ստանալ հինգ միլիոն ռուբլու տնտեսական օգուտ:

Գիտական ստորաբաժանումների առջև խնդիր է դրված կրճատել մշակումների ժամկետները և արագացնել դրանց ներդրումը արտադրության մեջ, բարձրացնել թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակը և որակը: Այդ առնչությամբ էլ գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերը հաճախակի են քննարկման առարկա դառնում շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների և գիտահետազոտական հիմնարկությունների կուսակցական կոմիտեների ու բյուրոների համատեղ ընդլայնված նիստերում: Դա նկատելի դրական ազդեցություն է թողնում գիտատեխնիկական համագործակցության արդյունավետության, գիտության և արտադրության ինտեգրացման վրա, ստեղծում նորի իրականացման նկատմամբ ստեղծագործական մոտեցման պայմաններ: Համատեղ նիստերի անցկացումը նպաստում է առաջացող պրոբլեմների լուծմանը, ընդհանուր խնդիրների կատարման համար կոլեկտիվների համախմբմանը: Այս առնչությամբ ուսանելի փորձ է կուտակվել «Հայ-



հաստոց» գիտաարտադրամիավորումում (ԳԱՄ): Այսպես, այս միավորման և Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի կուսկոմիտեների համատեղ նիստերից մեկը, որտեղ ներկա էին առաջատար մասնագետները, նվիրված էր հաստոցաշինական ձեռնարկությունների վերաբերյալ ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոյի որոշման քննարկմանը: Ձեռնարկությունների մասնագետները ծանոթացան միմյանց գործերի վիճակին և որոշեցին համագործակցել թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացման հարցերում: Դա արտացոլվեց համատեղ ընդունված միջոցառումների պլանի մեջ:

Կուսակցությունը բարդ ու պատասխանատու խնդիր է առաջադրել. թողարկել ոչ միայն շատ, այլև բարձրորակ արտադրանք, որը մրցակցի համաշխարհային լավագույն նմուշների հետ: Արտադրանքի բարձր որակը կազմակերպական, դաստիարակչական, տնտեսական գործունեության հավաքական ցուցանիշ է: Լուծել որակի խնդիրը, նշանակում է դուրս գալ ինտենսիվացման հուսալի ուղի, հոգ տանել սովետական մակնիշի պատվի բարձրացման մասին: Թողարկվող արտադրանքի որակի արմատական բարելավում ապահովելու համար շրջանի ձեռնարկություններում մշակվել և գործի են դրվել կոմպլեքսային ծրագրեր: Անցած տարվա հունվարից վեց կոլեկտիվներ անցել են արտադրանքի պետական ընդունման: Արտադրանքի արտագերատեսչական ընդունման պայմաններում որոշակի հաջողությունների են հասել «Նաիրիտ» գիտաարտադրական, «Պոլիվինիլացետատ», «Անդրկովկասկաբել», «Հայէլեկտրաապարատ» արտադրական միավորումների կոլեկտիվները: «Հայէլեկտրաապարատ» արտադրամիավորումը մասնագիտացված է վերելակային սարքավորումների և ցածրավոլտ կոմպլեքսային սարքերի արտադրությամբ: Արտադրանքը, որի քանակն անցնում է 600 անունից և տիպից, առաքվում է բոլոր միութենական հանրապետություններին և 37 արտասահմանյան երկրներ: Այստեղից էլ՝ միավորման ղեկավարության և կուսկոմիտեի (քարտուղար՝ Հ. Սուքիասյան) պատասխանատվությունը արտադրանքի բարձր որակի ապահովման գործում: Բավական է ասել, որ որակի կապակցությամբ անցած մեկուկես տարում ընդամենը մեկ բողոքարկ է ստացվել: Միայն տասնմեկերորդ հնգամյակում թողարկվող արտադրանքի 40 տոկոսը նորացվել է, բարձրացել է դրա տեխնիկական մակարդակը: Լայնորեն ներդրվել են տեխնոլոգիական առաջավոր եղանակներ, բարձրարտադրողական մեքենասարքավորումներ:

Երիտասարդ, եռանդուն և բարձրորակ կադրերի շնորհիվ միավորումը երկար տարիներ համարվում է բոլոր նորի ու առաջավորի արմատավորման սկզբնավորող: Հանրապետությունում առաջինն այստեղ ներդրվել են արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգը, աշխատանքի կազմակերպման և վերջնարդյունքներով վարձատրման բրիգադային մեթոդը, պաշտպանության է արժանացել տասներկուերորդ հնգամյակում «Որակ» ծրագիրը:

Սակայն, ցավոք, արտադրանքի որակի բարելավման գործում շրջանի շատ ձեռնարկություններում լուրջ թերություններ կան: Սկզբնական կուսկազմակերպություններն այդ գործում, ընդհանուր առմամբ, զգալի անելիքներ ունեն: Առանձին ձեռնարկություններում թույլ են, իսկ որոշ տեղերում ընդհանրապես բացակայում են կուսակցական խստապահանջությունն ու վերահսկողությունը: Արտադրանքի որակի հարցը հատկապես մտահոգող է «Հայէլեկտրամեքենա», «Հայքիմմեքենա» արտադրամիավորումներում, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում, դպրոցական կահույքի ֆաբրիկայում և այլուր: Տեխնիկական անբավարար մակարդակի և որակի պատճառով շրջանում դեռևս ցածր է արտահանվող արտադրանքի ծավալը, այն չի գերազանցում 2 տոկոսը: Որակի նկատմամբ վերահսկողությունը թույլ է իրականացվում նաև ռետինատեխնիկական իրերի գործարանում: Այստեղ դեռևս փորձում են արդարացում գտնել «օբյեկտիվ» պատճառաբանությունների մեջ, այլ ոչ թե բացթողումների արմատը որոնել իրենց ձեռնարկությունում, կոնկրետ աշխատատեղերում: Կամ, ասենք, ի՞նչ օբյեկտիվ պատճառաբանության մասին կարող է խոսք լինել, երբ Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի թողարկած հաստոցների առանձին դետալներ չունեն անհրաժեշտ ճշգրտություն:

Արտադրանքի պետընդունումը յուրահատուկ քննություն էր շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների համար: Ըստ էության, նրանցից շատերը պատրաստ չէին դրան: Այդ կապակցությամբ էլ լուրջ դժվարություններ ծագեցին հատկապես պլանների կատարման գործում: Անցած տարի, օրինակ, ապրանքային արտադրանքի պլանը շրջանը թերակատարեց 1,9 տոկոսով կամ ճեղքվածքը կազմեց 28 միլիոն

ռուբլի: Մինչև օրս չեն հաղթահարվել պայմանագրային առաքումների ձախողումնե-
րը: Այդպիսի պարտավորություն ունեցող ձեռնարկություններից 14-ը անցած տարի
պատվիրատուներին պակաս էին ուղարկել 56,4 մլն ռուբլու արտադրանք:

Արտադրական և պայմանագրային առաքումների պլանների կատարման առըն-
չությամբ անմխիթար վիճակում են հատկապես «Հայէլեկտրամեքենա», «Հայքիմ-
մեքենա» արտադրամիավորումները, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ավտո_
դողերի, փորձարարական-մեխանիկական, «Պլաստիկ», ռետինատեխնիկական գոր-
ծարանները, կիսահաղորդիչային տեխնիկայի հատուկ կոնստրուկտորական-տեխ-
նոլոգիական բյուրոն: Նրանք ընդհանուր առմամբ ժողովրդական տնտեսությանը
պարտք են մնացել 38,5 մլն ռուբլու արտադրանք:

Մտահոգող վիճակ է ստեղծվել աշխատանքի արտադրողականության բարձրաց-
ման գործում: Արտադրության ինտենսիվացման և արդյունավետության բարձրացման
նկատմամբ կուսկազմակերպությունների թույլ հսկողության հետևանքով 12 ձեռ-
նարկություններ չեն կատարել այդ ցուցանիշի պլանները, իսկ 5-ը նվազեցրել են
աճի տեմպերը: Նրանց թվում են մասնավորապես ավտոդողերի, փորձարարական-
մեխանիկական գործարանները, «Մասիս» և «Պլաստիկ» արտադրամիավորումները:

Լուրջ թերություններ կան օգուտների պլանների կատարման գործում: Միայն
ութ ամսում շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները զրկվել են 3,2 մլն
ռուբլու օգուտից: Այդ ցուցանիշը չեն ապահովել 17 ձեռնարկություններ, իսկ 13-ը
նախկինում ունեցած աճի տեմպերի համեմատությամբ զիջել են դիրքերը: Այդ առըն_
չությամբ գործերն անմխիթար են հատկապես Ձերժինսկու անվան հաստոցաշինա-
կան գործարանում, «Հայճենապակի», «Հայէլեկտրամեքենա», Ծահումյանի անվան
կաշվի արտադրամիավորումներում, «Հայէներգոշինինդուստրիա» կազմակերպությու-
նում:

Այդ բոլոր թերությունները և թերացումները հետևանք են այն բանի, որ շրջանի
մի շարք ձեռնարկությունների տնտեսական ղեկավարների և կուսկազմակերպու-
թյունների գործունեության ձևերն ու մեթոդները, աշխատանքի ոճը լիովին չեն հա-
մապատասխանում այսօրվա պահանջներին: Նրանց մոտ վերակառուցումը տեղի է
ունենում խուքով, իսկ շոշափելի դրական տեղաշարժեր դեռևս չեն նկատվում:
Եվ առաջին հերթին դա բացատրվում է հանձնարարված գործի համար կադրերի
ցածր պատասխանատվությամբ. նրանց նկատմամբ թույլ պահանջկոտությամբ: Այս
խնդիրները մենք հանգամանորեն քննարկել ենք շրջկոմի բյուրոյի նիստում և կոնկ-
րետ հանձնարարություններ տվել կուսկազմակերպություններին ու տնտեսական ղե-
կավարներին:

Առաջիկա տարիներին, անտարակույս, արտադրանքի պետընդունումը կարմա-
տավորվի արդյունաբերական մյուս ձեռնարկություններում: Հետևաբար, կուսկազ-
մակերպությունները պարտավոր են նախապատրաստական աշխատանքներ ծավա-
լել ամենայն պատասխանատվությամբ, գործին մոտենալ կուսակցության արդի պա-
հանջների տեսանկյունից:

Մարդկանց նյութական արտադրության ոլորտ ներգրավելու, մարդկային գոր-
ծոնն ակտիվացնելու գլխավոր լծակներից մեկը գիտատեխնիկական առաջընթացն է,
արտադրական ապարատի նորացումը՝ նոր տեխնիկայի հիման վրա: Այդ նպատակի
իրագործումը պահանջում է կտրուկ շրջադարձ դեպի ձեռնարկությունների տեխնի-
կական վերազինում: Շրջանում իրացվող կապիտալ ներդրումների 50 տոկոսը նպա-
տակաուղղված է տեխնիկական վերազինմանն ու գործող կարողությունների վերա-
կառուցմանը:

Սակայն սկզբնական կուսկազմակերպությունները դեռևս բավարար ուշադրու-
թյուն չեն հատկացնում սարքավորումների նոր սերնդի արտադրության, արտադրա-
կան ապարատի նորացման խնդիրներին: Բարոյապես մաշված, հին տեխնոլոգիայի
օգտագործումը, տեխնիկական վերակառուցման դանդաղ տեմպերը բացասաբար են
անդրադառնում տնտեսական զարգացման տեմպերի, շրջակա միջավայրի մաքրու-
թյան պահպանման վրա:

Այսօր Երևան քաղաքի մթնոլորտը աղտոտող վնասակար արդյունաբերական ար-
տանետումների 70 տոկոսը փաստորեն բաժին է ընկնում Լենինյան շրջանի ձեռնար-
կություններին: Օդային ավազանի հիմնական աղտոտողները համարվում են «Նաի-
րիտ» գիտաարտադրական, «Պոլիվինիլացետատ» արտադրական միավորումները,
ջերմաէլեկտրակենտրոնը, ավտոդողերի գործարանը և այլն: Սակայն երկար ժա-



մանակ տնտեսական ղեկավարները պատասխանատվության չեն կանչվել շրջակա
միջավայրի պահպանության վերաբերյալ օրենսդրության խախտումների համար:
Այդ պատճառով էլ ստեղծվել է անհոգության և ինքնահանգստացման իրադրություն:

Բնականաբար, գործերի նման վիճակը չէր կարող չանհանգստացնել կուսշրջ-
կոմին: 1986 թ. վերջերին մենք վերլուծեցինք շրջանի ձեռնարկությունների բնապահ-
պանական աշխատանքի ընթացքը, մշակեցինք համապատասխան պլան և այն
քննարկեցինք ու հաստատեցինք շրջկոմի բյուրոյում: Այդ կարևոր հարցի լուծման
գործում մեզ մեծ օգնություն է ցույց տալիս շրջկոմին առընթեր գործող տնտեսա-
կան ու սոցիալական զարգացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման
խորհուրդը, որի նախաձեռնությամբ էլ Հայկական ՍՍՀ շրջակա միջավայրի պահ-
պանության պետկոմի հետ համատեղ մշակվեց «Շրջակա միջավայրը հնգամյակում»
ամբողջական կոմպլեքսային ծրագիրը: Շրջանի ձեռնարկությունների կողմից այդ
ծրագրի կատարումը կնպաստի ստեղծված վիճակի էական բարելավմանը: Ծրագրի
կատարման ընթացքը քննարկել ենք շրջակա միջավայրի պահպանությանը նվիրված
գիտագործնական կոնֆերանսում:

Շրջանի կուսակցական կազմակերպությունները արագացման խնդիրների լուծ-
ման համար պայքարում հենվում են տնտեսական աճի այնպիսի հուսալի ռեզերվի
վրա, ինչպիսին է աշխատանքային կարգապահությունը: Նրանք գիտեն, որ վերա-
կառուցման բոլոր փուլերում կարգապահությունն ու կարգուկանոնը մեզ անհրա-
ժեշտ են, որպեսզի ինչպես հարկն է ծավալվի տեխնիկական ստեղծագործությունը,
մտահղացումների եռանդը վերափոխվի կոնկրետ գործողությունների:

Այսօր բարձր պահանջկոտություն պետք է ցուցաբերվի նաև պայմանագրային
պարտավորությունների կատարման նկատմամբ: Այդ գործում անհրաժեշտ պա-
հանջկոտություն չեն ցուցաբերում ռետինատեխնիկական իրերի, ավտոդողերի, քիմ-
ռեակտիվների և այլ արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուսկազ-
մակերպություններ:

Առանձնակի պետք է խոսել, թերևս, ռետինատեխնիկական իրերի գործարանի
կուսկազմակերպության մասին: Դեռևս 1986 թ. նոյեմբերին շրջկոմի բյուրոյի նիս-
տում քննարկեցինք այս ձեռնարկությունում կուսակցական ու պետական կարգա-
պահության վիճակը: Սակայն, ցավոք, դրանից հետո էլ էական դրական տեղաշար-
ժեր չկատարվեցին այդ ասպարեզում: Գործարանի ղեկավարության աշխատանքը
չի համապատասխանում կուսակցության արդի պահանջներին: 1985 թվականից
սկսած մինչև անցած տարվա մայիսը չեն կատարվել պլանային առաջադրանքները:
Անցած մեկուկես տարում ստացվել է 415 վնասապահանջ՝ 488,2 հազար ռուբլի գու-
մարով: Ընդ որում խոտանի համար մեղավորները նյութական պատասխանատվու-
թյուն չեն կրում:

Անցած տարվա հուլիսի սկզբներին հարկ եղավ անդրադառնալ շրջկոմի բյուրոյի
նախկին որոշման կատարման ընթացքին: Պարզվեց, որ ձեռնարկությունում անհրա-
ժեշտ ուշադրություն չի նվիրվում արտադրության արդյունավետության բարձրացման,
գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերին:

Ադմինիստրացիայի, կուսբյուրոյի և արհկոմի ոչ բավարար պահանջկոտությա.
հետևանքով թույլ է աշխատանքային կարգապահությունը: Այն խախտողների նկատ-
մամբ ցուցաբերվում է լիբերալ մոտեցում: Անբավարար է կադրերի ընտրության,
տեղաբաշխման և դաստիարակության աշխատանքը: Բարձր է գլխավոր մասնագետ-
ների փոփոխությունը: Վատ են իրականացվում սոցիալական զարգացման խնդիր-
ները, չկան կուլտուր-կենցաղային նորմալ պայմաններ:

Գործարանում կատարված ուսումնասիրությունն ու շրջկոմում տեղի ունեցած
քննարկումը ցույց տվեցին, որ ռետինատեխնիկական իրերի գործարանի ղեկավար-
ները, ինչպես ասվեց, ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում, խոսքով վերա-
կառուցման կողմ են, իսկ գործնականում մատը մատին չեն խփում արտադրությու-
նում ու սոցիալական զարգացման ասպարեզում խոր վերափոխումներ ապահովելու
համար:

Այս ամենից հետո շրջկոմի բյուրոն աննպատակահարմար գտավ գործարանի
դիրեկտոր Բ. Գալուստյանի հետագա աշխատանքը այդ պաշտոնում և նրան հայ-
տարարեց խիստ նկատողություն: Կուսբյուրոյի ուշադրությունը հրավիրվեց վերա-
կառուցման և արագացման կուրսից բխող խնդիրների լուծման վրա և նրան հանձ-
նարարվեց մշակել գործերի վիճակը արմատապես բարելավելու միջոցառումներ:

Այժմ մեր առջև ծառացած են առավել բարդ ու պատասխանատու խնդիրներ,

որոնց լուծումը մեծապես կնպաստի գիտատեխնիկական առաջընթացի արագացման ծրագրի իրագործմանը: Խոսքը վերաբերում է նոր պայմաններում ձեռնարկությունների գործունեության կազմակերպմանը: Տնտեսական մեխանիզմի վերակառուցման վերաբերյալ ՍՄԿԿ XXVII համագումարի, Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումի, վերջին շրջանում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշումները ստեղծել են օբյեկտիվ նախապայմաններ ձեռնարկությունների և միավորումների կողմից տնտեսավարման տնտեսագիտական մեթոդների, լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելու համար: Իսկ դա հնարավորություն է ընձեռում գործնականորեն կենսագործել պետական ձեռնարկության (միավորման) մասին ՍՍՀՄ օրենքը, որը կոչված է արմատապես փոխել տնտեսավարման պայմաններն ու մեթոդները էկոնոմիկայի հիմնական օղակում, օրենսդրորեն ամրապնդել ձեռնարկության գործունեության պլանային սկզբունքի ու լիակատար տնտհաշվարկի, ինքնուրույնության ու պատասխանատվության զուգակցումը, իրականացնել ինքնակառավարման նոր ձևերը:

Այդ մեծ և բարդ աշխատանքի սկիզբը դրված է: Անցած տարի մեր շրջանում տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատում էին թեթև արդյունաբերության, ավտոարդյունաբերության, նավթարդյունաբերության, քիմիական մեքենաշինության մինիստրությունների ավելի քան 10 ձեռնարկություններ: Դրանց արտադրանքի տեսակարար կշիռը կազմում է շրջանի արտադրության ընդհանուր ծավալի 30 տոկոսը: Առաջավոր ձեռնարկությունների փորձը վկայում է, որ ճիշտ է ընտրած ուղղությունը, որն ապահովում է խոր շահագրգռությունը գործունեության վերջնական արդյունքների բարձրացման, տնտեսության շահութաբեր վարման և, որ շատ կարևոր է, գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար: Միայն տնտհաշվարկի հիման վրա և նրա պայմաններում է ձևավորվում սրտացավ վերաբերմունքը աշխատանքի և նրա արդյունքների նկատմամբ, ստեղծվում աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնության և ինքնուրույնության ռեալ հող, ամրապնդվում նրանց պատասխանատվությունն ու կարգապահությունը: Ընթացիկ տարվա սկզբից տնտեսավարման նոր մեթոդներին կանցնեն մեր շրջանի ևս 15 ձեռնարկություններ ու միավորումներ: Տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատող ձեռնարկությունների թողարկած արտադրանքի ծավալը կհասնի շրջանի ապրանքային արտադրանքի 75 տոկոսին:

Տնտհաշվարկի զարգացումը և հետագա խորացումը բազմակողմանի և խիստ բարդ պրոբլեմ է, որ պահանջում է հանգամանորեն ուսումնասիրել, ընդհանրացնել և օգտագործել կուտակված գործնական փորձը: Դրա համար հարկավոր է, որ ըստ ամենայնի նախապատրաստվեն ոչ միայն ղեկավարներն ու մասնագետները, այլև անխտիր բոլոր աշխատողները:

Շրջկոմի բյուրոն հաստատել է տնտեսական-կազմակերպական միջոցառումների պլան՝ կապված շրջանի միավորումները, ձեռնարկությունները և կազմակերպությունները 1988—1989 թթ. լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման փոխադրելու հետ: Ներկայումս կազմակերպական նախապատրաստական համակողմանի աշխատանք է կատարվում նոր պայմաններում նրանց գործունեության համար: Աշխատանքային կոլեկտիվներում լայնորեն քննարկվում են լիակատար տնտհաշվարկին, ինքնաֆինանսավորմանն ու ինքնածախսածածկմանն առնչվող հարցերը, կազմակերպվում է կադրերի տնտեսագիտական կրթությունը՝ տնտեսավարման նոր մեթոդների խոր ուսումնասիրման հիման վրա: Կուսշրջկոմում պարբերաբար անցկացվում են կուսկազմակերպությունների քարտուղարների և տնտեսական ղեկավարների՝ տնտեսավարման նոր մեթոդներին անցնելու հարցերին նվիրված խորհրդակցություններ, ուսումնասիրվում և ընդհանրացվում է արդեն նոր պայմաններում աշխատող ձեռնարկությունների փորձը: Քննարկումներին ակտիվորեն մասնակցում են Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտի մասնագետները և գիտնականները:

Անտարակույս, լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելու հարցերով պետք է զբաղվեն բոլոր մասնագետները, սակայն միանգամայն ակնհայտ է, որ առաջին շարքում քայլելու են տնտեսագիտական պրոֆիլի մասնագետները: Հենց նրանցով է մեծապես պայմանավորված շարժման ռիթմը:

Տեղերում գործերի վիճակի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ձեռնարկությունների շատ ղեկավարներ, այդ թվում դիրեկտորներ, գլխավոր ինժեներներ, տնտեսագիտական ծառայության աշխատողներ, միանգամայն մակերեսային պատկերացում ունեն այն մասին, թե ձեռնարկությունը ինչպես պետք է աշխատի լրիվ



տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում: Այդպիսի վիճակի պատճառները միանշանակ չեն: Մի դեպքում այդտեղ ակնհայտ են համապատասխան մինիստրության թերացումները, մյուս դեպքում՝ ձեռնարկությունների ղեկավարների անհրազեկությունը: Չի կարելի հաշվի չառնել և այն հանգամանքը, որ ժողովրդական տնտեսության էքստենսիվ զարգացման տարիներին մեզ մոտ ձևավորվել է և համապատասխան պլանատնտեսագիտական աշխատողի տիպ: Այդպիսի տնտեսագետները շատ լավ են կողմնորոշվում իրենց ճյուղի առանձնահատկությունների մեջ, գիտեն բոլոր կանոններն ու հրահանգները, կարող են պրոֆեսիոնալ կերպով լրացնել բազմաթիվ հաշվետվություններ ու տեղեկանքներ: Եվ նրանց գործունեությունը գնահատվել է առաջին հերթին ցուցանիշների ձևակերպման այնպիսի իմացությամբ, որ, անկախ գործերի իրական վիճակից, աշխատանքի արդյունքները հաջողակ երևան:

Բոլորովին այլ են պահանջները մեր ժամանակներում: Այժմ ցանկացած աշխատող, իսկ տնտեսագետը առաջին հերթին, գնահատվում է հետազոտման ունակությամբ, վերլուծման խորությամբ, առաջարկվող լուծումների համարձակ, ոչ ստանդարտ տարբերակների և արտադրությունում դրանց ներդրման կարողությամբ: Իսկ դա, անկասկած, գիտատեխնիկական առաջընթացի արագացման կարևոր նախապայման է:

Այսօր, ինչպես երբեք, կարևոր է, որ կուսկազմակերպությունները, տնտեսական ղեկավարները ձեռնարկեն անհետաձգելի միջոցներ՝ նոր խնդիրների լուծման գործում կոմպլեքսայնորեն տնտեսագիտական պրոֆիլի մասնագետների օգտագործումը բարելավելու, որակավորումը բարձրացնելու համար:

Վերջերս «Հայքիմմեքենա» արտադրամիավորման տնտեսական ղեկավարների առաջարկությամբ կազմակերպվեց ձեռնարկությունների և արտադրամիավորումների տնտեսագիտական ծառայությունների գիտագործնական կոնֆերանս: Այն նվիրված էր ինքնաֆինանսավորման և լրիվ տնտհաշվարկի պայմաններում այդ արտադրամիավորման աշխատանքի փորձին և Լենինյան շրջանի ձեռնարկությունների ու միավորումների՝ տնտեսավարման նոր մեթոդներին անցնելու խնդիրներին: Կոնֆերանսի մասնակիցների առջև հանդես եկան միավորման տնտեսագիտական ծառայության ղեկավարները և նրանց հաղորդակից դարձրին տնտհաշվարկի պայմաններում աշխատելու փորձին, ուշադրությունը հրավիրեցին տնտեսավարման նոր պայմաններին նախապատրաստվելու ընթացքի հրատապ հարցերի վրա: Կարծում եմ, որ տեղի ունեցած անհրաժեշտ և օգտակար խոսակցությունը, տեղում «Հայքիմմեքենա» արտադրամիավորման՝ նոր պայմաններում աշխատելու փորձին ծանոթանալը գործնական օգնություն կլինեն տնտեսագիտական ծառայություններին՝ լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելու նախապատրաստական աշխատանքի ընթացքում, կնպաստեն գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրների լուծմանը:

Առաջիկա ամիսները մեզ համար վճռորոշ են: Տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման ներդրման ու արմատավորման հաջողությունը մեծապես պայմանավորված է տնտեսական ղեկավարների, տնտեսագետների, ինժեներատեխնիկական աշխատողների, կոլեկտիվի բոլոր անդամների բանիմացությամբ, եռանդով, առաջին իսկ օրերից գործադրած ջանքերով: Նրանց խնդիրն է արտադրական յուրաքանչյուր տեղամասում ապահովել բարձր շահութաբերություն, միջոցները ծախսել խելամտորեն, խնայողաբար, գործը կազմակերպել այնպես, որ ծախսած յուրաքանչյուր ռուբլին ժամանակին և ցանկալի հատույց տա, նպաստի գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրների հաջող լուծմանը: Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները ջանում են հաղթահարել նոր պայմաններում աշխատանքին խանգարող դժվարությունները, բարձրացնել մարդկանց պատասխանատվությունը՝ այդ կարևոր գործը սկզբից ևեթ ամուր հիմքերի վրա դնելու համար:

---

# ԳՆԱԳՈՅԱՑՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ ԱՐՄԱՏԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ

**Ռ. ՍՎԵՏԼՈՎԱ**

ՄԵՐ ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ինտենսիվ զարգացումը, էկոնոմիկայում տնտեսական կապերի բարդացումը պահանջում են տնտեսական մեխանիզմի անընդմեջ կատարելագործում և նրա գործունեության արդյունավետության բարձրացում։ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումը սահմանեց ժամանակակից փուլում կուսակցության տնտեսական քաղաքականության արմատական վերակառուցման խնդիրները և ուղղությունները։ Նրա նպատակն է երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տեմպերի արագացումը՝ գիտատեխնիկական առաջադիմության, հասարակական արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացման, նրա արդյունավետության բարձրացման հիման վրա։

Սոցիալիստական հասարակարգի տնտեսական մեխանիզմի գործունեության արգասավորությունը մեծապես կանխորոշվում է ապրանքադրամական հարաբերությունների և դրանց բնորոշ արժեքային կատեգորիաների ճիշտ օգտագործմամբ, որոնցից կարևոր նշանակություն ունի գինը։ Այդ առնչությամբ առաջանում է ժողովրդական տնտեսության կառավարման գործում գների տեղի և դերի, սոցիալիստական էկոնոմիկայի դինամիկ, հավասարակշռված և համամասնական զարգացման խնդրի իրականացման գործում պլանի ու գների հարաբերակցության գիտականորեն ըմբռնման հրամայական պահանջը, որը ենթադրում է գնագոյացման համակարգի կատարելագործում՝ սոցիալիստական շինարարության յուրաքանչյուր փուլի խնդիրներին համապատասխան։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1987 թ.) պլենումում ընդգծվեց, որ էկոնոմիկայի կառավարման վերակառուցման կարևորագույն բաղկացուցիչ մասը գնագոյացման արմատական ռեֆորմն է։ Առանց դրա անհնար է լրիվ անցումը դեպի նոր մեխանիզմ։ Ռեֆորմը պայմանավորված է նրանով, որ գների գոյություն ունեցող համակարգն առաջացել էր էկոնոմիկայի էքստենսիվ զարգացման պայմաններում, որը խարսխվում էր բնական ռեսուրսների անսպառության, անվճարության և էժանության թյուր մտայնության վրա։ Այսօրվա գները հիմնականում հաշվահաշվարկային ֆունկցիաներ են կատարում և չեն խթանում արտադրության արդյունավետության, ռեսուրսախնայողության բարձրացումը։ Արտադրանքի շատ տեսակների գները չեն համապատասխանում դրանց արտադրության և իրացման համար հասարակականորեն անհրաժեշտ ծախսերին, լիովին հաշվի չեն առնում սպառողական հատկանիշները, արտադրանքի որակը, նրա կիրառման արդյունավետությունը, չեն խթանում գիտատեխնիկական առաջադիմության արագացումը։ Թույլ են տրվել մեծածախ, գնման և մանրածախ գների, ծառայությունների տարիֆների մակարդակների անհամաչափություններ, և դա հանգեցրել է պետական դոտացիաների ծավալի վիթխարի աճի։ Հաշվի չէր առնվում համաշխարհային շուկայի կոնյունկտուրան։ Անհիմն կերպով կենտրոնացվել է գների և տարիֆների սահմանման գործը։ Բավարար չափով արգասավոր չէ վերահսկողությունը գների պետական կարգապահության պահպանման նկատմամբ, դրանք խարսխվում են ծախսումնային սկզբունքի վրա։

---

ՍՎԵՏԼՈՎԱ Ռեմա Քրիստափորի— Հայկական ՍՍՀ գների պետական կոմիտեի նախագահ



Գնագոյացման համակարգի՝ որպես մեկ միասնական ամբողջության, պլանաչափ վերակառուցման բովանդակությունն են կազմում քանակական մակարդակի փոփոխությունները և տարբեր իրերի ու ծառայությունների գների հարաբերակցությունների որակական բարելավումը, գների պլանային կարգավորման մեթոդաբանության հետագա կատարելագործումը, իսկ մի շարք դեպքերում՝ նաև նրա փոփոխումը, գնագոյացման բնագավառում տնտեսական մեթոդների դերի զգալի ուժեղացումը։ Առաջին անգամ ՍՍՀՄ-ում արմատապես վերակառուցվում է գների ամբողջ մեխանիզմը։ Այդ համակարգի վերանայումը շատ կարճ ժամկետներում անհրաժեշտ է այն նկատառումով, որպեսզի ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման տասներեքերորդ հնգամյակի պետական պլանը կազմվի նոր գների հիման վրա։

Նախատեսվում է արդյունաբերության մեջ նոր մեծածախ գները և տարիֆները, բեռնափոխադրումների և կապի ծառայությունների տարիֆները կիրառել 1990 թ. հունվարից, իսկ գյուղատնտեսական արտադրանքի գնման և շինարարության մեջ նախահաշվային գներն ու վարձաչափերը՝ 1991 թ. հունվարից։

Վառելիքաէներգետիկ և հանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը խթանելու, կոմպլեքսային արդյունահանումը խորացնելու, սակավաթափոն և անթափոն տեխնոլոգիաները զարգացնելու նպատակով դրանց արտադրության համար հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումները պետք է ներառնեն ոչ միայն արդյունահանմանն անմիջականորեն առնչվող, այլև պաշարների վերարտադրության համար կատարվող ծախսերը՝ ներառյալ երկրաբանական աշխատանքների կատարման, շրջակա միջավայրի պահպանության, հողերի վերամշակման և այլ աշխատանքների հետ կապված ծախսերը։ Նոր մեծածախ գներում լայնորեն կօգտագործվեն բնական ռեսուրսների համար գանձվող ռենտային վճարումները, հաշվի կառնվի նաև համաշխարհային գների կոնյունկտուրան, կբարելավվեն արդյունաբերության արդյունահանող և վերամշակող ճյուղերի արտադրանքի գների հարաբերակցությունները։ Նոր մեծածախ գները պետք է ապահովեն երկրորդային ռեսուրսների ըստ ամենայնի ներգրավումը շրջանառության մեջ և առավելագույն չափով օգտագործումը, առաջնային ու երկրորդային հումքի գների մակարդակներում նյութերի տնտեսման շոշափելի առավելությունների ստեղծումը։

Հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումներին գների մերձեցումը ենթադրում է նրանցում աշխատուժի՝ սոցիալական ապահովագրությանը և աշխատանքի պրոֆեսիոնալ պատրաստությանն առնչվող վերարտադրության ծախսերի ավելի լրիվ արտացոլում։ Այդ նպատակով նոր գները հիմնվում են արտադրական ֆոնդերի, աշխատանքային, բնական և այլ ռեսուրսների վճարովիության սկզբունքի վրա։

Սոցիալիզմի օրոք գինը արտադրանքի արտադրության և իրացման համար կատարվող հասարակական աշխատանքի ծախսումների տնտեսական նորմատիվ է։ Գնի արդյունավետ օգտագործումը, որպես սոցիալիստական էկոնոմիկայի տնտեսական մեխանիզմի գործուն միջոցի, ամենից առաջ պայմանավորված է նրա գլխավոր բովանդակության՝ ապրանքի ձևով մարմնացած հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքի չափման արտացոլման լրիվությամբ ու ճշտությամբ, տնտեսական մեխանիզմի բոլոր տարրերի կատարելագործմանն ուղղված միջոցառումների հետ նրա կապակցվածությամբ։ Գները կոչված են ներազդելու ժողովրդական տնտեսության համամասնությունների ձևավորման վրա՝ խթանելով տեխնիկական առաջադիմությունը կանխորոշող ճյուղերի առաջնային զարգացումը։ Տնտեսական մեխանիզմի այլ գործիքների հետ կապակցված, գները կոչված են խթանելու ռեսուրսների տրամադրումն ամենից առաջ ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունեցող կառուցվածքականխորոշիչ արտադրանքի թողարկումը, ինչպես նաև տնտեսական պայմաններ ստեղծելու երկրորդային նշանակությամբ արտադրանքի թողարկման ժամանակ դեֆիցիտային ռեսուրսների օգտագործումը կրճատելու համար։

Ժողովրդական տնտեսության զարգացման յուրաքանչյուր փուլի խնդիրներն ու պայմանները գներում արտացոլելու և տնտեսական նորմատիվների կայունության հասնելու համար, որը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանս-

սավորման համար ձեռնարկություններին ու միավորումներին պայմաններ տրամադրելու նախադրյալներից մեկն է, կիրականացվի անցում դեպի գների և տարիֆների պլանավորում՝ որպես հնգամյա պլանների բաղկացուցիչ մաս։ Գները կոչված են նաև անհրաժեշտ նախադրյալներ ապահովելու ժողովրդական տնտեսության մեջ բնաիրային և արժեքային համամասնությունների հաշվեկշռվածության, վերաբաշխման ավելորդ պրոցեսների և վերջին տարիներին վիթխարի չափերի՝ 73 միլիարդ ռուբլու հասած դոտացիաների կրճատման համար։

Գնագոյացման համակարգի կատարելագործման կարևոր խնդիրն է գներին հակածախսումնային բնույթ հաղորդելը, դրանց խթանիչ դերի ուժեղացումը գիտատեխնիկական առաջադիմության արագացման, արտադրանքի որակի բարելավման գործում։ Չնայած գործող մեթոդիկաների հաստատած սահմանափակմանը, մի շարք դեպքերում նկատվում է նոր տեխնիկայի գների առաջանցիկ աճ՝ նրա օգտակար արդյունավետության համեմատությամբ, որը թուլացնում է գների խթանիչ ներգործությունը գիտատեխնիկական առաջադիմության վրա։ Ահա թե ինչու անհրաժեշտ է առավել լրիվ հաշվի առնել սպառողական հատկանիշները, տեխնիկատնտեսական պարամետրերը, արտադրության արդյունավետությունը և նոր տեխնիկայի կիրառումը, նրա հաշվեկշռվածությունը հասարակական պահանջմունքի հետ։

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում առանձնահատուկ դեր է պատկանում մեքենաշինությանը։ Ուստի և ճյուղի արտադրանքի մեծածախ գները պետք է խթանեն նրա անվանացանկի նորացումը, լավագույն համաշխարհային նմուշներին համապատասխանող սկզբունքային նոր տեխնիկայի ստեղծումն ու յուրացումը, համանման և ֆունկցիոնալ առումով միասեռ արտադրանքի տնտեսապես հիմնավորված հարաբերակցությունների ապահովումը, թողարկվող արտադրանքի կոմպլեկտայնության ապահովմամբ արտադրողների տնտեսական շահագրգռության ուժեղացումը, գների իջեցումը նոր տեխնիկայի օգտակարության միավորի հաշվով։ Տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում գիտահետազոտական, փորձնակոնստրուկտորական և տեխնոլոգիական կազմակերպությունների աշխատանքի անցնելու համեմատ՝ նրանց գործունեության վերջնական արդյունքի համար կսահմանվեն պայմանագրային գներ։ Դրանք կհաստատվեն պատվիրատուի և կատարողի կողմից՝ ըստ գիտատեխնիկական արտադրանքի արդյունավետության, որակի և աշխատանքների կատարման ժամկետների։

Գների ներկա համակարգում լայն տարածում են գտել գործողության ժամանակավոր ռեժիմով գների տարբեր տեսակի և բաշխման առանձնակի կարգով խրախուսական հավելումները, որոնք ըստ էության չեն կատարում իրենց դերը։ Նոր համակարգում նախատեսվում է այդ հավելումների վերացում։ Կպահպանվեն միայն զեղչումները արտադրանքի ցածր որակի համար։ Իսկ արտադրության և արտադրանքի արդյունավետությունը հաշվի կառնվի նոր մեծածախ գների մակարդակներում։

Գնագոյացման հակածախսումնային սկզբունքի իրականացումն առանձնակի սրությամբ է առաջադրում այն հարցը, թե ո՞ր ծախսերը պետք է հասարակականորեն անհրաժեշտ համարվեն։ Գների գործող համակարգի պայմաններում դրանց համար հիմք էին համարվում բազային փաստական ծախսերը, գներն զգալի չափով փոխհատուցում էին ձեռնարկությունների անհատական ծախսերը, մի բան, որը հանգեցնում էր տնտեսավարման արդյունավետությունից կախում չունեցող շահույթի ստացմանը, իսկ դա, առանց արտադրանքի և արդյունավետության ռեալ աճի, գների բարձրացման հաշվին արժեքային ցուցանիշների մեծացման հնարավորություն ու շահագրգռվածություն էր հարուցում։

Մեծածախ գները վերանայելիս հաշվի են առնվում բազային փաստական ծախսերը՝ որպես գների սահմանման գլխավոր հիմք, տեխնիկայի հետամնացության, ինչպես նաև արտադրության կազմակերպման գործում եղած թերությունների, անտնտեսվարության վերացման հետ կապված ծախսերը։ Անթույլատրելի է գնագոյացման մեխանիզմի օգտագործումը գների չհիմնավորված բարձրացման և այն բանի համար, որպեսզի միավորումները, ձեռնարկություններն ու կազմակերպությունները ստանան այնպիսի եկամուտներ, որոնք,



կապված չեն տնտեսական գործունեության վերջնական արդյունքներում աշխատանքային կոլեկտիվների ներդրած ռեալ ավանդի հետ։ Նոր գները պետք է ձևակերպվեն տասներեքերորդ հնգամյակում, ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարներին համապատասխան՝ նկատի ունենալով արտադրության ծախսերի նվազեցումը, աշխատանքի արտադրողականության աճի արագացումը։ Այդպիսի մոտեցումը համապատասխանում է աշխատանքի հասարակականորեն անհրաժեշտ ծախսերի Մարքսի բնորոշմանը։

Գների գործող համակարգի թերություններից մեկը շահութաբերության մակարդակներում նրա հարուցած խառնափնթորությունն է՝ սկսած որոշ իրերի սաստիկ վնասաբերությունից մինչև այլ իրերի չպատճառաբանված բարձր շահութաբերությունը։ Շահութաբեր չեն ոչ միայն առանձին արտադրատեսակներ, այլև ամբողջ ճյուղեր ու ոլորտներ, ինչպես, օրինակ, ածխարդյունաբերությունը։ Անշահութաբեր արդյունաբերական ձեռնարկությունների թիվը կազմում է դրանց ընդհանուր քանակի գրեթե 13 տոկոսը, որը հակասում է «Պետական ձեռնարկության (միավորման) մասին» ՍՍՀՄ օրենքին, տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքներին։ Մեր հանրապետությունում 1986 թ. ժողովրդական տնտեսության ճյուղերից ստացված շահույթի գումարը կազմել է 1577 մլն ռուբլի, արդյունաբերության ճյուղերի շահութաբերության մակարդակը՝ 11,1 տոկոս։ Պլանային ոչ շահութաբեր ձեռնարկությունների թիվը սահմանված էր 60, մինչդեռ իրականում հասել է 78-ի։ Այդ ձեռնարկությունների վնասը պլանային 39.765 հազարի դիմաց հասել է 58 505 հազար ռուբլու։

Հանրապետությունում կենցաղային ծառայությունների շահութաբերության, ընդհանուր առմամբ, բարձր մակարդակը (1986 թ. 26,4 տոկոս) զգալիորեն կապված է բնակչության անհատական պատվերներով կոշիկի և տրիկոտաժե իրերի պատրաստմանն առնչվող ծառայությունների առաջանցիկ աճի հաշվին դրանց ձևավորման հետ։ Ծառայությունների այդ երկու տեսակից ճյուղն ստացել է ամբողջ շահույթի 66,3 տոկոսը։ Ծառայությունների բոլոր մյուս տեսակների շահութաբերությունը չհասավ միջին նորմատիվային մակարդակին (15 տոկոս) և կազմեց 12,5 տոկոս։

Կենցաղային ծառայությունների շահութաբերությանը բնորոշ է մակարդակների ոչ միօրինակությունը՝ սկսած 6 տոկոս վնասաբերությունից մինչև 130,8 տոկոս շահութաբերությունը։

Մակարդակների նման տարբերությունը պայմաններ է ստեղծում արտադրանքի թողարկման տարբեր շահավետության և այն բանի համար, որպեսզի ձեռնարկություններն արտադրեն «առավել ձեռնտու» ապրանքներ, հրաժարվեն ցածր շահութաբեր, թեև սպառողին անհրաժեշտ, արտադրանքից։ Դրա հետևանքով տեղի է ունենում արտադրանքի կառուցվածքի և արժեքային հարաբերակցությունների խախտում, արտադրողները զրկվում են արտադրատնտեսական գործունեության բարելավման, արտադրության արդյունավետության բարձրացման ռեզերվների գործադրման խթաններից։ Շահույթի, նորմատիվային բաշխման և ինքնաֆինանսավորման սկզբունքի կիրառման ժամանակ գները կոչված են հավասար պայմաններ ստեղծելու ձեռնարկությունների գործունեության համար։ Հարկ է վերացնել այլազանությունը արտադրանքի տարբեր տեսակների շահութաբերության նորմատիվների գործում, թույլատրել դրանց շերտավորում միայն ըստ արտադրանքի խմբերի, այլ ոչ թե ըստ առանձին տեսակների։

Խոշոր թերություններ կան նաև գների սահմանման գործող կարգի մեջ, որը չափազանց կենտրոնացված է և մեծածավալ։ Հենց այդ պատճառով էլ ձգձգվում են դրանց հաստատման ժամկետները։ Ուստի վերակառուցման հիմնական խնդիրներից մեկն է գնագոյացման լրիվ շրջադարձը դեպի սպառողը և արտադրանք պատրաստողը։ Ըստ «Պետական ձեռնարկության (միավորման) մասին» ՍՍՀՄ օրենքի, ժողովրդական տնտեսության մեջ կգործադրվեն հետևյալ գները. կենտրոնացված կարգով հաստատվող, պայմանագրային և պատրաստողների կողմից ինքնուրույնաբար սահմանվող գներ։ Ընդ որում արտադրության միջոցներով մեծածախ առևտրի, տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքների ներդրումը կհանգեցնի պայմանագրային և ինքնուրույնաբար սահմանվող գների կիրառման ոլորտի ընդլայնման։

Նոր տնտեսական մեխանիզմը ենթադրում է տնտեսական շահերի ավելի լրիվ հաշվառում, որին սերտորեն առնչված է սոցիալիստական շուկայի պրոբլեմը։ Տնտեսավարման նոր պայմաններում շուկայի գործոնի սահմաններն ընդլայնվում են։ Դա կապված է արտադրության միջոցների մեծածախ առևտրի անցնելու, կոոպերատիվների, անհատական աշխատանքային գործունեության զարգացման և այն բանի հետ, որ կոլեկտիվ ու պետական տնտեսություններին իրավունք է տրվել պլանային արտադրանքի մինչև 30 տոկոսը և պտուղ-բանջարեղենի ու կարտոֆիլի ամբողջ արտապլանային արտադրանքը կոլտնտեսային շուկայում ու սպառողական կոոպերացիայի կազմակերպությունների միջոցով իրացնել ըստ պայմանավորված գների։

Շուկայի զարգացումը, ձեռնարկությունների մրցակցությունը, արտադրության մեջ մենաշնորհության բոլոր ձևերի վերացումը, արտադրողի նկատմամբ սպառողի վերահսկողությունը գնագոյացման հակածախսումնային սկզբունքի իրականացման ուղղություններից են։

Գնագոյացման համակարգի արմատական վերակառուցման բաղկացուցիչ մասն է գյուղատնտեսական արտադրանքի գնման գների ռեֆորմը։ Դրանց գործող համակարգը, որը կողմնորոշված է դեպի ծախսումնային սկզբունքը, հանգեցնում է այդ գների մակարդակի հետևողական բարձրացման և բազմաթիվ հավելումների կիրառման, չի խթանում գյուղատնտեսական արտադրանքի ծավալի մեծացումը և նրա որակի բարձրացումը։ Այդ առնչությամբ նախատեսվում է գնման գների մակարդակը սահմանել՝ ելնելով արտադրանքի թողարկման համար հասարակականորեն անհրաժեշտ միջին ծախսումներից և մասնագիտացված ապրանքային արտադրության առավել նպաստավոր ռեգիոններում նրա հիմնական տեսակների արտադրության առավելագույն խթանումից, գների զոնալ շերտավորման հետագա կատարելագործման ապահովումից։ Համեմատաբար նպաստավոր պայմաններում գտնվող կոլեկտիվ և պետական տնտեսությունների համար կսահմանվեն ռենտային վճարումներ։ Դրանց հաշվին կստեղծվի ՍՍՀՄ պետագրոարդի հատուկ ֆոնդ, որը նախատեսվում է օգտագործել համեմատաբար ավելի վատ պայմաններում գործող տնտեսությունների նյութատեխնիկական բազայի ամրապնդման համար, և որը կոչված կլինի փոխարինել սակավ շահութաբեր ու վնասաբեր տնտեսությունների արտադրանքի գների՝ բյուջեի միջոցների հաշվին հավելումներ սահմանելու համակարգը։

Առանց գնման գների հավելումները հաշվի առնելու՝ 1986 թ. ամբողջ հանրապետությունում գյուղատնտեսության շահութաբերությունը կազմել է 0,6 տոկոս, բուսաբուծությանը՝ 20,7, դրան հակառակ՝ անասնապահությունն աշխատել է վնասով (10,6 տոկոս)։

Գյուղատնտեսական արտադրության շահութաբերությունը փաստորեն ձեռք է բերվում գնման գների հավելումների կիրառման հաշվին։ Չնայած հավելումների կիրառմանը՝ հանրապետությունում վնասով աշխատող տնտեսությունների թիվը բավական մեծ է։ 1986 թվականը վնասով փակեցին 118 տնտեսություններ։

Վերացվում է գյուղատնտեսությանը տրամադրվող տեխնիկայի, հանքային պարարտանյութերի և արդյունաբերական այլ արտադրանքի իրացման արտոնյալ կարգը, կիրականացվի անցում դեպի դրանց մեծածախ վաճառքը։ Հեռանկարային կարգով նախատեսվում է աստիճանական անցում դեպի ՍՍՀՄ պետագրոարդի համակարգի ձեռնարկությունների ու կազմակերպությունների փոխհարաբերություններում գյուղատնտեսական արտադրանքի պայմանագրային և հաշվարկային գների կիրառում։ Դրանք կսահմանվեն՝ ելնելով ագրոարդյունաբերական կոմպլեքսի վերջնական արտադրանքին համապատասխան գործող մեծածախ ու մանրածախ գներից և հաշվի առնելով գյուղատնտեսական արտադրությունը, մթերքների վերամշակմանն ու իրացմանը ձեռնարկությունների ներդրած ռեալ ավանդը, նրանց մասնակցության չափը։

Նկատի ունենալով մանրածախ գների սոցիալական բացառիկ նշանակությունը՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումը նշեց, որ դրանց փոփոխումը ոչ միայն չպետք է հանգեցնի աշխատավորների կենսամակարդակի վատացման, այլև, ընդհակառակը, կբարելավի բնակչության որոշ կարգերի կենսավիճակը, ավելի լրիվ կիրականացվի սոցիալական արդարությունը։ Մանրածախ գներ սահմանելիս պետք է ապահովվի բնակչության տարբեր սոցիալական ու տարիքային խմբերի նկատմամբ շերտավորված մոտեցումը՝ հաշվի առնելով նրանց եկամուտները և պահանջմունքները։ Անհրաժեշտ է վերացնել արդյունաբերական ապրանքների առանձին խմբերի գների մակարդակներում գոյություն ունեցող չհիմնավորված տարբերությունները։ Ընդլայնվում է պահանջարկը լրիվ չբավարարող ոչ պարենային ապրանքների, ինչպես նաև բարձր պահանջարկ ունեցող այլ ապրանքների պայմանագրային գների կիրառումը՝ ճիշտ զուգակցելով բնակչության պահանջմունքները և պետության շահերը։

Արդի փուլում գնման գների քաղաքականության հատկորոշիչ գիծն այն է, որ ապրանքներով շուկայի հագեցման, դեֆիցիտի վերացման, բավարար չափով ապրանքային ու ֆինանսական ռեսուրսների կուտակման համեմատ, մանրածախ գները կիջեցվեն՝ հաշվի առնելով շուկայի կոնյունկտուրան և բնակչության պահանջարկը։ Մանրածախ գների ու տարիֆների բոլոր, խոշոր փոփոխությունները, որոնք կշոշափեն բնակչության կենսամակարդակը՝ պետք է երկրում նախապես լայն քննարկման առարկա դառնան։

Իրականացվում է բնակչությանը մատուցվող ծառայությունների համար գնագոյացման կատարելագործմանն ուղղված միջոցառումների կոմպլեքսային մի համակարգ, ուժեղացվում է ծառայությունների համար սահմանված գների ու տարիֆների շերտավորումը՝ նայած դրանց որակին և սոցիալական նշանակությանը, նկատի ունենալով բնակչության բոլոր խավերի համար վճարովի ծառայությունների մասսայական տեսակների մատչելիությունը։

Բեռնափոխադրումների տարիֆների վերանայման հիմնական խնդիրներն են տրանսպորտային համակարգի բոլոր օղակների արդյունավետ օգտագործումը ժողովրդական տնտեսության մեջ, փոխադրումների ռացիոնալացումը և ծախսերի նվազեցումը, տրանսպորտի տեսակների միջև բեռների օպտիմալ բաշխումը, տարբեր տեսակի բեռնափոխադրումների շահավետությունը, որոշ տեսակների փոխադրումների վնասաբերության վերացումը։ Տրանսպորտային տարիֆները պետք է խթանեն նոր, բարձրարդյունավետ փոխադրամիջոցների և բեռնափոխադրման առաջադիմական եղանակների ներդրումը, բեռների հոսքի վերակողմնորոշումը՝ ըստ ժողովրդական տնտեսության մեջ առաջացող իրավիճակի և բեռնափոխադրման գործում տեխնիկական նոր լուծումների։

Կապիտալ շինարարությունում նոր նախահաշվային գները և վարձաչափերը կոչված են խթանելու ներդրումների արդյունավետության բարձրացումը, բարելավելու նախագծային և շինարարական կազմակերպությունների աշխատանքը։ Այս ոլորտում գների ձևավորման մեխանիզմը պետք է բացառի նյութատարության ներգործությունը պատրաստի շինարարական արտադրանքի գների մակարդակի վրա։ Լայնորեն կկիրառվեն պատրաստի օբյեկտների և այլ վերջնական շինարարական արտադրանքի պայմանագրային նախահաշվային գները, որոնք պետք է շերտավորվեն ըստ շինարարական արտադրանքի որակի։

Մեծանում է գնագոյացման դերն արտաքին տնտեսական կապերի արդյունավետության բարձրացման, միջազգային կոոպերացիայի ընդլայնման և ամենից առաջ՝ ՏՓԽ-ի անդամ երկրների հետ փոխշահավետ մասնագիտացման ու կոոպերացման գործում։ Ինչպես կապիտալիստական, այնպես էլ սոցիալիստական երկրների հետ առևտրական պայմանագրային գների կատարելագործման հիմնական ուղղությունը դրանց մերձեցումն է համաշխարհային գների մակարդակներին ու համամասնություններին՝ միաժամանակ պահպանելով փոխշահավետության սկզբունքը և համաշխարհային գների մակարդակը ճշգրտելով ըստ համապատասխան արտադրանքի որակի։

Պահանջվում է որակական նոր աստիճանի բարձրացնել ժողովրդական տնտեսության մեջ գներ սահմանելու հիմնավորվածության և դրանց կիրառման ճշտության նկատմամբ վերահսկողությունը, ստեղծել գների վերահսկման միասնական պետական համակարգ՝ այն փոխադրելով կանոնավոր պլանային հիմքի վրա, բարելավել գների պետական կարգապահության պահպանման ստուգումների կոորդինացումը։ Էականորեն կփոխվեն գների ձևավորման պրոցեսների, դրանց դինամիկայի, մակարդակի և կառուցվածքի սոցիալ-տնտեսական խոր վերլուծության միջոցով կատարվող ստուգումների մեթոդները։

Գնագոյացման մարմիններին իրավունք է վերապահվում չեղյալ հայտարարելու մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների հաստատած այն գները, որոնք տնտեսապես հիմնավորված չեն։ «Պետական ձեռնարկության (միավորման) մասին» ՍՍՀՄ օրենքով սահմանված տնտեսական սանկցիաներ կկիրառվեն գների պետական կարգապահության խախտման համար։ Նորություն է նաև այն, որ գների պետական կարգապահության խախտումները հավասարեցվում են պետական հաշվետվության մեջ կատարվող հավելագրումներին։

Մեր հանրապետությունում անցկացված ստուգումների հիման վրա 1986 թ. գների պետական կարգապահության խախտումների պատճառով բռնագանձվել է 2026,2 հազար ռուբլի, 1987 թ. դեկտեմբերի 1-ի վիճակով՝ 1116,2 հազար ռուբլի։

Զգալիորեն փոխվում են գնագոյացման մարմինների դերը և ֆունկցիաները։ Նրանց հիմնական խնդիրներն են գների ամբողջ համակարգի կոմպլեքսային կատարելագործումը, տնտեսական մեխանիզմի վերակառուցմանն ուղղված միջոցառումների հետ այդ համակարգի փոխկապակցվածության ուժեղացումը, մեթոդաբանական և վերլուծական աշխատանքի էական բարելավումը, «Պետական ձեռնարկության (միավորման) մասին» ՍՍՀՄ օրենքի պահանջներին լրիվին համապատասխան՝ գնագոյացման հարցերի լուծման գործում օպերատիվության բարձրացումը։

Նշված ուղղություններում գնագոյացման համակարգի վերակառուցումը հենվում է էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ գործոնների վրա։ Դրա իրականացումը հնարավորություն կընձեռի հաջողությամբ լուծելու ՍՄԿԿ XXVII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի կողմից գնագոյացման մարմիններին առաջադրված խնդիրները։ Անհրաժեշտ պայմաններ են ստեղծվում նոր տնտեսական մեխանիզմի անցնելու, գնագոյացման հակածախսումային սկզբունքը, ինքնաֆինանսավորման ու տնտհաշվարկի պայմանները և «Պետական ձեռնարկության (միավորման) մասին» օրենքի պահանջները գործնականում կիրառելու համար։

---



# ԱԶԳԱՅԻՆ ԵՎ ՀԱՄԱՍՈՎԵՏԱԿԱՆ ՀՊԱՐՏՈՒԹՅԱՆ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII համագումարի ընդունած ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ ընդգծված է, որ կուսակցությունն անհրաժեշտ ամեն ինչ կանի, որպեսզի «նպատակասլաց աշխատանք կատարի սովետական մարդկանց գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության ուղղությամբ, ներդաշնակորեն զարգացած հասարակականորեն ակտիվ անհատի ձևավորման ուղղությամբ, որն իր մեջ զուգորդի հոգևոր հարստությունը, բարոյական մաքրությունը և ֆիզիկական կատարելությունը» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 228)։

Ինչպես երևում է այս ծրագրային դրույթից, սովետական մարդկանց բարոյական դաստիարակությունը կուսակցությունը համարում է գաղափարախոսական աշխատանքի գլխավոր խնդիրներից մեկը երկրի զարգացման արդի փուլում։

Ինտերնացիոնալիզմի սկզբունքը դարձել է հեղափոխական բարոյականության կարևորագույն պահանջներից մեկը, պրոլետարիատի աշխարհայացքի առանցքային սկզբունքը ազգային հարցում։ Դրանք մշակել են գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը և պատմական նոր պայմաններում զարգացրել է Վ. Ի. Լենինը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիմնական սկզբունքն արտահայտվեց կոմունիստական կուսակցության մանիֆեստի՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» անմահ կոչի մեջ։ Այս սկզբունքից օրինաչափորեն բխում է նաև բանվոր դասակարգի հեղափոխական կուսակցությունների գործողության միասնության սկզբունքը։

Վ. Ի. Լենինը, զարգացնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գաղափարները պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին, նշում էր. «Սոցիալ-դեմոկրատ, ինտերնացիոնալիստ լինելու համար պետք է մտածել ո՛չ թե միայն իր ազգի մասին, այլ նրանից ավելի բարձր պետք է դասել բոլորի շահերը, նրանց ընդհանուր ազատությունն ու իրավահավասարությունը» (ԵԼԺ, հ. 30, էջ 55)։ Նա մատնանշում էր, որ կապիտալի դեմ բանվոր դասակարգի և նրա քաղաքական ավանգարդի մղած պայքարի շահերը «պահանջում են բոլոր ազգերի բանվորների լիակատար համերաշխություն և ամենասերտ միասնություն, պահանջում են հակահարված տալ անխտիր բոլոր ազգությունների բուրժուազիայի նացիոնալիստական քաղաքականությանը» (նույն տեղը, հ. 25, էջ 347)։ Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնությունը, որ ստեղծել է Լենինի կուսակցությունը, մեր երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի վճռական գործոններից էր։

Սովետական հասարակարգում էական փոփոխություններ են տեղի ունեցել պրոլետարական ինտերնացիոնալիզմի բովանդակության մեջ ու նրա գործողության ոլորտում։ Այն թևակոխել է իր օրինաչափ զարգացման նոր փուլը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը վերաճել է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, որի գլխավոր բովանդակությունն է սովետական ժողովուրդների եղբայրական միասնությունը, նրանց սոցիալիստական համագործակցությունն ու փոխօգնությունը սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարում։ Լենինի կուսակցության գաղափարական հուժկու ազդեցությամբ ձևավորվել են հասարակական պարտքի բարձր զարգացած գիտակցությամբ օժտված սերունդներ, կոլեկտիվիստների, ինտերնացիոնալիստների, սոցիալիստական հայրենիքի հայրենասերների սերունդներ։

Էապես հարստացել են նաև սովետական մարդկանց վարքագծի նորմերը։ Նրանց կենսական սկզբունքներն ու բարոյական նորմերն են դարձել նվիրվածությունը կոմունիզմի գործին, հանրային հարստության բազմապատկումն իրենց ազնիվ աշխատանքով, հասարակական պարտքի գիտակցումը, կոլեկտիվիզմը, համա-

---

ՄՈՒՐԱԴՅԱՆ Վիկտոր Ասլանի— պատմական գիտությունների դոկտոր, ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտի գիտական կոմունիզմի խմբի ղեկավար

նիզմը, ինտերնացիոնալիզմը։ Այս սկզբունքներն իրենց համար ուղի են հարթել և դարձել են սովետական մարդկանց ճնշող մեծամասնության կյանքի առօրյա նորմ՝ անցյալի վերապրուկների, կապիտալիզմի վերապրուկների դեմ մղվող պայքարում։ Դրանք կենսունակ են, հատկապես այնպիսիները, ինչպես ազգային էգոիզմը, ազգային սահմանափակությունը, ներփակվածությունը, սնապարծությունը։ Այդ վերապրուկներին, և երկրի շատ շրջաններում դեռևս պահպանված նույնիսկ ֆեոդալիզմի ու տոհմական հասարակության վերապրուկներին, մեր կուսակցությունը հակադրեց կոմունիստական գաղափարախոսությունը, սոցիալիստական հասարակարգի բարոյական նորմերը։ Այս առումով հարկ է ավելի հանգամանորեն լուսաբանել սովետական մարդկանց հայրենասիրական և ինտերնացիոնալ միասնության բարոյական նշանակությունը։

Այժմ, երբ բազմազգ սովետական ժողովուրդն անձնվեր աշխատանքով կենսագործում է կուսակցության ստրատեգիական կուրսը, որն ուղղված է սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի որակական վերափոխմանը, առանձնապես կարևորվում է մարդկային գործոնը։ Վերջինիս հետ է կուսակցությունը կապում երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու խնդիրների հաջող լուծումը։ Իսկ մարդկային գործոնի դերի բարձրացման հարցում բացառիկ մեծ է սովետական մարդկանց բարոյական դաստիարակության խնդիրը։ Ահա թե ինչու ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ հատուկ ուշադրություն է նվիրված այդ հարցին։

Մարդու կոմունիստական դաստիարակությունն անբաժանելի է ժողովրդի բարօրության, սոցիալ-տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծմանը նրա գործնական մասնակցությունից։ Եվ շատ կարևոր է, որ անհատի վարքագիծն ակտիվորեն դրսևորվի հասարակական կյանքի բոլոր ոլորտներում՝ աշխատանքում, կենցաղում, քաղաքականության, գիտության մեջ, ընտանեկան և անձնական հարաբերություններում, միջդասակարգային և միջազգային գործերում։ Մարդու նկատմամբ ներկայացվող բարոյական այս պահանջների կոմպլեքսից էլ ձևավորվում է մարդկային փոխհարաբերությունների կուլտուրան։

Ազգային հարաբերությունների պրոբլեմները մեր երկրում, որտեղ ապրում են 100-ից ավելի ազգեր ու ազգություններ, շարունակ գտնվում են կուսակցության ուշադրության կենտրոնում։ ՍՄԿԿ-ն, հենվելով Վ. Ի. Լենինի ուսմունքի, սոցիալիզմի նվաճումների վրա, հսկայական վերափոխիչ աշխատանք է կատարել ազգային հարաբերությունների բնագավառում։ Անցյալից մնացած ազգային հարցը մեր երկրում հաջողությամբ լուծված է։ Սովետական ժողովուրդը հանդես է գալիս որպես որակապես նոր սոցիալական ու ինտերնացիոնալ հանրություն, որը սերտորեն միաձուլված է տնտեսական շահերի, գաղափարախոսության և քաղաքական նպատակների միասնությամբ։

«Բայց մեր նվաճումները,— ՍՄԿԿ XXVII համագումարում շեշտեց Մ. Ս. Գորբաչովը,— ազգային պրոցեսների անպրոբլեմայնության պատկերացումներ չպիտի ստեղծեն։ Հակասությունները ներհատուկ են ամեն մի զարգացման, դրանք անխուսափելի են նաև այդ ոլորտում։ Գլխավորն է տեսնել դրանց մշտապես ծագող ասպեկտներն ու կողմերը, որոնել ու ժամանակին ճիշտ պատասխաններ տալ կյանքի առաջադրած հարցերին։ Մանավանդ որ այստեղ դեռևս իսպառ չեն վերացված ու երբեմն հիվանդագին կերպով իրենց զգալ են տալիս ազգային ներփակվածության, տեղայնության ձգտումը, խնամառական տրամադրությունները։

Մեր երկրի սոցիալ-տնտեսական կյանքում նկատվող ճահճացման երևույթները հանգեցրին ազգային հարաբերություններում մի շարք բացասական միտումների երևան գալուն, որոնք նախկինում կամ բոլորովին չէին նկատվում, կամ էլ բավականին հստակորեն չէին դրսևորվում։

ՍՄԿԿ ծրագրում ընդգծված է, որ կուսակցությունը և սովետական պետությունը շահագրգռված են, որ յուրաքանչյուր սովետական մարդու ներհատուկ լինեն բարեկամության և եղբայրության զգացումները, որոնք միավորում են ՍՍՀՄ բոլոր ազգերին ու ազգություններին, ազգամիջյան հաղորդակցման բարձր կուլտուրան, անհանդուրժողությունը նացիոնալիզմի և շովինիզմի, ազգային սահմանափակության և ազգային էգոիզմի դրսևորումների, կյանքի կոմունիստական նորացմանը խանգարող սովորույթների ու բարքերի նկատմամբ։ Մեր բազմազգ երկրում շատ կարևոր է, որ ամեն մի սովետական մարդու ազգային հպարտությունը միաձուլված լինի համասովետական հպարտության հետ, այլ խոսքով՝ դառնա սոցիալիստական հզոր տերության քաղաքացու համազգային հպարտություն։

Հայրենիքի սերն ունի պատմական խոր արմատներ և ներհատուկ է բոլոր մարդկանց։ Մարդն իր էությամբ կապված է այն վայրերին, այն միջավայրին, որտեղ ծնվել ու մեծացել է։ Բայց քանի որ հարազատ վայրերը երկրի մի մասն են, ապա նա հայրենասիրական զգացումները կապում է ամբողջ երկրի, հարազատ ժողովրդի, նրա լեզվի, մշակույթի, ավանդույթների հետ։ Ժողովրդական զանգվածները երբեք անտարբեր չեն վերաբերվել հարազատ բնությանը, լեզվին, մշակույթին, երկրի բախտին, նրա ազատությանն ու անկախությանը։ Եվ բնական է, որ այս կամ այն ժողովրդի հաջողություններն առաջընթաց զարգացման մեջ, իր ազատության ու անկախության համար մղած



պայքարում միշտ ծնել են հայրենասիրական զգացումներ և ազգային հպարտություն։

Սակայն շահագործողական հասարակարգում իշխող դասակարգերը ժողովրդի այդ ազնիվ զգացումները միշտ օգտագործել են իրենց շահադիտական նպատակներով։

Վ. Ի. Լենինը իր «Վելիկոռուսների ազգային հպարտության մասին» հոդվածում, բացահայտելով ռուսական բանվոր դասակարգի ազգային հպարտության դասակարգային էությունը, շեշտել է, որ առաջավոր բանվորների մեջ ազգային հպարտության զգացումը օրգանապես կապված է ունևոր դասակարգերի նկատմամբ, երկրի մյուս ժողովուրդների հանդեպ նրանց գործադրած բռնության նկատմամբ ունեցած ատելության հետ. «Խո՞րթ է արդյոք մեզ համար, վելիկոռուս գիտակից պրոլետարներիս համար, ազգային հպարտության զգացումը,— գրել է Լենինը։— Իհարկե, ո՛չ։ Մենք սիրում ենք մեր լեզուն ու մեր հայրենիքը, մենք ամենից ավելի ենք աշխատում այն բանի վրա, որ նրա աշխատավոր մասսաներին (այսինքն՝ նրա բնակչության 9/10-ին) բարձրացնենք մինչև դեմոկրատների ու սոցիալիստների գիտակից կյանքը։ Մեզ համար ամենից ավելի ցավալի է տեսնել ու զգալ, թե ցարական դահիճները, ազնվականներն ու կապիտալիստները մեր գեղեցիկ հայրենիքն ինչպիսի բռնությունների, ճնշման և ծաղրուծանակի են ենթարկում։ Մենք հպարտանում ենք նրանով, որ այդ բռնությունները հակահարված են առաջացրել մեր միջավայրից, վելիկոռուսների միջավայրից...» (ԵԼԺ, հ. 26, էջ 125)։

Խոսելով սոցիալիստական հեղափոխության մեջ վելիկոռուս պրոլետարիատի՝ նրա գլխավոր շարժիչի, կատարած դերի մասին, Լենինը հատկապես շեշտել է, որ «... հենց վելիկոռուսական պրոլետարիատի շահերի տեսակետից, անհրաժեշտ է մասսաների երկարատև դաստիարակությունը՝ վելիկոռուսների կողմից ճնշված բոլոր ազգերի կատարյալ իրավահավասարության ու ինքնորոշման իրավունքի ամենավճռական, հետևողական, համարձակ, հեղափոխական պաշտպանության իմաստով» (նույն տեղը, էջ 129)։

Մեր կուսակցությունը, ստեղծելով պրոլետարիատի միասնական, ինտերնացիոնալ բանակ հին աշխարհը գրոհելու համար, Ռուսաստանի բոլոր ազգերի ու ժողովուրդների բանվորների ազգային հպարտության զգացումը կապում էր սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման ու իրականացման հետ։ Հենց այդպես էին գործում նաև բազմազգ Կովկասի բոլշևիկները։ Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը այդ բազմազգ երկրամասի աշխատավորական զանգվածների ինտերնացիոնալ դաստիարակության ու համախմբման ուղղությամբ նրանց ծավալած գործունեությունը բանիցս բերել է իբրև օրինակ։ Նա նշել է, որ բոլոր ազգերի բանվորների կատարյալ միասնության սկզբունքն այնքան երկար ու այնքան հաջող իրագործվում էր Կովկասում (տե՛ս ԵԼԺ, հ. 23, էջ 150)։ Հենց Կովկասի կոմունիստական կազմակերպությունների հեղափոխական ակտիվ գործունեության շնորհիվ, որոնք իրենք էին կուսակցության ինտերնացիոնալ կառուցման լենինյան սկզբունքի մարմնավորումը, երկրամասի տարբեր ազգությունների բանվորների ազգային հպարտությունն աստիճանաբար միաձուլվեց նրանց դասակարգային գիտակցության հետ։ Պրոլետարիատի դիկտատուրայի համար մղված պայքարի ընթացքում էական փոփոխություններ տեղի ունեցան նաև մեր երկրի բոլոր ժողովուրդների աշխատավորական զանգվածների ազգային գիտակցության և ազգային հպարտության մեջ։

Մարքսիզմ-լենինիզմի դասականները կանխագուշակել են, որ սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո հայրենասիրության հասկացությունը զգալիորեն կընդլայնվի, կհարստանա նոր բովանդակությամբ, իսկ ազգային հպարտությունը աստիճանաբար կմիաձուլվի այդ նոր բովանդակության հետ։ Եվ իրոք, երբ մեր երկրում հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, և ժողովրդական զանգվածները ձեռք բերեցին իրենց սոցիալիստական հայրենիքը, նրանց հայրենասիրությունը հարստացավ նոր գաղափարաքաղաքական բովանդակությամբ։ Նրանք սկսեցին բարձր գնահատել ոչ միայն իրենց ժողովրդի տարածքը, մշակույթը, լեզուն, այլև ամենից առաջ Հոկտեմբերի համաշխարհային-պատմական նվաճումները, որ ստեղծել էին նոր հասարակական ու պետական կարգը, նրանց հարազատ սովետական իշխանությունը։ Այժմ հեղափոխության կողմից ազատագրված երկրի ժողովուրդների ազգային հպարտությունը միաձուլվել է սովետական կարգերին նվիրվածության զգացումի հետ, հպարտության այն զգացումի հետ, որ հենց իրենց բազմազգ երկիրը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ, որ հարազատ սովետական իշխանությունը անսահման ասպարեզներ բացեց ու անցյալում չտեսնված իրական հնարավորություններ է ստեղծում բանվորների և գյուղացիների աշխարհում առաջին սոցիալիստական պետության մեջ ապրող բոլոր ազգերի ու ազգությունների բարգավաճման համար։

Նոր հասարակական կարգը, ներդաշնակորեն զուգակցելով մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորների դասակարգային ու ազգային շահերը, նրանց ոտքի հանեց պաշտպանելու և ամրապնդելու սովետական իշխանությունը, պաշտպանելու Հոկտեմբերի նվաճումները։ Երկրի ազգային շրջանների բանվորներն ու գյուղացիները տեղական բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ ստեղծում էին կարմիր բանակի ազգային կազ-

մավորումներ, որոնք, մտնելով այդ բանակի շարքերը, կարմիր բանակի հիմնական կորիզը կազմող ռուս բանվորների և գյուղացիների հետ ուս-ուսի տված պաշտպանեցին իրենց հարազատ իշխանությունը ներքին հակահեղափոխության և օտարերկրյա ինտերվենտների դեմ մղած պայքարում։

Այդպես ձևավորվեց ու ամրապնդվեց սովետական հայրենասիրությունը, որը նոր հասարակական ու պետական կարգի գոյության առաջին իսկ օրերից սկսեց իր մեջ մարմնավորել նաև ազատ ու իրավահավասար ժողովուրդների ազգային հպարտությունը։ Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում բանվորների և գյուղացիների հեղափոխական հայրենասիրության նշանակությունը քաղաքացիական պատերազմում երիտասարդ սովետական հանրապետության հաղթանակն ապահովելու գործում։

Սովետական սոցիալիստական հայրենասիրության կենարար ուժն ունի խոր արմատներ, ամուր ու անսասան հիմքեր։ Նրա տնտեսական հիմքն են կազմում արտադրության միջոցների հանրային սեփականությունը և տնտեսության սոցիալիստական սիստեմը։ Սովետական հայրենասիրության քաղաքական հիմքը սոցիալիստական պետական կարգն է, սովետական դեմոկրատիան, իսկ գաղափարատեսական հիմքը՝ մարքս-լենինյան ուսմունքը, նրա գաղափարները սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հումանիզմի ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների եղբայրության ու երջանկության մասին։

ՍՍՀՄ-ի կազմավորմամբ սոցիալիստական հասարակարգը կառուցողների ազգային և համասովետական հպարտությունը ձեռք բերեց առավել տարողունակ բովանդակություն։ Եվ այն ժամանակ, եթե խոսք էր լինում ազգային հպարտության մասին, ապա ամենից առաջ նկատի էր առնվում, թե այս կամ այն սովետական ժողովուրդն ինչ ավանդ է ներդնում սոցիալիզմի հիմքերի ստեղծման, երկիրը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում կուսակցության գլխավոր գծի իրականացման գործում, թե այս կամ այն սովետական մարդը որքանով կարող է հպարտանալ սոցիալիզմի կառուցման համար ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների մղած ընդհանուր պայքարում իր սոցիալիստական ազգի ունեցած ավանդով։ Եվ միանգամայն հասկանալի է, որ մեր օրերում ազգային հպարտության տերմինը հարստացել է նոր բովանդակությամբ՝ համազգային, այսինքն՝ համասովետական հպարտությամբ։

Բոլոր ազատ ժողովուրդների համախմբումը միասնական պետական միության մեջ բազմապատկել է նրանց ուժերը, արագացրել սոցիալ-տնտեսական զարգացումը։

Մեր երկրում սոցիալիզմի կառուցման համար մղված համատեղ պայքարում, տնտեսական և կուլտուրական համագործակցության և փոխօգնության պրոցեսում ծնվեց աշխատավոր մարդկանց մեծ եղբայրությունը, միասնական ընտանիքի զգացումը, ձևավորվեց ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամությունը, որը կոփվեց ու ամրապնդվեց երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլտուրական հեղափոխության ընթացքում, սոցիալիզմի կառուցման համար մղված պայքարում, Հայրենական մեծ պատերազմի և տնտեսության հետպատերազմյան վերականգնման տարիներին։

ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների ազգային և համասովետական շահերի միասնությունը, նրանց եղբայրական բարեկամությունն ու մարտական համագործակցությունը գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մղված պայքարում, նրանց կենարար հայրենասիրությունը սովետական բազմազգ պետության ուժի, ամրության և հաղթանակի գլխավոր աղբյուրներից էին անցած պատերազմում։ Այդ աղբյուրը գործում էր ակտիվ, անխափան և այն գլխավոր գործոններից մեկը եղավ, որոնք որոշում էին պատերազմի ընթացքն ու ելքը։ Հայրենիքի զինված պաշտպանների հաղթանակի կամքը մեծ չափով կախված էր թիկունքի ամրությունից, բուն ժողովրդի ոգու վիճակից, այն բանից, թե որքանով նա անխափան ռազմաճակատը ապահովում է սպառազինությամբ, մարտական տեխնիկայով, հանդերձանքով, պարենով, զորքերին սնում հայրենասիրական գաղափարներով, տրամադրություններով։

Եվ այսօր, չորս և կես տասնամյակ անց չի կարելի առանց հուզմունքի կարդալ ազգային հանրապետությունների ժողովուրդների նամակ-պատվիրանները իրենց ռազմաճակատային զավակներին և ռազմիկների պատասխան նամակները։ 1943 թվականի փետրվարի 27-ին «Պրավդան» հրապարակեց հայ ժողովրդի նամակը ռազմաճակատային զավակներին, ապրիլի 21-ին՝ ադրբեջանական ժողովրդի նամակը, իսկ մայիսի 26-ին վրաց ռազմիկների նամակը իրենց ժողովրդին։ Այս հուզիչ պատմական փաստաթղթերը տոգորված են սովետական խոր հայրենասիրությամբ և սոցիալիստական ինտերնացիոնալիզմով, ջերմորեն ընկալվեցին սովետական բազմազգ զինված ուժերի, ամբողջ սովետական ժողովրդի կողմից։

«Մեր քաջարի մարտիկներ,— ասված է հայ ժողովրդի նամակում։— Ձեզ՝ որպես ազատարարների սպասում են մեր միլիոնավոր քույրերն ու եղբայրները, որոնք հեծում են գերմանական զավթիչների ծանր լծի տակ։ Հիշեցե՛ք, որ նրանց ազատագրելը ձեր սրբազան պարտքն է...

Հիշեցե՛ք, մեր զավակներ, որ ռազմաճակատի որ հատվածում էլ որ դուք մարտնչեք գերմանացի ֆաշիստների դեմ, դուք կռվում եք Հայաստանի գոյության համար, նրա փրկության,



նրա ազատության համար» («Правда», 27 февраля, 1943).

«Մեր քաջարի ռազմիկներ,— նշված է ադրբեջանական ժողովրդի նամակում,— ձեր արյունով դուք պատմության մեջ գրում եք նոր, աննախընթաց պատումի էջեր Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամության մասին։

Բարեկամին կարելի է ճանաչել ծանր օրերին։ Մենք՝ ադրբեջանցիներս, միշտ էլ ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, վրացիների, ղազախների, հայերի, Սովետական Միության բոլոր եղբայրական ժողովուրդների բարեկամն ենք եղել ոչ միայն երջանիկ օրերում, այլև փորձությունների օրերին»։ Հենց եղբայր ժողովուրդների պողպատե պատը փակեց ֆաշիստական հորդաների ճանապարհը դեպի Ադրբեջան, դեպի նրա մայրաքաղաք Բաքու։ Եվ քանի դեռ ապրում է այդ բարեկամությունը, ոչ մի ուժ ի վիճակի չէ կոտրելու եղբայր ժողովուրդների հաղթանակի կամքը («Правда», 21 апреля, 1943)։

Հսկայածավալ սովետա-գերմանական ռազմաճակատի բոլոր ուղղություններից անընդմեջ հոսանքով գալիս էին պատասխան նամակներ, որոնցում հայրենակից ռազմիկները երդվում էին ռուս մեծ ժողովրդի և ՍՍՀՄ մյուս եղբայր ժողովուրդների ռազմիկ զավակների հետ միասին անխնա հարվածել ու ջախջախել սոցիալիստական հայրենիքի նենգ թշնամուն և հաղթանակով վերադառնալ տուն։

«Մեր նամակը գրվում է Հյուսիսային Կովկասում,— գրում էին իրենց ժողովրդին վրացի ռազմիկները,— բայց այն արտահայտում է Հայրենական մեծ պատերազմի ընդարձակ ռազմաճակատում մարտնչող բոլոր վրացի մարտիկների զգացումներն ու խոհերը... Ընդհանուր թշնամու դեմ մղվող սրբազան պայքարում է՛լ ավելի են ամրապնդվել ժողովուրդների բարեկամությունն ու անխախտ եղբայրությունը։ Այսուհետև այդ բարեկամությունը ամրակցված է մեր անձնազոհ մարտիկների արյունով և կոփված է պատերազմի քուրայում» («Правда», 16 мая, 1943)։

Ազգային հանրապետությունների պատվիրան-նամակները ռազմաճակատային զավակներին և վերջիններիս պատասխան նամակները մարդկային հուզիչ փաստաթղթեր են, որոնք տոգորված են սովետական կենարար հայրենասիրությամբ և սոցիալիստական խոր ինտերնացիոնալիզմով, փաստաթղթեր, որոնք համոզիչ կերպով բացահայտում են ՍՍՀՄ ժողովուրդների ու նրանց ռազմիկ զավակների ազգային և համասովետական հպարտության էությունը Հայրենական մեծ պատերազմի ահեղ տարիներին։

Սովետական հասարակությունում ամեն մի ժողովրդի ազգային հպարտությունը համընկնում է բոլոր սոցիալիստական ազգերի ու ազգությունների ընդհանուր նպատակներին՝ մեր երկրում կոմունիզմի կառուցմանը։ Եվ քանի որ մեր երկրի էկոնոմիկան միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս է, ապա այսօր այս կամ այն ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորի ազգային և համասովետական հպարտության որոշման գլխավոր ցուցանիշն է նրա ներդրումը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցության ստրատեգիական կուրսի իրականացման գործում։ Մեր ժամանակներում համասովետական հպարտության կարևորագույն բաղադրամասն է կազմում հպարտությունը ամբողջ սովետական ժողովրդի աշխատանքի արդյունքների համար, հանրապետության, երկրամասի, մարզի, քաղաքի, շրջանի ձեռնարկության ավանդի համար, սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործում անձնական ներդրման համար, անկախ նրանց ազգային պատկանելությունից՝ բոլոր աշխատավորների նյութական և կուլտուրական բարեկեցության բարձրացում։

Խոպանի յուրացումը, Բայկալ-ամուրյան մայրուղու և Սիբիր-Արևմտյան Եվրոպա գազամուղի շինարարությունը հարստացրել են սովետական մարդկանց համազգային հպարտությունը։ Չկա որևէ հանրապետություն կամ մարզ, որն ավանդ ներդրած չլինի խոպանի յուրացման գործում։

Երկրի ցանկացած ռեգիոնի, ցանկացած հանրապետության կյանքից կարելի է բերել վառ օրինակներ, որոնք վկայում են, թե պրակտիկ գործերում ինչպես է մարմնավորվում ՍՍՀՄ ժողովուրդների ազգային և համասովետական հպարտությունը։ Օրինակ, համաշխարհային պրակտիկայում եզակի ծովային «Նավթաքարեր» նավթահանքի կառուցմանը Ադրբեջանում, Արփա-Սևան 48 կիլոմետրանոց հիդրոտեխնիկական թունելի անցկացմանը Հայաստանում, Ինգուրիի ՀԷԿ-ի շինարարությանը Վրաստանում, Թբիլիսիում, Բաքվում, Երևանում մետրոպոլիտենի և Անդրկովկասի ուրիշ շատ ժողովրդական օբյեկտների շինարարությանը Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի աշխատավորների հետ միասին ակտիվորեն մասնակցել են նաև մեր բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների ներկայացուցիչները։

Անդրկովկասի հանրապետությունների ժողովուրդները զգալի գործ կատարեցին Բայկալ-ամուրյան երկաթուղին կառուցելիս։ Այդ մայրուղու շինարարության մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թվականի հուլիսի 8-ի որոշման մեջ շեշտված էր, որ ԲԱՄ-ի կառուցումը հիրավի կդառնա համաժողովրդական, որին կմասնակցեն բոլոր միութենական հանրապետությունների աշխատավորները, մեր փառապանծ սովետական երիտասարդությունը։

ԲԱՄ-ի շինարարությունն իրոք դարձավ հա-

մաժողովրդական գործ։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը լայն արձագանք և ջերմ հավանություն գտավ Անդրկովկասի հանրապետություններում։ Այստեղ ստեղծվեցին շինարարական կոլեկտիվներ, որոնք անմիջապես մեկնեցին Սիբիր՝ կատարելու իրենց հայրենանվեր պարտքը։ Նրանք կառուցեցին երկաթուղային նոր կայարաններ, հիանալի ավաններ, որոնք իրավամբ կրում են անդրկովկասյան ժողովուրդների ազգային ճարտարապետության կնիքը։ Հայրենիքը բարձր գնահատեց կովկասցի շինարարների ավանդը, նրանց պարգևատրեց կառավարական շքանշաններով ու մեդալներով։

Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի շինարարական ջոկատները սիբիրյան հողում, տայգայի դաժան ձմեռվա պայմաններում աշխատում էին նույնպիսի ոգևորությամբ, ինչպես և իրենց արևաշող երկրամասում։ Ավելին. այստեղ նրանք աշխատել ու աշխատում են է՛լ ավելի մեծ պատասխանատվությամբ, խոր զգացումով ու այն գիտակցությամբ, որ իրենք, ներկայացնելով իրենց հանրապետությունները, ժողովուրդներին, բարձր են պահում նրանց պատիվն ու ազգային հպարտությունը, որը սիբիրյան հողում դառնում է նյութական ուժ՝ հանուն սոցիալիստական մեծ հայրենիքի բարգավաճման։

Կոմունիզմ կառուցողների մեջ համասովետական հպարտության դաստիարակության գործում հսկայական դեր են խաղում միջհանրապետական, ռեգիոնալ և համամիութենական միջոցառումները։ Այս առումով դրական մեծ փորձ են կուտակել Անդրկովկասի հանրապետությունների կուսակցական կազմակերպությունները։ 1972 թվականից սկսած, Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի կոմկուսների Կենտկոմները կանոնավոր կերպով մշակում ու իրականացնում են համատեղ կոմպլեքս միջոցառումներ, որոնք ուղղված են կուսակցական, սովետական, հասարակական և տնտեսական կազմակերպությունների ջանքերի միավորմանը՝ ժողովրդական տնտեսության խնդիրները լուծելու և գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքը կատարելագործելու համար։ Կոնկրետ միջոցառումներ են նախատեսվում նաև Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի կոմկուսների կենտկոմների կուսակցության պատմության ինստիտուտների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, ստեղծագործական միությունների, կոմերիտական կազմակերպությունների, մինիստրությունների և պետական կոմիտեների, մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի մարմինների գծով։

Աշխատավորների բարոյական, հայրենասիրական դաստիարակության գործում բացառիկ կարևոր դեր է պատկանում արդեն հիանալի ավանդույթ դարձած սոցիալիստական մրցությանը Անդրկովկասի հանրապետությունների, քաղաքների ու շրջանների, ձեռնարկությունների և կոլտնտեսությունների միջև։ Այն նպաստում է ոչ միայն հնգամյա պլանների հաջող կատարմանը, այլև գաղափարախոսական աշխատանքի բովանդակության հետագա հարստացմանը, նրա մակարդակի ու ներգործունության բարձրացմանը, աշխատավորների ինտերնացիոնալ բարեկամության ու համախմբվածության, նրանց համասովետական հպարտության ուժեղացմանը։

ՍՍՀՄ ժողովուրդների անձնվեր աշխատանքը հազարավոր ուղիներով միանում է միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի ամրապնդման ու զարգացման ընդհանուր գործին։ Նրանց ազգային հպարտությունը, ինչպես և նրանց աշխատանքը, նույնպես միաձուլվում է համասովետական հպարտության հետ։

Սովետական հայրենասիրությունն իր բոլոր դրսևորումներով հարստացնում է մեր երկրի յուրաքանչյուր ազգի և ազգության ազգային հպարտությունը, նրանց տնտեսական ու կուլտուրական զարգացումը. սա մի պրոցես է, որն անբաժանելի է ՍՍՀՄ-ի զարգացման, նրա ժողովրդի առաջադիմության ընդհանուր պրոցեսից։ Սովետական հասարակության մեջ ազգային և համասովետական հպարտությունը սովետական հայրենասիրության, սովետական մարդկանց ինտերնացիոնալ գիտակցության և ապրելակերպի զարգացման ու հաստատման երկու կողմերն են։

Բայց սխալ կլիներ կարծել, որ այդ պրոցեսը զարգանում է տարերայնորեն, ինքնահոսի ձևով։ Այդ պրոցեսին շարունակ ուղղություն են տալիս կոմունիստական կուսակցությունը, նրա համագումարների և Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումները, զանազան կազմակերպական միջոցառումները։

Սովետական հայրենասիրությունը հասարակության սոցիալիստական վերակառուցման հզոր միջոց է, սովետական մարդկանց բարոյական կերպարի անքակտելի հատկանիշը։ Դեռևս շատ բան կա անելու, որպեսզի մեր կյանքի ողջ մթնոլորտը, ընտանիքն ու դպրոցը, գրականությունն ու արվեստը սովետական մարդկանց, հատկապես երիտասարդությանը արդյունավետ կերպով ձևավորեն ու դաստիարակեն պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով։

Սովետական հասարակությունը ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ ապրում է սոցիալ-տնտեսական, բարոյաքաղաքական կյանքի վերակառուցման ու նորացման, արտադրության որակի բարձրացման, գիտատեխնիկական վերազինման արագացման, դեմոկրատացման հետագա խորացման, հրապարակայնության հաստատման, սոցիալիզմի լենինյան մյուս նորմերի արմատավորման հեղափոխական փուլ՝ նպատակ ունենալով ապահովել ավելի շատ սոցիալիզմ։

Այս ծրագրային խնդիրների իրականացման գործում բացառիկ մեծ է սովետական մարդկանց, հատկապես երիտասարդության հայրենասիրական ու ինտերնացիոնալ դաստիարակության դերը։

# ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԲՆԱԳԻՏԱԿԱՆ ՄՏԱԾՈՂՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՄԻՏՈՒՄՆԵՐԸ

**Վ. ԹՈՐՈՍՅԱՆ**

ՄԵՆՔ ԱՊՐՈՒՄ ԵՆՔ ԱՅՆՊԻՍԻ մի դարաշրջանում, որի դեմքը զգալի չափով որոշվում է գիտության զարգացմամբ։ Դառնալով անմիջական արտադրողական ուժ, գիտությունը արմատապես փոխում է նյութական արտադրության, բնության հետ մարդու փոխհարաբերությունների ողջ կոմպլեքսի բնույթը։ Գիտությունը հարաճուն ներգործություն է ունենում ժամանակակից մարդու ապրելակերպի ու մտածելակերպի վրա։ Բառացիորեն ներթափանցելով ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր մշակույթի բոլոր ոլորտները, հենց գիտությունն է առավել նշանակալի ներգործություն ունենում մեր դարաշրջանի մտածողության ընդհանուր ոճի վրա։ Այս առումով առանձնահատուկ տեղ են գրավում այն գիտական հետազոտությունները, որոնք կազմում են արդի բնագիտության առաջավոր բնագծերը։

Ժամանակակից բնագիտական հետազոտություններում հստակորեն դրսևորվում է գիտության զարգացման կարևորագույն առանձնահատկությունը, որը վերջին մեկուկես-երկու տասնամյակում իր վրա է գրավում գիտնականների սևեռուն ուշադրությունը։ Այժմ գնալով ավելի ու ավելի ակնհայտ է դառնում, որ գիտական իմացությունը օրինաչափ չէ դիտել որպես «զուտ գիտական» ծագում ունեցող հայտնագործությունների ու գաղափարների ինքնաբավ հաջորդականության գծային աճ։ Իրականում գիտության՝ որպես կուլտուրայի օրգանական տարրի զարգացումը, այդքան էական ներգործություն ունենալով ողջ կուլտուրայի վրա, իր հերթին բառացիորեն սնունդ է քաղում նյութական և հոգևոր մշակույթի բոլոր ոլորտներում։

Գիտության վրա սոցիալ-կուլտուրական ներգործությունն ամենևին չի սահմանափակվում տնտեսական, կազմակերպական բնագավառով, այն նաև կարելի է դիտել բուն գիտական պատկերացումների բնույթի մեջ՝ գիտական գաղափարների, հետազոտական ծրագրերի մշակման, նրանց գնահատման, նրանց շարունակ տեղի ունեցող յուրատեսակ ընտրության մեջ։

Այդպիսի ներգործությունը իրականացվում է գիտության մտածողության ոճի միջոցով, որը, ներառնելով աշխարհի որոշակի ընկալումը, կողմնորոշումը դեպի գիտական նկարագրության ու բացատրության որոշակի նորմաներն ու սկզբունքները (դրանով իսկ պայմանավորելով գիտական հետազոտության ստրատեգիան), օրգանապես կապված է համապատասխան դարաշրջանի մտածողության ընդհանուր ոճին՝ որպես դարաշրջանի ամբողջ կուլտուրայի ընդհանրացված արտահայտությանը, «կերպին», որի շնորհիվ տեղի է ունենում կուլտուրայի հիմքերի մշտական փոխհաղորդում դեպի գիտության հիմքերը, կուլտուրայում մշակված և «փորձարկված» պատկերացումների արմատավորում գիտության մեջ։ Վերջին հանգամանքը առանձնապես կարևոր է, քանի որ հենց դա է ապահովում այն պրոբլեմների, հետազոտական խնդիրների, թեմատիկ գծերի, մտքի (այդ թվում՝ փիլիսոփայական մտքի) միտումների մշտական «բնական ընտրությունը», որոնք առավելապես համապատասխանում են հենց տվյալ ժամանակաշրջանի գիտության զարգացմանը։ Մտածողության ոճի միջոցով տեղի է ունենում նույնիսկ առօրյա մտածողության առաջատար հմտությունների յուրացումը գիտական գործունեության մեջ (տե՛ս Диалектика-методология и мировоззрение

ԹՈՐՈՍՅԱՆ Վարդան Գրիգորի— *Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի մարքս-լենինյան փիլիսոփայության ամբիոնի դոցենտ, փիլիսոփայական գիտությունների թեկնածու*

современного естествознания. М., 1983. стр. 28):): Ստացվում է այնպես, որ մտածողության (ցանկացած գիտության) ոճը կատարում է յուրատեսակ պրիզմայի դեր, որի միջոցով տեղի է ունենում բնական և հասարակական կեցության դիտարկումը, մեկնաբանումը և յուրացումը: Թեև գիտության մտածողության ոճը դետերմինանում է ռեալության օբյեկտիվ օրինաչափություններով և հարաբերություններով, օբյեկտների առանձնահատկություններով, որոնք յուրացնում է տվյալ գիտությունը իր պատմական զարգացման տվյալ փուլում, սակայն այդպիսի դետերմինացումը տեղի է ունենում շատ բարդ ձևով, որի մեջ արտահայտվում է իմացական գործունեության՝ տվյալ փուլին համապատասխանող կերպը, որը ձևավորվում է նյութական պրակտիկայի և նրա տիպերն ապահովող հոգևոր արտադրության ազդեցության տակ (տե՛ս նույն տեղը, էջ 416): Մտածողության ոճի ձևավորման ու գործողության այդ առանձնահատկությունների շնորհիվ նրանում նըշմարելի կլինեն ոչ միայն առկա կուլտուրայի առանձնահատկությունները, այլև հասարակական կյանքում կատարվող տեղաշարժերը, հասարակական գիտակցության բնորոշ միտումները նրա ամենաբազմապիսի ձևերով:

Հենց այդ պատճառով էլ, ասենք, Կոպեռնիկոսի հայտնագործությունը պարզապես մոլորակային շարժումների նոր համակարգի ստեղծում չէր, ներկայանալով որպես իսկական գիտական հեղափոխություն, որը նշանավորեց հասարակական կյանքում, հասարակական գիտակցության բոլոր ձևերում և բոլոր մակարդակներում տեղի ունեցած տևական ու խոր փոփոխությունների արդյունքը:Իր դարաշրջանի համար չափազանց ներկայացուցչական էր, հենց այդպիսի լայն կուլտուրական առումով, մտածողության մեխանիստական ոճը:

Այսպիսով, գիտության զարգացումը կարող է իսկական դիալեկտիկամատերիալիստական դիրքերից համապատասխանաբար իմաստավորվել, վերլուծվել միայն այնպիսի մոտեցման դեպքում, երբ «համընդհանուր, էական, օրինաչափ կապերի ու հարաբերությունների հետազոտումը» օրգանապես կապակցված է դրանց քննարկման և «մեկնաբանման հետ՝ լայն, աշխարհայացքային, կուլտուր-պատմական առումով» (ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը «Կոմունիստ» հանդեսի մասին»), երբ գիտության զարգացման ուղղություններն ու միտումները վերլուծվում են կուլտուրայի ընդհանուր միտումների հետ սերտ փոխկապակցության և փոխգործողության մեջ: Նման հետազոտական հիմնադրույթը առանձնապես հրատապ է սովետական ժողովրդի առջև կանգնած վերակառուցման և արագացման խնդիրների լուծման նկատմամբ համապարփակ մոտեցման աճող անհրաժեշտության պայմաններում:

Սոցիալ-տնտեսական և կուլտուրական պայմանների ողջ կոմպլեքսի ազդեցության տակ մտածողության ժամանակակից ոճի մեջ կատարվող տեղաշարժերի առումով արտակարգ կարևոր տեղ է գրավում բնության և բնության մասին գիտությունների՝ նրանց համապատասխանող «համապարփակ» կերպի ձևավորումը, որը բնապատմականորեն փոխարինել է այն կերպին, որը ստեղծվել է կուլտուրայի ոլորտում XVII—XVIII դարերում, շատ բաներով պահպանվել նույնիսկ XX դարում:

Ռացիոնալության ավանդական տիպը, ձևավորվելով մեխանիստական մտածողության մեջ և ընդգրկելով նաև XX դարը, պայմանավորում է այնպիսի գիտություն, որում հակադրված են բնությունն ու մարդը իրենց գործողություններով: Ի տարբերություն անտիկ վերածննդի ավանդույթների, այստեղ մարդը և նրա աշխարհը ունիվերսումի փոխադարձ կապերից կտրված են, մի այլ՝ սոցիալական ոլորտում տեղակայված:

Եթե կյանքի առաջացումը և նույնիսկ պարզապես նրա պահպանումը վերագրենք ֆիզիկայի մեզ հայտնի համապարփակ օրենքներին, ապա կյանքը իրոք պետք է ներկայանա իբրև մի հրաշք, որը տեղի է ունեցել հակառակ թերմոդինամիկայի ամենից առաջ II սկզբունքի կործանարար ներգործությանը, որը բնության մեջ ամեն ինչ դատապարտել է քայքայման ու ավերման: Այդ հարցի լուծման գործում քիչ են առաջ շարժել նաև կյանքը քվանտային-մեխանիկական պատկերացումների հիման վրա բացատրելու փորձերը: Այնինչ, դեռ Դ. Դիդրոն և Գ. Լայբնիցը առաջադրել էին մի պահանջ (որի մասին չէր լսվել և որը այն ժամանակ չէր էլ կարող իրականացվել). բնությունը նկարագրել այնպես, որ հասկանալի դառնա մարդու բուն գոյությունը (արդեն XX դարում այդ պահանջը վերականգնվեց «կյանքը որպես բնական պրոցես» բացատրելու հիմնադրույթի ձևով):

Մտածողության մեխանիստական, մետաֆիզիկական ոճի առանձնահատկությունների թվին, որոնք որոշակի գծերով պահպանվել են անգամ XX դարի գիտության մեջ, պատկանում է նաև այն, որ XVI—XVIII դարերի նյութական և հոգևոր կուլտուրայի ծնունդ հանդիսացող մտածողությունը, Տիեզերքը ներկայացնելով որպես մի վիթխարի, բացառիկ կարգավորված մեխանիզմ (ամենաճշգրիտ ժամացույցի նման), գիտության խնդիրն էր դարձրել նրա աշխատանքի համապատասխան՝ խիստ ու միանշանակ նկարագրությունը: Նման մոտեցման դեպքում (հաշվի առնելով այն, որ ժամանակի ամեն մի պահը՝ ներ-



կայումս, անցյալում և ապագայում համարվում են անտարբերելի) նույնիսկ բնագիտության մեջ անխուսափելիորեն թափանցած էվոլյուցիոն պատկերացումները միանգամայն հակընկնում էին բնության բուն «կառուցվածքի», Տիեզերքի մեխանիզմի արտաժամանակային բնույթի պահանջին՝ «բնության հիմնարար օրենքներն ըմբռնելու ձգտումը շարունակ ճանաչելին նույնացնում էր անխախտի հետ» (И. Пригожин, И. Стенгерс. Порядок из хаоса. Новый диалог человека с природой. М., 1986. с. 366).

Այժմ գիտության զարգացման տրամաբանությունը, ինչպես նաև նրա վրա պրոյեկցվող ամբողջ կուլտուրայի, բուն հասարակական կյանքի պահանջմունքները ավելի ու ավելի համառորեն են պահանջում այլ տիպի ռացիոնալություն, աշխարհի այլ պատկեր, մտածողության այլ ոճ, որը, նպաստելով բնության և հասարակության դինամիկ պատկերի ստեղծմանն ու իմաստավորմանը, միաժամանակ աշխարհի ընդհանուր գիտական պատկերի մեջ ներառներ նաև մարդուն և հասարակությանը: Բնության նկատմամբ սպառողական, շահագործողական վերաբերմունքի փոխարեն, նրա մասին պարզեցված, ուղղագիծ պատկերացումների փոխարեն, ավելի ու ավելի հրամայական անհրաժեշտություն է դառնում անսահման բազմապիսի և շարունակ զարգացող Տիեզերքի ամբողջական իմաստավորումը՝ որպես բնության, այնպես էլ դրանում մարդու ունեցած տեղի առավել խոր ըմբռնման պայմանը «բնություն-մարդ-հասարակություն» միասնական պատկերի մեջ:

Ժամանակակից գիտության զարգացումը անշեղորեն նրան կողմնորոշում է դեպի այն հիմնադրույթը, որ ձևակերպել է Ա. Էյնշտեյնը և որը ավելի ու ավելի է դառնում մտածողության գիտական ոճի օրգանական գիծը՝ ոչ միայն պարզապես նկարագրել ու բացատրել աշխարհը, այլև հիմնավորել, թե ինչու է նա հենց այդպիսին: Պետք է նշել, որ նման հիմնադրույթը, ըստ էության, ձևակերպված է եղել դեռ Յ. Կեպլերի «Աշխարհի ներդաշնակությունը» երկասիրության մեջ, արտացոլելով դարաշրջանի ոգին, որի դեմքը որոշում էր բնության ճանաչողության մեխանիկամաթեմատիկական մեթոդների հաղթական զարգացումը: Մինչդեռ նույնիսկ հարաբերականության տեսության և քվանտային մեխանիկայի ստեղծումից հետո և դրանց զարգացման մի քանի տասնամյակներ անց գիտական աշխարհը բազմիցս եղել է այնպիսի իրավիճակում, հիշեցնելով վհատության և հուսահատության այն իրողությունը, որը ուղեկցում է մեխանիցիզմի հավակնությունների մեկը մյուսին հաջորդած սնանկացումը:

Կեպլերյան-էյնշտեյնյան հիմնադրույթը բավարարելու համար (որը առաջացել է ոչ պատահականորեն և վերածնվել է բնագիտության պատմության մեջ տեղի ունեցած երկու մեծագույն հեղափոխությունների ժամանակաշրջաններում) պետք է քայլ առ քայլ բացահայտվի բնության ամենաբազմապիսի բնագավառների ու մակարդակների ավելի ու ավելի խոր փոխադարձ կապը և փոխպայմանավորվածությունը: Նման որոնումը, ավելի, քան երբևէ, բացահայտելով որոնվող փոխադարձ կապերի արտակարգ բազմապիսիությունը, դրա հետ մեկտեղ համոզում է այն բանում, որ դրանց նկարագրությունն ու բացատրությունը դաժան ու միանշանակ ձևով ակընհայտորեն դատապարտված են անհաջողության՝ այդ կապերը չափազանց ճկուն են և նույնիսկ, դատելով ամեն ինչից, փոփոխական են: Ն. Վիների, «կիբեռնետիկայի հոր» եզրակացությամբ, «աշխարհը ինչ-որ մի այնպիսի օրգանիզմ չէ, որն այնքան պինդ ամրացված լինի, որ աննշան փոփոխությունը նրա որևէ մասում միանգամից նրան զրկեր իրեն հատուկ առանձնահատկություններից, և այնքան էլ ազատ չէ, որ ամեն մի իրադարձություն կարողանար տեղի ունենալ նույնքան հեշտ ու ազատ, ինչպես ամեն մի այլ իրադարձություն... Դա Առաջադիմության, այլ ոչ թե վերջնական մեռյալ հավասարակշռության աշխարհ է, որին տանում է Առաջադիմությունը, և դա ամենևին այն աշխարհը չէ, որում բոլոր իրադարձությունները կանխորոշված են միայն Լայբնիցի երևակայության մեջ գոյություն ունեցող նախապես սահմանված ներդաշնակությամբ» (Н. Винер. Я— кибернетик. М., 1964. стр. 314).

Մտածողության ժամանակակից ոճի մեջ բախվում են և միավորվում, հակասությունների միասնության ձևով, Տիեզերքի (հավասարապես նաև հասարակության, կենսաբանական անհատների և այլն) «կարգուկանոն» ապահովող հաստատունության, կայունության որոնման հիմնադրույթը և այն բանի աճող գիտակցումը, որ «բնության մեջ ոչինչ չի պահպանվում. բնության մեջ չկա մշտականություն, որը չի կարելի զանցառել... փոփոխականությունը բնության օրենքն է» (F. A. Wheeler. From Relativity to Mtability. In: The Physicists Conception of Nature. Dordrecht—Boston. 1973, p. 202):

Կիբեռնետիկայի հիմնադիրներ Ն. Վիների և Լ. Բերթալանֆիի համար (որոնք այնքան մեծ ավանդ են ներդրել ժամանակակից գիտության, մտածողության նրա ոճի զարգացման գործում) որպես առավել բարդ ու միաժամանակ առավել հեռանկարային հետազոտական ծրագիր ներկայանում էր նեգատիվ հետադարձ կապի սինթեզը, որն ապահովում է ամեն մի համակարգի կայունությունը, ընդհուպ մինչև դեզօքսիռիբո-նուկլեինային թթուն (DNK) ԴՆԹ): Վերջինս իրականացնում է գենետիկ

կոդի փոխանցումը (բայց չի բացատրում կյանքի բուն ֆենոմենը) և պոզիտիվ հետադարձ կապի սինթեզը, որը թույլ չի տալիս պահպանել մշտականությունը, այն հատկապես բնորոշ է նաև կենդանի համակարգերի համար: Սակայն կիբեռնետիկական մոտեցումը, նույնիսկ բացահայտելով կապը համակարգերի կարգավորվածության բնույթի, էնտրոպիայի և ինֆորմացիայի միջև (որն ինքնին արդեն աչքի ընկնող քայլ էր գիտության ու տեխնիկայի զարգացման գործում), ի վիճակի չեղավ բացատրելու, թե ինչու ոչ մի կենդանի կապ չի կարող, ինչպես ցույց են տվել բարդ մոլեկուլյար գոյացումների մաթեմատիկական հետազոտությունները, առաջանալ պատահական կերպով, իսկ մյուս կողմից, թե ինչու բարդ համակարգերը (այդ թվում կենդանի համակարգերը) չեն կարող կատարյալ կայունության հասնել: Պահանջվում էր բացատրել ինքնանորացման պատճառները՝ բուն կառուցվածքի ամբողջականությունը պահպանելու պայմանով, որը բնորոշ է ինչպես կյանքի ֆենոմենի, այնպես էլ ֆիզիկական Տիեզերքի համապարփակ էվոլյուցիայի համար:

Պոլ Վալերին դեռ XX դարի սկզբին գրել է. «Երկու բան սպառնում է մարդկությանը՝ անկանոնությունը և կարգուկանոնը»: Նման իրավիճակը էլ ավելի մեծ չափով բնորոշ է քաղաքակրթության ժամանակակից իրողության համար՝ նրա նյութատեխնիկական և հոգևոր գործունեության բոլոր առումներով (ներառյալ և գիտությունը, արվեստը և այլն), և, մենք տեսնում ենք, նույնքան էլ բնորոշ է նաև ռացիոնալ կերպով կառուցված, շահերի ու կրքերի բախումից վեր բարձրացող բնության համար, գիտության կարևորագույն խնդիրը դարձնելով ամեն մի էվոլյուցիայի քննարկումը այնպիսի դինամիկայի մեջ, որը բացառում է երկու ծայրահեղությունները էլ՝ քարացած, անկենդան «կարգուկանոնը» և նույնքան էլ կործանարար քաոսը:

Ինչ վերաբերում է Տիեզերքի մասշտաբների էվոլյուցիային, ապա նրա մոդելների կառուցման գործում առավել մեծ բարդությունները այս կամ այն կերպ կապված են թերմոդինամիկայի երկրորդ սկզբունքի հետ, որի համաձայն ինքն իրեն թողնված ամեն մի պրոցես (փակ համակարգերում) բնութագրվում է էնտրոպիայի աճող անմամբ, որը վերջին հաշվով հանգեցնում է այսպես կոչված լիովին հավասարակշիռ, իսկ ավելի պարզ, քաոսային, ամորֆ վիճակների, լճացման: (Այս հետևությունն ընկած է նաև Տիեզերքի ջերմային մահացման տխրահռչակ տեսության հիմքում): Նույնպիսի վիճակների են հանգում դիֆունդացող գազերը և լքված քաղաքները, մեկուսացած կենսաբանական բնակեցումները և հասարակական սիստեմները:

Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ քաղաքակրթության ամբողջ նյութական և հոգևոր գործունեությունը, անցնելով կարգավորման, կազմակերպման (ոչ միշտ գիտակցված) ձգտումի նշանաբանով, ըստ էության, չընդհատվող (այլապես անխուսափելի կլիներ մարդկության կործանումը) հակաէնտրոպիական գործունեություն է:

Սակայն ինչպե՞ս կարող է բնությունը պայքարել էնտրոպիայի աճի դեմ: Պարզվում է, ճիշտ այնպես, ինչպես մարդկային հասարակությունը՝ անընդհատ ինքնակազմակերպման միջոցով: Էվոլյուցիայի նկատմամբ նման մոտեցման հիմնավորումն ու զարգացումը իրականացում են գտնում ինքնակազմակերպվող Տիեզերքի կոնցեպցիայի մեջ, որը, առանց չափազանցության, մտածողության ժամանակակից աճի առաջատար միտումների առավել վառ ներկայացուցիչն է: Այն ձևով, ինչպես ձևակերպվել է (և շարունակում է ձևակերպվել) այդ կոնցեպցիան, օրգանական միասնության մեջ սինթեզելով աստղագիտական, ֆիզիկական, կենսաբանական և նույնիսկ սոցիալական հետազոտությունների արդյունքները (ներառյալ և նրանց համար բնորոշ մեթոդոլոգիական հիմնադրույթները), կարող է համառոտակի բնութագրվել որպես էվոլյուցիայի համապարփակ կոնցեպցիա, որը ի մի է բերում տիեզերական, կենսաբանական և սոցիալական էվոլյուցիաները: Ընդսմին որպես էվոլյուցիայի առաջատար սկզբունք առաջադրվում է ինքնակազմակերպման սկզբունքը. ներհատուկ լինելով Տիեզերքի բոլոր հիերարխիկ մակարդակներին (մեգաաշխարհից մինչև միկրոաշխարհը, ներառյալ կյանքի, բանականության և մարդկային հասարակության առաջացումը), հենց նա է ապահովում այդ մակարդակների օրգանական միասնությունը (այդ թվում էվոլյուցիայի առումով՝ մակարդակների ներսում և նրանց միջև):

Ինքնակազմակերպման կոնցեպցիայի կիզակետում են գտնվում այսպես կոչված դիսսիպատիվ պրոցեսները, որոնք ուղեկցվում են էնտրոպիայի հեռացմամբ (էներգիայի և ինֆորմացիայի կլանման հաշվին) և, ինչպես պարզվում է վերջին տարիների հետազոտություններում, բնորոշ են Տիեզերքի բոլոր հիերարխիկ մակարդակներին: Էվոլյուցիայի հիմնական, հանգուցային կետերի պայմանավորվածությունը անհավասարակշիռ վիճակներով իրականացնում է ժամանակակից բնագիտական մտածողության (հատկապես բնական և կուլտուրայի ընդհանուր միտումների հունում նախապատրաստված) փոխարկումը կայունության որոնումներից, որին «պետք է» ձգտի Տիեզերքը, ավելի բարձր ուշադրության այն յուրատեսակ «փուլային անցումների» նկատմամբ, որոնցում Տիեզերքի էվոլյուցիայի ամենաբազմապիսի փուլերում և նրա



հիերարխիայի մակարդակներում համակարգերի ամբողջականությանը սպառնացող փոփոխությունների աճը դադարում է նոր կայունության, այսինքն՝ կազմակերպման նոր մակարդակի հասնելով: Բնական դինամիկայի ընդհանուր օրենքներ են դառնում «բացահայտությունը», պրոցեսի առաջնայնությունը կառուցվածքի նկատմամբ, այսինքն՝ կյանքի ու մարդկային հասարակության համար բնորոշ սկզբունքները, ըստ որում դինամիկ, մշտական փոխգործողությունների մեջ գտնվող կառուցվածքների գոյությունը տարրական մասնիկներից մինչև համապարփակ Տիեզերքը, ապահովվում է հենց այն ուժերի միջոցով, որոնք իրականացնում են այդ փոխգործողությունները:

Ինքնակազմակերպման կոնցեպցիան, բացահայտելով Տիեզերքի ընդլայնման անհավասարակշռության ելակետային արմատները, թույլ է տալիս ստեղծել Տիեզերքի էվոլյուցիայի մի շարք «սցենարներ», որոնցից յուրաքանչյուրը բնութագրվում է էվոլյուցիոն պրոցեսների բացառիկ փոխհամաձայնեցվածությամբ, անհրաժեշտության և պատահականության, կայունության և փոփոխականության դիալեկտիկական միասնությամբ, հավասարակշիռ և անհավասարակշիռ վիճակների այնքան նուրբ հաշվեկշռով, որ դա թույլ է տալիս անգամ խոսելու պայմանների և վիճակների յուրատեսակ «բնական ընտրության» մասին՝ նյութական աշխարհի ցանկացած մակարդակում: Ինքնակազմակերպվող Տիեզերքի կոնցեպցիայում խոսքն արդեն ոչ միայն համակարգերի զարգացման մասին է, այլ այն մասին, որ ինքն՝ այդ զարգացումը դիտենք որպես համակարգերի առաջացում (որում կազմակերպման մակարդակի բարձրացումը տեղի է ունենում ինքնակազմակերպման միջոցով՝ որպես մատերիայի ինքնաշարժման, ինքնազարգացման տեսակներից մեկը):

Տիեզերքի էվոլյուցիոն պրոցեսների ամենանուրբ հաշվեկշիռը կարելի է դիտել արդեն նրա առաջին «ակնթարթներից», և ապա թեթև միջուկների գոյացման, իսկ հետո ծանր էլեմենտների սինթեզի, աստղերի գոյացման և աստղերի մոտ սառող մարզերում՝ կյանքի հիմքում ընկած մոլեկուլների գոյացման պայմանների նկատմամբ: Նախապես ինքնավերարտադրվող բջիջների մակարդակով նման կառուցվածքների առաջացման հնարավորությունը, որպես ֆիզիկական աշխարհի տևական էվոլյուցիայի արդյունք, առաջանում է նախակենսաբանական մակարդակում ինֆորմացիայի հաղորդման շնորհիվ: Էլ ավելի կատարյալ մեխանիզմը, կազմակերպման ավելի բարձր մակարդակում, ապահովում է կյանքի վերարտադրությունը: Մեկ անգամ առաջանալով, կյանքը շարունակում է պայմաններ ստեղծել սեփական էվոլյուցիայի համար (տե՛ս М. Эйген, П. Шустер. Гиперцикл: проблемы самоорганизации макромолекул. М., 1982. Տե՛ս նաև «Философские проблемы биологии», с. 185).

Էական է, որ ինֆորմացիայի անշեղ աճը նման պրոցեսներում սերտորեն կապված է էնտրոպիայի հեռացման և էներգիայի կլանման հետ (որի համար որպես աղբյուրներ այժմ ավելի ու ավելի են հակված դիտելու «սև անցքերը»՝ որպես «սառեցրած էներգիայի» հսկայական ամբարներ, որոնք նման դեպքում դադարում են Տիեզերքի էվոլյուցիայի պատկերի մեջ «ավելորդ» դետալ լինելուց): Կարելի է ասել, որ կյանքի առաջացումը առավել էներգատար և հակահեէնտրոպիական պրոցեսն է Տիեզերքում տեղի ունեցող բոլոր պրոցեսներից: Ընդհանրապես, այն տեղը, որ ժամանակակից պատկերացումների լույսի ներքո գրավում է կյանքի առաջացումը, միանգամայն ապշեցուցիչ է:

Ինքնակազմակերպման կոնցեպցիայի համատեքստում կյանքը դիտվում է արդեն ոչ թե որպես գերկառուցվածք, որը կառուցվել է (գուցե, պատահականորեն) անկյանք ֆիզիկական աշխարհից վերև, այլ որպես դիսսիպատիվ պրոցեսների զարգացման օրինաչափ արդյունք, որոնցով միջնորդավորվում են անկենդան և կենդանի օբյեկտների աշխարհները: XX դարի վերջին արդեն բավարար վստահությամբ կարելի է կրկնել Վ. Ի. Վեռնադսկու՝ տասնամյակներ առաջ արտահայտած այն պնդումը, որ գիտական մտքի զարգացումը «առաջին անգամ թույլ է տալիս տիեզերքի խիստ գիտական կոնցեպցիայում տիեզերքի մեջ արժանի տեղը դնել կյանքի երևան գալը» (В. И. Вернадский. Размышления натуралиста. Научная мысль как планетное явление. М., 1977, с. 36).

Դիսսիպատիվ պրոցեսներով միջնորդավորված միկրո և մակրո երևույթների կոէվոլյուցիոն առումով է ներկայանում նաև գիտակցության առաջացումը: Սա նույնպես հանդիսանում է այն դինամիկ պրոցեսների ինքնակազմակերպման արդյունք, որոնք բնութագրում են համակարգը և նրա հարաբերությունը շրջապատի հետ: Նույնքան օրինաչափորեն էլ ինքնակազմակերպման սկզբունքները տարածվում են նաև մարդկային հասարակության բնապատմական առաջացման վրա:

Անկասկած, վճռական նշանակություն պետք է ունենա ինքնակազմակերպման կոնցեպցիայի ընդունակությունը՝ բացատրելու, թե Տիեզերքի էվոլյուցիայի հնարավոր ճյուղավորումների սպեկտրից ինչպես է քայլ առ քայլ իրականացվել այն պարամետրերի այն նեղ միջանցքը, որոնք անհրաժեշտ են կյանքի առաջացման համար (ընդլայնվող Տիեզերքի համապարփակ պայմաններից մինչև երկրային

ձգողականության, արեգակնային հողմի ինտենսիվության, երկրային ջերմաստիճանի ու խոնավության գրադիենտի, մթնոլորտի բաղադրության հաշվեկշիռը և այլն): Թվալով գրեթե որպես միստիկական, Տիեզերքի էվոլյուցիայի այդպիսի գիծը ինքնակազմակերպման կոնցեպցիայում բացատրվում է այնպես, որ ոչ թե Տիեզերքի պայմաններն էին դասավորվում այն միակ կերպով, որ ապահովեն կյանքի ու բանականության առաջացումը, Լայբնիցի արտահայտությամբ, այս «աշխարհներից լավագույնում», այլ ընդհակառակը, ինքը՝ մեր գոյությունը հնարավոր է եղել որպես ֆիզիկական կառուցվածքների տևական էվոլյուցիայի, յուրատեսակ «զոնդավորման» ու «բնական ընտրության» արգասիք, անընդհատ փոփոխվող տիեզերաբանական պայմաններին նրանց հարմարեցման արգասիք: Ավելին, հիմքեր կան խոսելու կոէվոլյուցիայի մասին, Տիեզերքի և նրա մեջ առաջացող կառուցվածքների համապարփակ պայմանների մշտական փոխազդեցության մասին: Ջ. Ուիլերը գրում է. «Տիեզերքի ապագան փոխվում է. մենք փոխել ենք այն: Այժմ մենք պետք է ջնջենք «դիտորդ» հին բառը և այն փոխարինենք նոր՝ «գործակից» բառով: (A. Patton, J. A. Wheeler. Is Phisics Legislated by Cosmology? In: Quantum Gravity. Oxford, 1975, p. 562):

Էվոլյուցիայի նկատմամբ նման հայացքը առանձնապես օրգանական է քաղաքակրթության զարգացման ժամանակակից փուլի համար, երբ տեղի է ունենում կենսոլորտի սըրընթաց վերածում նոոոլորտի, և մարդը դառնում է մոլորակային մասշտաբի վճռական ուժ, որը որոշում է մեր մոլորակի էվոլյուցիան»: Հատկապես պետք է ընդգծել, որ ինքնակազմակերպման կոնցեպցիայով ժամանակակից բնագիտությունը անհամեմատ ավելի բարձր մակարդակով է հասնում բնագիտական բացատրության անխախտ իդեալին. ինչպես Է. Յանչն է գրում, «այն աշխարհում, որն ինքն է իրեն կերտում, տեղ չկա արարիչ աստծու համար, ինչպես նաև աշխարհից վեր կանգնած գաղափար-աստծու համար: Աստվածությունն է հանդիսանում համակարգերի ինքնակազմակերպման սկզբունքը բոլոր մակարդակներում» (մեջբերումը ըստ. Глобальные проблемы современности и будущее человечества. стр. 328).

XX դարի վերջին օրինաչափ է խոսել ժամանակակից մտածողության մեջ, արդեն գիտական մակարդակով, Տիեզերքի վերաբերյալ խորապես դիալեկտիկական անտիկ պատկերացումների չափազանց հետաքրքրական վերածննման մասին, որի բուն հասկացությունն ուներ համաչափության, փոխհամաձայնեցվածության, կոու կառուցվածության, կարգուկանոնի, գեղեցկության, նպատակահարմարության, խելացիության, կատարելության իմաստ:

Հին հույները նման Տիեզերքի մեջ ներառնում էին նաև մարդուն և հասարակությանը: Նույն բանն է պահանջում նաև ժամանակակից գիտության մտածողության ոճը, որը ինքնակազմակերպման սկզբունքները հավասարաչափ տարածում է տիեզերաբանական, կենսաբանական և սոցիալ-կուլտուրական էվոլյուցիայի վրա, որում «էպիգենետիկ զարգացումը հիմնված է ինֆորմացիայի շարժական ու ընտրովի օգտագործման վրա, գերակշռում է գենետիկ էվոլյուցիայի դերին և առաջ անցնում նրանից»: Հենց առավել բարձր համակարգերում, իսկ ամենից ավելի բարձըր աստիճանով՝ հասարակության մեջ (որը առանձնապես գիտակցվում է հենց այժմ), ստեղծվում է դինամիկ կայունության այն տիպը, երբ կառավարումը կարող է ապահովվել «հրամաններով» ոչ միայն «վերից՝ վար», այլև «վարից՝ վեր», իսկ ինքնակազմակերպումը հնարավոր է միայն բոլոր մակարդակներում ինքնավարության ուժեղացման շնորհիվ: Հենց ինքնակազմակերպման սկըզբունքը թույլ է տալիս հաղթահարել մատերիայի և ոգու, բնության և կուլտուրայի դուալիզմը. «դրանց հիմքում ընկած է Տիեզերքի ծնունդից սկսված միասնական պրոցեսը» (Глобалные проблемы современности и будущее человечества, с. 285).

Մեր օրերում մենք դառնում ենք կուլտուրայի անչափ հետաքրքիր շրջապտույտի ականատեսներ ու մասնակիցներ: Եթե հին մտածողության մեջ գոյություն ուներ «անգիտակցական պրոյեկցիա հասարակական իրավակարգի բնության նկատմամբ» (Ֆ. Կեսսիդի), իսկ նոր ժամանակի կուլտուրայում, ընդհակառակը, մեխանիստական սկզբունքները փոխադրվում էին ոչ միայն բնության ամեն տեսակ երևույթների վրա, այլև հասարակության վրա, ապա ժամանալակից մտածողության համար բնական է դառնում բնական և հասարակական էվոլյուցիայի սկզբունքների քըննումը արդեն խորապես օրգանական, համապարփակ միասնության մեջ, որը ընդհանուր ոչինչ չունի մեխանիկական փոխադրման հետ:

Գիտության ամենաբազմապիսի բնագավառներում անչափ լայն կոմպլեքսի հետազոտությունների համար բացվող ողջ հսկայածավալ հեռանկարներով հանդերձ, ինքնակազմակերպվող Տիեզերքի կոնցեպցիան սրընթացորեն անող հետաքրքրության կիզակետում հայտնվեց նա և զուտ բնագիտական սահմաններից դուրս ընկած պատճառներով՝ հենց ժամանակակից կուլտուրայի ավանդույթների մեջ նրա «ներգրվածությամբ», դրանց հետ սերտ փոխադարձ կապով և փոխպայմանավորվածությամբ: Կարծես «բնագիտությունը պրոյեկցելով ժամանակակից ալեկոծվող ու փոփոխական աշխարհի վրա՝ նրա անկայունությամբ ու անհավասարակշռությամբ» (О. Тоффлер. Наука и изменение. В кн: И. Пригожин, И. Стенгерс. Порядок из хаоса. с. 33). ինքնակազմակերպվող Տիեզերքի կոնցեպցիան միևնույն ժամանակ առաջին անգամ գիտական մակարդակով մարդուն է վերադարձնում կորցրած միասնությունը բնության հետ, որը հրամայական անհրաժեշտություն է դառնում գիտության, ողջ կուլտուրայի համար, ամբողջ հասարկության համար XX դարի հենց վերջին:

Մեր օրերում, երբ տեղի է ունենում հասարակական գիտակցության յուրատեսակ «տիեզերականացում», իսկ Տիեզերքը նորից սկսում է մեզ ներկայանալ ոչ թե որպես մի արտաքին և մարդուն հակադիր բան, մարդկությունը հայտնվում է բնության նկատմամբ նոր վերաբերմունքի, բնության մասին գիտությունների խնդիրների, նպատակների ու միջոցների, հավասարապես նաև նրա վրա ներգործելու հետ կապված մարդկային գործունեության խոր վերաիմաստավորման անհրաժեշտության առջև: Իր առաջադիմության ու բարգավաճման հույսերը ավելի ու ավելի շատ կապելով գիտության ու տեխնիկայի առաջադիմության հետ, մարդկությունը XX դարի վերջին սկսում է նկատել ոչ միայն գիտատեխնիկական առաջադիմության մեծագույն նվաճումները, այլև շատ տագնապալի այն երևույթները, որոնք խախտում են բնության ու մարդու նրբագույն հաշվեկշիռը, սպառնում են քաղաքակրթությանը, երբ գիտության ու տեխնիկայի նվաճումները մարմնավորվում են սպառազինությունների հրեշավոր մրցավազքի մեջ, սպառում ու աղտոտում են շրջակա միջավայրը ընդհուպ մինչև տիեզերական մասշտաբները, պատճառ դառնում նոր հիվանդությունների, հնարավորություններ են ստեղծում, որ բնության ահեղ ուժերը դուրս գան վերահսկողությունից, նոր տեխնոլոգիաների կողմից ջինի նման դուրս նետվելով մատերիայի ընդերքից: Հարաճուն տագնապ են առաջացնում մարդու յուրատեսակ ճնշումն ու ստրկացումը տեխնիկայի կողմից, հոգևոր այն ճգնաժամը, որով ուղեկցվում է գիտատեխնիկական առաջադիմությունը:

Ավելի ու ավելի հրատապ ու ոչ տրիվիալ են դառնում առաջադիմության իմաստի ու նրա գնի հարցերը, որոնք չափազանց միանշանակորեն կապվում են տեխնիկայի զարգացման հետ: XX դարի վերջում միայն մարդկությունը սկսում է քաղել ներդաշնակության անտիկ իդեալից մեծամտորեն հրաժարվելու դառը պտուղները, իդեալ, որը մարդուց և հասարակությունից պահանջում էր իրենց ապրելակերպը ներդաշնակ դարձնել բնության հետ. Եթե դեռ XVII դարի սկզբին («Գիտնականների հանրապետություն») պահպանվում էր բնության՝ որպես «բարձրագույն խրատատուի, դաստիարակների դաստիարակի» (Ռ. Բոյլի ձևակերպումն է) «պրուդենցիայի» հիմնադրույթը, ապա հետագայում այն, թվում էր անվերադարձ կերպով, փոխարինվեց բնության նկատմամբ, նրա ճանաչման ու օգտագործման նկատմամբ սպառողական վերաբերմունքով: Համենայն դեպս, վերջին երկու հարյուրամյակում «սովորել բնությունից» նշանաբանը արդեն դարձել էր անհուսալի, անպարկեշտության աստիճանի ժամանակավրիպում, դիցաբանական մտածողության ռեցիդիվ. մարդը ոչ թե սովորում է բնությունից, այլ ուսումնասիրում է այն, որպեսզի դառնա նրա տիրակալը. հենց բնությունը պետք է ենթարկվի ու ծառայի մարդուն, և այն էլ այնպես, որ իր գոյության առաջին իսկ օրերից հասարակությունը բառացիորեն «կողոպտում է» բնությունից այնքան, որքան կարող է (ընդսմին հենվելով գիտության վրա, բայց նրա բացառապես աճած հնարավորությունների մեջ ամենևին չորոնելով միջոցներ՝ բնության հետ հասնելու իսկական ներդաշնակության):

Նման մոտեցման վնասներն առանձնապես շոշափելի են այժմ, երբ ամբողջ մարդկության համար առավել առաջնահերթ նշանակություն է ստանում այն հարցը, թե ինչպես ապրել ու գոյատևել այս աշխարհում (պահանջելով իրեն ենթարկել և իր հետ հարաբերակցել այն հարցը, թե ինչպես ուսումնասիրել աշխարհը): Նորագույն պատմության մեջ առաջին անգամ, ըստ որում ոչ միայն քաղքենիական միջավայրում, այլև փիլիսոփաների ու գիտնականների շրջանում, այդ թվում նույնիսկ բնախույզների շրջանում, նկատվում են ժամանակակից դարաշրջանի առանձնահատկություններով պայմանավորված հակագիտական տրամադրությունների առաջացում ու աճ (որոնք երբեմն արտահայտվում են նույնիսկ բնագիտության մի շարք բնագավառներում հետազոտությունների մորատորիում հայտարարելու անհույս կոչերի մեջ):

Կարելի է պնդել, սակայն, որ, բոլոր անխուսափելի ծայրահեղություններով հանդերձ, գիտական և հասարակական գիտակցության մեջ սկսված տեղաշարժերը ծառայում են այն խնդիրներին, որոնք այժմ կանգնած են մարդկության առջև, նրա իղձերին ու կենսական պահանջմունքներին: Գիտության մեջ և կուլտուրայում սկսված նոր ավանդույթների կարևորագույն դրական արդյունքն այն է, որ դրանք բառացիորեն ստիպում են ուշադիր դիտել և ականջ դնել բնությանը, որը «մեզ հետ խոսում է հազարավոր ձայներով», խըստագույնս նախազգուշացնելով դրա հետ միասին, որ բնության յուրացումը հնարավոր է ոչ

թե որպես «ճնազանդեցում», այլ իբրև մի պրոցես, որը ենթադրում է նրա խոր ըմբռնում, կոնստրուկտիվ երկխոսություն և կոէվոլյուցիա նրա հետ: Առաջին անգամ ինչպես հարկն է գիտակցվում է, թե բնության ինչպիսի պարգև է կյանքը, որքան խոր ուշադրություն է պահանջում մարդը՝ որպես բնության մի մասը և հասարակության մասը:

Արդի դարաշրջանի մտածողության ընդհանուր ոճի մեջ կատարվող տեղաշարժերը օրգանապես հանգեցնում են այսպես կոչված երկու կուլտուրաների (Չ. Սնոու)՝ «սցիենտիստական» («գիտական») և «հումանիտար» կուլտուրաների միջև եղած խզումը հաղթահարելուն, որ նրանք տալիս են հետազոտական հիմնադրույթներով, բնագիտական «բացատրության» և հումանիտար «ըմբռնման» միջև եղած խզումը հաղթահարելուն: Այժմ սկսվում է մի պրոցես, երբ բնագիտությունը, որը մի քանի դար շարունակ իդեալներ ու նորմաներ, ռացիոնալության ստանդարտներ էր թելադրում կուլտուրայի բոլոր բնագավառներում, դրանք հակադրելով հումանիտար գիտությանը, ավելի ու ավելի օրգանապես է ներծծում և ասիմիլացնում մտածողության «հումանիտար» ոճը, միաժամանակ հարստացնելով այն:

Դեռ անցյալ դարում Կ. Մարքսը զարմանալի խորաթափանցությամբ գրում էր այն մասին, որ ժամանակի ընթացքում «բնագիտությունը իր մեջ կընդգրկի նաև գիտությունը մարդու մասին. դա կլինի միասնական գիտություն» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 42, с. 124): Այս հանճարեղ կանխատեսումը, որի իրականացման ուղիները նախանշել է ինքը՝ դիալեկտիկական մատերիալիզմի փիլիսոփայության հիմնադիրը, սկսում է իրականանալ մեր օրերում, XX դարի վերջին, պայմանավորված լինելով ոչ թե պարզապես գիտության աճած հնարավորություններով, այլև կուլտուրայի ողջ կոմպլեքսում, ամբողջ հասարակական կյանքում բնապատմականորեն հասունացած փոփոխություններով:

Ժամանակակից ամբողջ կուլտուրայի հետ ինքնակազմակերպման կոնցեպցիայի ունեցած օրգանական կապի վկայությունն է նաև այն, որ դրանում զարգացվող սկզբունքները, բնագիտական տեսակետից նրանց ունեցած բացառիկ ինքնարժեքից բացի, կարող են նույնքան էլ արժեքավոր լինել, և ամենևին էլ ոչ հեռավոր հեռանկարում, այլ գործնական առումով, անչափ լայն շրջանի երևույթները ուսումնասիրելու և իմաստավորելու համար՝ արվեստի զարգացումից մինչև «քաղաքների աճը, մինչև էկոլոգիան, նեյրոֆիզիոլոգիան և մանրէաբանությունը, մենթալային պրոցեսների դինամիկան, ներառյալ պարադիգմաների, արժեքների համակարգերի փոփոխումը և այլն» (Глобальные проблемы современности и будущее человечества, с. 318).

Հատկապես պետք է ընդգծել, որ, ինքնակազմակերպվող Տիեզերքի կոնցեպցիայի այս կամ այն, նույնիսկ էական «տիեզերական» մանրամասների արդարացումից անկախ, նրանում զարգացվող բուն սկզբունքների իմաստավորումը պետք է անչափ արդյունավետ լինի էկոնոմիկայի կազմակերպման, գիտության ու արտադրության կառավարման, ավելին, հասարակական կազմակերպման և ողջ հասարակական կառավարման զարգացման գործում: Մասնավորապես, արդեն այժմ կարելի է նկատել անպիսի միտումներ, ինչպես կանխատեսման միաձուլումն է պլանավորման հետ, հնարավորությունների որոնումը, որպեսզի անցում կատարվի «խիստ ինդուստրիալ հասարակությունից՝ էներգիայի, կապիտալի ու աշխատանքի՝ նրա համար բնորոշ վիթխարի ծախսումների հետ, դեպի բարձր զարգացած տեխնոլոգիա ունեցող հասարակություն, որի համար կրիտիկական ռեսուրսներ են հանդիսանում ինֆորմացիան և տեխնոլոգիական նորամուծությունները»: Բնական և հասարակական պրոցեսների միասնության մեջ նրանց «ինքնաշարժման» սկզբունքների ներթափանցման ուղիներում է հնարավոր այնպիսի հասարակության իրականացումը, որում մարդու բնական կեցությունը «նրա համար դառնում է մարդկային կեցություն» և որը «բնության հետ մարդու ավարտուն էական միասնությունն է, բնության իսկական վերածնունդը, մարդու իրականացված նատուրալիզմ և բնության իրականացված հումանիզմ» (К. Маркс. Ф. Энгельс. Соч., т. 42. с. 118).



# ՎԱՇԻՆԳՏՈՆՅԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ. ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ ԵՎ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

**Վ. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ**

Մարդկության տարեգրության մեջ շրջվեց ևս մի էջ: Պատմության գիրկն անցավ 1987 թվականը: Միջազգային իրադարձությունների առումով, ի դեպ, նաև մյուս բոլոր բնագավառներում, այն բնավ միանշանակ չէր: Շարունակվում էին ռազմական բախումները երկրագնդի շատ շրջաններում՝ Մերձավոր Արևելքում, Կենտրոնական Ամերիկայում, Հարավարևելյան Ասիայում, Աֆրիկայի հարավում, Աֆղանստանում, արդեն քանի տարի չի դադարում իրանա-իրաքյան պատերազմը: Անցած տարում ծագեցին նաև առճակատման իրադրության նոր օջախներ՝ էթնիկական ընդհարումները Շրի Լանկայում, բախումները Ֆիլիպիններում և ֆրանսիական մի շարք գաղութային տիրույթներում: Մի խոսքով, մեր բազմաչարչար հողագնդի վրա շարունակվում էր թափվել մարդկային արյունը:

Մյուս կողմից էլ, առանձին կոնֆլիկտների սրությունը սկսեց նվազել, որոշ տեղերում երևան եկան զինված հակամարտության դադարեցման հույսի նշաններ: Քաղաքական համաձայնության հասնելու նպատակով Աֆղանստանի, Նիկարագուայի և Կամպուչիայի կառավարությունները կարևոր քայլեր ձեռնարկեցին, որոնք արժանացան ոչ միայն այդ երկրների ժողովուրդների, այլև ամբողջությամբ վերցրած միջազգային ընկերակցության լայն հավանությանը: Բայց եթե Կամպուչիայում քաղաքական հաշտության իմաստով արդեն կարելի է խոսել առաջին շոշափելի արդյունքների մասին, ապա Աֆղանստանում և Նիկարագուայում զանազան հակահեղափոխական տարրերի դիմադրության պատճառով, որոնց ակտիվորեն պաշտպանում են ամերիկյան իմպերիալիզմի հետադիմական շրջանները, այդ երկրներում իրադրության նորմալացման ընթացքը ակնհայտորեն չի համընկնում ՄԱԿ-ի կանոնադրության և այդ պետությունների ժողովուրդների կենսական շահերին համապատասխան վեճերի քաղաքական կարգավորման պահանջներին:

1987 թվականին իրադարձությունները չափազանց ակտիվ կերպով էին ծավալվում դիվանագիտական թատերաբեմում: Նույնիսկ դժվար է թվարկել այն բոլոր բազմակողմ միջազգային կոնֆերանսները, որոնց օրակարգերում դրված էին մեր ժամանակների ամենազանազան պրոբլեմները՝ զինաթափում, տնտեսական համագործակցություն, շրջակա միջավայրի հարցեր, սովի ու հիվանդությունների վերացում, թմրամոլության դեմ պայքար և այլն: Ինչ վերաբերում է բոլոր երկկողմ բանակցություններին ու պետությունների ղեկավարների հանդիպումներին, ապա դրանց լրիվ թվարկումը պարզապես անհնար է:

Նմանապես խիստ դժվար է որևէ միանշանակ գնահատական տալ միջազգային այդ երկխոսությունների արդյունքներին: Եղան և հաջող կոնֆերանսներ ու բանակցություններ, որոնց մասնակիցները կարողացան հասնել փոխադարձորեն ընդունելի որոշումների, և դրանց շարքին ամենից առաջ պետք է դասել միջին ու փոքր հեռահարության հրթիռների վերաբերյալ սովետա-ամերիկյան բանակցությունները: Եղան և այնպիսիք, որոնց մասնակիցները շարունակում էին պարզապես ջուր ծեծել. այդպես էին, օրինակ, Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի ու սպառազինությունների կրճատման վերաբերյալ բանակցությունները, որ ահա 15 տարի վարվում են Վիեննայում: Միջազգային կյանքի խայտաբղետության մասին վկայում է թեկուզ հենց այն փաստը, որ ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի 42-րդ նստաշրջանի օրակարգում մոտ 250 հարց էր դրված:

Եվ այնուամենայնիվ, ըստ էության համընդհանուր կարծիքով, որ հենվում է շատ

ԻՍՐԱՅԵԼՅԱՆ Վիկտոր Լևոնի— *պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ՍՍՀՄ արտակարգ ու լիազոր դեսպան*

երկրների հասարակայնության հարցման վրա, անցած տարվա ամենանշանավոր դիվանագիտական իրադարձությունը ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ղեկավարների՝ Մ. Ս. Գորբաչովի և Ռ. Ռեյգանի՝ 1987 թ. դեկտեմբերի 7—10-ը Վաշինգտոնում կայացած հանդիպումն էր:

Հարկ է հիշեցնել, որ սովետա-ամերիկյան ամենաբարձր մակարդակի հանդիպումները արդեն բավական պատմություն ունեն: Վաշինգտոնյան այս հանդիպումը թվով 14-րդն էր: Պատերազմի տարիներին Ռուզվելտի և Տրումենի հետ երեք անգամ բանակցություններ է վարել Ստալինը, պրեզիդենտներ Էյզենհաուերի և Քենեդիի հետ երեք անգամ հանդիպել է Խրուշչովը, Նիքսոնի, Ֆորդի և Քարտերի հետ հինգ անգամ բանակցել է Բրեժնևը և, վերջապես, Մ. Ս. Գորբաչովի ու Ռ. Ռեյգանի հանդիպումները, որ տեղի ունեցան 1985 թվականին՝ Ժնևում, 1986 թվականին՝ Ռեյկյավիկում և 1987 թվականին՝ Վաշինգտոնում:

Որպես պատմաբան, ես ուշի-ուշով ուսումնասիրել եմ այդ բոլոր հանդիպումների բովանդակությունը՝ ըստ դրանց մասնակիցների հուշագրությունների, փաստաթղթերի և այլ նյութերի, իսկ դրանցից երկուսին (1973 և 1974 թթ.) ինձ վիճակվեց մասնակցել իբրև դիվանագետ: Այդ հանդիպումներից ոչ մեկը նման չէ մյուսին: Շատ բան որոշվում էր այն միջազգային իրադրությամբ, որի պայմաններում դրանք ընթանում էին, հարցերի այն շրջանակով, որ դրանցում քննարկվում էին և, վերջապես, դրանց մասնակիցների բնավորությամբ, անձնական հատկանիշներով: Ստալինը, օրինակ, Ռուզվելտի հետ իր զրույցներում կարճ ու կտրուկ էր, արտաքուստ բավական զուսպ և չոր, իր դատողություններում մերթ ընդ մերթ խիստ, երբեմն էլ՝ կոպիտ: Իսկ Խրուշչովը երկարաբան էր, զգացմունքային, բռնկվող:

Իհարկե, բնավ միանշանակ չէին նաև մեր ղեկավարների զրուցակիցների՝ Ռուզվելտի, Տրումենի, Էյզենհաուերի, Նիքսոնի, Ֆորդի, Քենեդիի, Ջոնսոնի, Քարտերի և Ռեյգանի քաղաքական մտածողությունն ու բնավորությունները: Այդ ամենը, անշուշտ, որոշակի դեր խաղաց ամենաբարձր մակարդակի բանակցություններում:

Նկատի առնելով, որ խոսքը վերաբերում է աշխարհի երկու ամենահզոր երկրների ղեկավարների հանդիպմանը, դրանցից ամեն մեկը քաղաքական գործիչների, ժուռնալիստների ու քաղաքագետների մատուցմամբ անմիջապես մկրտվել է իբրև «համաշխարհային-պատմական», «դարակազմիկ», «համագործակցության անսահման հեռանկարներ բացող» և այլն:

ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի ու Ֆրանսիայի կառավարությունների ղեկավարների 1955 թ. Ժնևի բանակցություններից հետո քաղաքական բառարանում նույնիսկ ի հայտ եկավ «Ժնևի ոգի» արտահայտությունը, իսկ Քեմպ Դևիդում 1959 թվականին Խրուշչովի և Էյզենհաուերի հանդիպումներից հետո՝ «Քեմպ Դևիդի ոգի» արտահայտությունը: 1974 թ. սովետա-ամերիկյան ամենաբարձր հանդիպման եզրափակիչ համատեղ կոմյունիկեն իր հերթին ազդարարում էր «սովետա-ամերիկյան հարաբերությունների արմատական բարելավման վերցված կուրսը շարունակելու փոխադարձ վճռականություն»: Հանդես գալով ԱՄՆ-ի պրեզիդենտի պատվին տրված ճաշկերույթին՝ Լ. Ի. Բրեժնևը այն ժամանակ հույս հայտնեց ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև հարաբերությունների բարելավման «անշրջելի բնույթի» կապակցությամբ:

Բայց ժամանակն անցնում էր, և պատմությունը մերթ ընդ մերթ իր շտկումներն էր մտցնում հիացական, չափազանցված այդ գնահատականներում:

Սովետա-ամերիկյան հանդիպումներից մի քանիսի մասին այժմ կարելի է տեղեկանալ միայն միջազգային հարաբերությունների դասագրքերից (ասենք, դրանց որոշ մասն էլ լռությամբ շրջանցվում են՝ անցյալի մեր այն քաղաքական ղեկավարների անունների հիշատակումից խուսափելու համար, որոնց վրա արգելք էր դրվում): «Ոգիները», որ հնարամիտ ժուռնալիստների պնդմամբ ծագում էին այդ հանդիպումների կապակցությամբ, արագորեն չքանում էին, ինչպես որ դա, ի միջի այլոց, պատահում է բոլոր ոգիների հետ: Նույնիսկ այդ հանդիպումների ընթացքում ստորագրված մի շարք կարևոր համաձայնագրեր կամ չվավերացվեցին (ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման 1979 թ. պայմանագիրը), կամ էլ ներկայումս հարցականի տակ են դրվում (հակահրթիռային պաշտպանության 1972 թ. պայմանագիրը):

Ինչպե՞ս պետք է այս ամենի լույսով գնահատել Ռ. Ռեյգանի հետ ԱՄՆ-ում Մ. Ս. Գորբաչովի ունեցած հանդիպման բնույթը, բովանդակությունն ու արդյունքները: Ամենից առաջ հարկ է նշել, որ վաշինգտոնյան հանդիպմանը նախորդեց տևական, տքնաջան մեծ աշխատանքը ամենատարբեր մակարդակներում: Ժնևում գործնականորեն անընդմեջ բանակցություններ էին վարվում սովետական ու ամերիկյան պատվիրակությունների միջև, որոնք ջանում էին միջազգային համաձայնությունների լեզվի փոխադրել 1985 թվականին Ժնևում և 1986 թվականին Ռեյկյավիկում Մ. Ս. Գորբաչովի և Ռ. Ռեյգանի հանդիպումներում ձեռք բերված սկզբունքային պայմանավորվածությունները: ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի արտաքին գործերի մինիստրները մի շարք զրույցներ ունեցան Մոսկվայում, Վաշինգտոնում, Նյու Յորքում, Ժնևում, որոնք թույլ տվեցին հաղթահարել պատվիրակությունների բանակցությունների ընթացքում ծագած մի շարք սուր հարցեր: Երկու երկրների ղեկավարները այդ ամբողջ ժամանակաշրջանում անմիջական կոնտակտներ էին պահպանում, անձնական ուղերձներ փոխանակում:

Վերջապես, վաշինգտոնյան հանդիպման անցկացմանը նշանակալի չափով նպաստեց Սովետական Միության և ԱՄՆ-ի ժողովուրդների երկխոսության փոփոխված բնույթը: Այդ երկխոսության ընթացքում համաշխարհային քաղաքականության շատ առանցքային հարցերի նկատմամբ դրսևորվեց ընդհանուր մոտեցում: Այսպես, օրինակ, ՍՍՀՄ-ում և ԱՄՆ-ում հասարակական կարծիքի վերջին հարցման արդյունքները վկայում են, որ սովետական մարդկանց ինը տասներորդը և ամերիկացիների չորս հինգերորդը համոզված են, որ համընդհանուր ջերմամիջուկային պատերազմում հաղթողներ չեն լինի և որ նրանում երկու երկրներն էլ ամբողջովին կոչնչանան: Ամերիկացիների և սովետական մարդկանց նշանակալի մեծամասնությունն արտահայտվում է երկու երկրների միջև կոնտակտների ընդլայնման օգտին:

Վաշինգտոնյան հանդիպման նախօրեին Մ. Ս. Գորբաչովը հաղորդեց, որ ինքը 1987 թվականին ամերիկացիներից ստացել է 80 հազար նամակ. նրանց մեծ մասը դրանցում կարծիքներ ու առաջարկներ են հայտնել խաղաղության ու պատերազմի, միջուկային զենքի վերացման հարցերի շուրջ: «Այն, ինչ ինձ, Սովետական Միության կառավարությանը, մեր ժողովրդին ուղղած իրենց նամակներում ասում են ամերիկացիները,— նշում է Մ. Ս. Գորբաչովը,— շատ հասկանալի ու մոտ է մեր ժողովրդին, սովետական բոլոր մարդկանց: Ես դրանում տեսնում եմ այնպիսի իրադրության ծագումը, որը թույլ է տալիս, իսկ գուցե նաև պարտավորեցնում է մեր երկու կիթխարի պետությունների քաղաքագետներին՝ փորձել ըմբռնել մեր ժողովուրդների տրամադրությունները և մեր քաղաքականության մեջ արտահայտել նրանց կամքը»: Արդի համաշխարհային իրադրության առթիվ մտահոգությամբ համանման ուղերձներ են հասցեագրվել նաև պրեզիդենտ Ռեյգանին:

Վաշինգտոնյան հանդիպման կարևորագույն արդյունքը ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև միջին ու փոքր հեռահարության նրանց հրթիռների վերացման մասին պայմանագրի ստորագրումն էր: Մ. Ս. Գորբաչովը և Ռ. Ռեյգանը իրենց ստորագրությունները դրեցին մեծածավալ մի փաստաթղթի տակ: Այն բաղկացած է բուն պայմանագրից, հուշագրից և երկու արձանագրությունից, որոնց ընդհանուր ծավալն անցնում է 200 էջից: Միջին և փոքր հեռահարության հրթիռների վերաբերյալ պայմանագրին համապատասխան պետք է վերացվեն 1000-ից մինչև 5000 կմ (ՄՀՀ) և 500-ից մինչև 1000 կմ (ՓՀՀ) հեռահարության հրթիռները: Սովետական Միությունը կոչնչացնի ինչպես ծավալված, այնպես էլ պահեստային պահպանության մեջ գտնվող երկու կարգի շուրջ 2000 հրթիռ, ԱՄՆ-ը՝ շուրջ 850: Ինչ վերաբերում է միջուկային մարտագլխիկներին, ապա ՍՍՀՄ-ը կվերացնի մոտավորապես 2500 միավոր, ԱՄՆ-ը՝ 689:

Այս առնչությամբ անխուսափելի հարց է ծագում՝ ինչո՞ւ սովետական կողմը համաձայնեց ավելի քան երկու անգամ շատ միջին ու փոքր հեռահարության հրթիռներ վերացնել, քան ամերիկյանն է: Արդյո՞ք դա վնաս չի հասցնի Սովետական Միության անվտանգության շահերին: Արդյո՞ք դա հիմք չի տա ամերիկացիներին՝ առաջիկայում ևս ձգտելու համանման «անհամաչափ» կրճատումների: Այդ հարցերին պատասխանելիս հարկավոր է նկատի ունենալ, որ միջին և փոքր հեռահարության հրթիռների վերացման պայմանագրի համաձայն ոչնչացման ենթակա են ամերիկյան հրթիռները, որոնք տեղակայվել են այն շրջաններում, որտեղից դրանք կարող են 6—8 րոպե թռիչքաժամանակում հարվածել մեր երկրի վճռական կենտրոններին, այն դեպքում, երբ միջին հեռահարության սովետական հրթիռները մինչև ԱՄՆ չեն կարող թռչել: Այսպիսով, նույնիսկ սովետական ավելի նշանակալի կրճատումների դեպքում Սովետական Միության անվտանգության շահերը չեն տուժում, այլ ավելի շուտ շահում են: Ինչ վերաբերում է ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրի, Միացյալ Նահանգների և Սովետական Միության զինված ուժերի կառուցվածքում եղած անհամաչափությանը, ապա այն, իրոք, գոյություն ունի: Սակայն, այդուհանդերձ, նրանց միջև ստեղծվել է զինված ուժերի մոտավոր հավասարակշռություն: Իհարկե, այդ հավասարակշռությունը չի կարելի որոշել դեղագործական ճշգրտությամբ և դա չի նշանակում, թե զինված ուժերի ու սպառազինությունների բոլոր տեսակներով կողմերի քանակական ու որակական ցուցանիշները լրիվ համընկնում են: Բնականաբար, կողմերից յուրաքանչյուրի ռազմական պոտենցիալն ունի իր բաղադրատարրերը, որոնք սահմանվում են տարբեր գործոնների մի ամբողջ կոմպլեքսով, որոնցից յուրաքանչյուրն ունի իր առանձնահատկությունները:

Բացառիկ դժվար խնդիր է տարբեր կողմերի ռազմական պոտենցիալների երբեմն նույնիսկ համազոր բաղադրատարրերի համադրումը: Այդ պատճառով էլ, երբ երկու երկր-

ների կամ պետությունների խմբերի միջև ուժերի հարաբերակցության վերաբերմամբ գործածվում են «հավասարակշռություն», «միանման անվտանգություն» արտահայտությունները, ապա նկատի է առնվում, որ ընդհանուր ռազմաստրատեգիական հավասարակշռության տեսանկյունից երկու կողմերը գտնըվում են մոտավորապես հավասար վիճակում, նրանցից ոչ մեկը մյուսի նկատմամբ ռազմական գերազանցություն չունի:

Սովետական Միությունը պատրաստ է վերացնելու առկա անհամաչափությունը և հավասարակշռության հասնելու ավելի ցածր մակարդակում: Բայց դրան կարելի է հասնել միայն փոխադարձության հիման վրա:

ՄՀՀ—ՓՀՀ-ի վերաբերյալ պայմանագրի համաձայն Սովետական Միությունն ու ԱՄՆ-ը պարտավորություն են ստանձնել երեք տարում վերացնել միջին հեռահարության բոլոր հրթիռները, ինչպես նաև չարտադրել ու չփորձարկել մինչև 5.500 կմ հեռահարության որևէ հրթիռ: Փոքր հեռահարության հրթիռները պետք է ոչնչացվեն մեկուկես տարում: Պայմանագրի մասնակիցներն ընտրել են իրենց հրթիռների ոչնչացման տարբեր եղանակներ, բայց դրանք բոլորն էլ ապահովում են մարտական տեխնիկայի առումով այդ հրթիռներն օգտագործման համար լիովին ոչ պիտանի դարձնելը:

ՄՀՀ—ՓՀՀ-ի վերաբերյալ պայմանագիրը նախատեսում է ստուգման ամենախիստ համակարգ, որպիսին երբևէ մշակվել ու կիրառվել է սպառազինությունների ու զինաթափման նկատմամբ վերահսկողության համաձայնագրերով: Ստուգման ազգային տեխնիկական միջոցների լայն կիրառման հետ մեկտեղ, պայմանագիրը երկու կողմերին տալիս է տեղում տեսչական ստուգման իրավունքը՝ ներառյալ առաջին իսկ պահանջով տեսչության իրավունքն այնտեղ, որտեղ կարող են հիմքեր լինել պայմանագրի խախտման վերաբերյալ կասկածանքների համար: Տեսչության տարբեր տեսակներ կիրագործվեն ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, ինչպես նաև նրանց այն դաշնակիցների տերիտորիաներում, որտեղ տեղակայված են միջին ու փոքր հեռահարության հրթիռներ՝ ԳԴՀ-ում, ՉՍՍՀ-ում, Բելգիայում, Մեծ Բրիտանիայում, Նիդեռլանդներում, Իտալիայում և ԳՖՀ-ում, ընդամենը ինը պետության տերիտորիայում: Անցյալ տարվա վերջին և ընթացիկ տարվա սկզբին ստուգման հարցերի վերաբերյալ արդեն համապատասխան համաձայնագրեր են կնքվել հիշյալ երկրների կառավարությունների հետ:

Վաշինգտոնում ստորագրված պայմանագիրը նշանակալից է շատ առումներով: Ամենից առաջ նրանով, որ այն միջուկային զինաթափման վերաբերյալ բանակցությունների ամբողջ պատմության ընթացքում առաջին անգամ նախատեսում է ոչ թե միջուկային սպառազինությունների սահմանափակում, այլ այդ սպառազինությունների զինանոցների ԿՐՃԱՏՈՒՄ: Դրան համապատասխան պետք է ՎԵՐԱՑՎԵՆ երկու կարգի միջուկային սպառազինություններ: Թեև ոչնչացման ենթակա է Սովետական Միության և ԱՄՆ-ի միջուկային պոտենցիալի ընդամենը 3—4 տոկոսը, ոչնչացվող այդ մարտագլխիկները պարունակում են երկրորդ համաշխարհայինի նման 200 պատերազմի ավերիչ հզորություն:

Վաշինգտոնում ստորագրված պայմանագրի նշանակությունը նաև այն է, որ նա կնպաստի սպառազինությունների սահմանափակման, զինաթափման հարցերի շուրջ կարևոր այլ պայմանավորվածությունների ձեռքբերմանը: Այդ պատճառով էլ կարևոր է ոչ այնքան կրճատումների ծավալը, որքան համատեղ քրտնաջան աշխատանքի, այն հարցերի շուրջ հանգուցալուծումների որոնման ու հայտնության կուտակված փորձը, որոնք շոշափում են պայմանագրի մասնակիցների, ասենք նաև ամբողջ մարդկության անվտանգության շահերը:

ՄՀՀ—ՓՀՀ-ի վերաբերյալ պայմանագիրը պետք է դիտել իբրև դեպի ապագա միջուկազերծ աշխարհ տանող ճանապարհի առաջին փուլ: Մ. Ս. Գորբաչովն այն համարեց «ապագա տանող խոշոր քայլ»: Դա բացառիկ կարևոր այնպիսի խնդրի լուծման ուղի է բացում, ինչպիսին հարձակողական-ստրատեգիական սպառազինությունները 50 տոկոսով կրճատելն է, այլ խոսքով՝ ստրատեգիական երրորդության, որը բաղկացած է միջմայրցամաքային, սուզանավային, բալիստիկ հրթիռներից և օդային բազավորման թևավոր հրթիռներից: Այս հարցի շուրջ համաձայնության գալու համար, իսկ դա վաշինգտոնյան բանակցությունների կենտրոնում էր և առավել մեծ ժամանակ խլեց, անհրաժեշտ է լուծել սկզբունքային կարևորության մի քանի պրոբլեմ: Առաջինը դա շահերի հավասարության և հավասար անվտանգության ապահովումն է ինչպես կրճատման ընթացքում, այնպես էլ դրա ավարտից հետո, ընդ որում՝ հաշվի առնելով ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջուկային զինանոցների պատմականորեն ձևավորված կառուցվածքը: Օրինակ, ՍՍՀՄ-ն ունի միջմայրցամաքային բալիստիկ հրթիռների (ՄԲՀ) գործարկման 1398 սարք, իսկ ԱՄՆ-ը՝ 1018, սուզանավերի բալիստիկ հրթիռների (ՍԲՀ) գործարկման սարքեր՝ համապատասխանաբար 922 և 672, դրա փոխարեն ԱՄՆ-ը ունի միջուկային լիցքերով հանդերձավորված 518 ծանր ռմբակոծիչ (ԾՌ), իսկ ՍՍՀՄ-ը՝ 160: Ընդամենը ՍՍՀՄ-ն ունի 2480 ՄԲՀ, ՍԲՀ և ԾՌ, ԱՄՆ-ը՝ 2208, իսկ ստրատեգիական



կրողներով մարտալիցքեր ՍՍՀՄ-ն ունի 10.000 միավոր, ԱՄՆ-ը՝ 14.800:

Երկրորդ պրոբլեմը, որով պայմանավորված է 50 տոկոսով ստրատեգիական հարձակողական սպառազինությունների կրճատման բախտը, դա ստրատեգիական կայունության ճանաչված երաշխիք հանդիսացող հակահրթիռային պաշտպանության պայմանագրի ապագան է: «Աստղային պատերազմի» ամերիկյան ծրագրի իրականացումը այդ պայմանագրի խախտման սպառնալիք է ստեղծում:

Ստրատեգիական հարձակողական սպառազինությունները 50 տոկոսով կրճատելու հարցը նոր չէ. այն քննարկվել է Մ. Ս. Գորբաչովի և Ռ. Ռեյգանի նախորդ հանդիպումներում և եղել ու մնում է Ժնևում սովետա-ամերիկյան բանակցությունների գլխավոր խընդիրը: Կարևոր շատ հարցեր հաջողվել էր լուծել արդեն մինչև Վաշինգտոնի հանդիպումը, բայց այդ բացառիկ բարդ պրոբլեմի չլուծված հարցերն էլ դեռ բնավ քիչ չեն: ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ղեկավարների ավարտված բանակցությունները հնարավորություն ընձեռեցին նշանակալի չափով նվազեցնելու եղած տարաձայնությունները և նկատելիորեն առաջ շարժվելու: Ժնևում սովետական և ամերիկյան պատվիրակություններին ցուցում է տրված՝ ձգտել հնարավոր սեղմ ժամկետներում ավարտել ստրատեգիական հարձակողական սպառազինությունների վերաբերյալ պայմանագրի մշակումը, ցանկալի է այնպես, որ դա ստորագրվի ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ղեկավարների հաջորդ հանդիպման ժամանակ, որը տեղի կունենա 1988 թ. առաջին կեսին:

Վաշինգտոնյան հանդիպման ընթացքում քննարկվեց նաև այլ հարցերի մի լայն շրջան. միջուկային զենքի փորձարկումների արգելում, Եվրոպայում սովորական սպառազինությունների բնագավառում ռազմական առճակատման մակարդակի նվազեցում, ռեգիոնալ կոնֆլիկտներ, մարդու իրավունքներ և հումանիտար հարցեր, վերջապես՝ երկկողմ համագործակցություն: Այս հարցերից մի քանիսի շուրջ դրսևորվեց դիրքերի որոշակի մերձեցում, մյուսների վերաբերմամբ, ընդհակառակը, տեսակետները նկատելիորեն զանազանվեցին: Վերցնենք, օրինակ, ռեգիոնալ կոնֆլիկտների հարցը, որի մասին հիշատակվեց սույն հոդվածի սկզբում: Սովետական Միությունը դըրանց լուծման նկատմամբ մոտեցման մեջ նախընտրում է քաղաքական երկխոսության ուղին, կոնստրուկտիվ դիվանագիտությունը: Մինչդեռ Միացյալ Նահանգները հույսը դնում է ուժի վրա, թեև բազմամյա փորձը ցուցադրել է նման դիրքորոշման ողջ անհեռանկարայնությունը: Ամեն մի կոնֆլիկտային իրավիճակի լուծման ժամանակ Վաշինգտոնը ձըգտում է իր համար «հաղթանակի» հասնել, քաղաքական հսկողություն հաստատել աշխարհի այս կամ այն շրջանում, պարտության մատնել Սովետական Միության հանդեպ բարեկամորեն տրամադրված ուժերին:

Այդ ամենի հետևում թաքնված է ամերիկյան իմպերիալիզմի գլխավոր նպատակը՝ ամրապնդել իր ռազմաստրատեգիական դիրքերը: Վաշինգտոնում նաև այն կարծիքը կա, թե ռեգիոնալ կոնֆլիկտների հարցում Սովետական Միության վրա ճնշում գործադրելով կարելի է, իբր, նրան ավելի զիջողունակ դարձնել մյուս, մասնավորապես սովետա-ամերիկյան հարաբերություններին վերաբերող հարցերում: Սովետական Միությունը, իհարկե, նման «կոնցեպցիայի» հետ չի կարող համաձայնել:

Սովետա-ամերիկյան ամենաբարձր մակարդակի համատեղ հայտարարության մեջ Մ. Ս. Գորբաչովը և Ռ. Ռեյգանը, քննարկելով ռեգիոնալ հարցերը, այդ թվում և Աֆղանստանի, իրանա-իրաքյան պատերազմի, Մերձավոր Արևելքի, Կամպուչիայի, Հարավային Աֆրիկայի, Կենտրոնական Ամերիկայի, ինչպես և մի շարք այլ հարցեր, «արձանագրեցին լուրջ տարակարծությունների առկայությունը, սակայն համաձայնեցին երկրների միջև կարծիքների կանոնավոր փոխանակության կարևորությանը»: Էական է հիշյալ փաստաթղթում այն բանի հավաստումը, թե ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև տվյալ հարցերի շուրջ երկխոսության նպատակն է օգնել ռեգիոնալ կոնֆլիկտների մեջ ներգրավված կողմերին՝ գտնելու նրանց անկախությանը, ազատությանն ու անվտանգությանը նպաստող խաղաղ լուծումներ:

Վաշինգտոնյան հանդիպման ժամանակ քննարկված հարցերի ողջ բազմազանությամբ հանդերձ, բոլոր բանակցությունների լեյտմոտիվը, անտարակույս, այն պրոբլեմն էր, թե ինչպես բարելավել սովետա-ամերիկյան հարաբերությունները: Միջազգային ուզած իրադարձության, ուզած հարցի քննարկումն ըստ էության ընթանում էր այդ արմատական պրոբլեմի տեսանկյունով:

Մի քանի խոսք այդ հարաբերությունների պատմության մասին: Սովետական պետությունը իր գոյության առաջին օրերից հետևողականորեն ու անշեղորեն հանդես է գալիս Միացյալ Նահանգների հետ նորմալ, բարեկամական հարաբերությունների զարգացման օգտին: «Հաշտության մասին» իր առաջին արտաքին-քաղաքական փաստաթղթում, որն ընդունվեց Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի հաջորդ իսկ օրը, սովետական կառավարությունը բոլոր պատերազմող ժողովուրդներին ու նրանց կառավարություններին, այդ թվում և ամերիկյան, առաջարկեց անհապաղ բանակցություններ սկսել արդարացի դեմոկրատական հաշտության շուրջ: Սովե-

տական կառավարությունը միշտ այն կարծիքին է, որ արդյունավետ ու բազմակողմանի համագործակցությունն այնպիսի երկու խոշոր երկրների միջև, ինչպիսիք ԱՄՆ-ը և ՍՍՀՄ-ն են, օգտակար կլինի ոչ միայն այդ երկրներին, այլև բարերար ներգործություն կունենա ամբողջ միջազգային իրադրության վրա: «Մենք վճռականապես կողմնակից ենք տնտեսական համաձայնություն կայացնելու Ամերիկայի հետ,—բոլոր երկրների հետ, բայց հատկապես Ամերիկայի հետ»,— նշում էր Վ. Ի. Լենինը 1919 թ. աշնանը (ԵԼԺ, հ. 39, էջ 261):

Պատասխանելով ամերիկյան «Ունիվերսալ սերվիս» ինֆորմացիոն գործակալության թղթակցի հարցին, թե ինչպիսիք են Ամերիկայի հետ հաշտության հիմքերը, Վլադիմիր Իլյիչն ասում էր. «Թող ամերիկյան կապիտալիստները ձեռք չտան մեզ: Մենք նրանց ձեռք չենք տա» (ԵԼԺ, հ. 40, էջ 176):

Ինչ վերաբերում է Միացյալ Նահանգներին, ապա նա, ինչպես հայտնի է, համաձայնեց դիվանագիտական հարաբերություններ հաստատել սովետական պետության հետ նրա ծագումից 16 տարի հետո միայն: Մեծ պետություններից ԱՄՆ-ը վերջինն էր, որ նորմալացրեց հարաբերությունները մեր երկրի հետ: Մի շարք տարիների ընթացքում, մինչև 1933 թվականի նոյեմբեր, ամերիկյան իմպերիալիստների մեղքով ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև գոյություն ունեին ոչ նորմալ և խորթ հարաբերություններ, որոնք վնաս պատճառեցին ինչպես ամերիկյան, այնպես էլ սովետական ժողովուրդներին:

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը դաշնակիցներ էին: Դա հեշտ դաշինք չէր, եթե հաշվի առնենք թե՛ Վաշինգտոնում վերաբերմունքը սոցիալիստական պետության նկատմամբ, թե՛ հիտլերիզմի դեմ մղվող պատերազմի հանդեպ տարբեր մոտեցումները, բայց, ամբողջությամբ վերցրած, միանգամայն արդյունավետ էր: Գերմանական վերմախտի պարտության գործում սովետական զինված ուժերի վճռական ավանդը, միավորված ԱՄՆ-ի վիթխարի նյութական ու տնտեսական պոտենցիալի հետ, ապահովեցին ֆաշիստական Գերմանիայի ու նրա դաշնակիցների պարտությունը:

Հետպատերազմյան աշխարհում Սովետական Միությունն ու ԱՄՆ-ը սկսեցին բացառիկ կարևոր դեր խաղալ: Նշանակալի չափով նրանց հարաբերություններով է պայմանավորված նաև ամբողջ միջազգային կլիման: Սակայն հետպատերազմյան ավելի քան չորս տասնամյակի նրանց հարաբերություններն աչքի են ընկնում մեծ անկայունությամբ: Հարաբերական ջերմացման ժամանակաշրջանները հերթագայվել են «սառը պատերազմի» սառնամանիքների հետ, որոնք երբեմն, ինչպես դա տեղի ունեցավ 1962 թվականին, սպառնում էին վերաճել ռազմական առճակատման: Գործնականորեն հետպատերազմյան ամբողջ ժամանակաշրջանում ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական կոմպլեքսը անդուլ կերպով մեր երկրից «թշնամու կերպար» էր ծեփում, կնքված շատ պայմանագրեր ամերիկյան բուրժուազիայի ծայրահեղ աջ թևի ճիգերով չիրականացվեցին, բանակցությունները խափանվում էին, և աշխարհը ականատես էր լինում Սովետական Միության նկատմամբ Վաշինգտոնի «ուժային դիվանագիտության» նոր ռեցիդիվի, որոնցից վերջինը ձգձգվեց երկար տարիներ:

Հարց է ծագում՝ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև հարաբերությունների ներկա ջերմացումը, որի վառ ցուցադրումը վաշինգտոնյան հանդիպումն էր, արդյո՞ք այդ հարաբերությունների հերթական սրման նախերգանքը չէ: Այլ խոսքով, ինչպե՞ս կարելի է գնահատել այդ հանդիպումը:

Հավանորեն դրա վերջնական, կշռադատված և օբյեկտիվ գնահատականը կտա ժամանակը: Պատմությունն ինքը կորոշի այն տեղը, որին արժանի է այդ իրադարձությունը: Ես միայն հանձն եմ առնում ընթերցողին հաղորդակից անել այն նոր գործոններին, որոնք վաշինգտոնյան հանդիպումը, անտարակույս, առանձնացնում են սովետա-ամերիկյան բարձր մակարդակի բոլոր նախորդ բանակցություններից:

Վաշինգտոնի հանդիպումը, ինչպես հայտնի է, տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից երկուսուկես տարի անց, որը լուրջ շտկումներ մտցրեց նաև մեր պետության արտաքին քաղաքական գործունեության մեջ: Դինամիզմ, ազնիվ, փոխշահավետ համաձայնությունների շահագրգռություն, բացախոսություն, հրապարակայնություն՝ այս ամենը վառ կերպով դրսևորվեց վաշինգտոնյան հանդիպման ընթացքում: Ամերիկյան վարչակազմի, մամուլի, գործարար շրջանների, մտավորականության ներկայացուցիչների հետ սովետական ղեկավարի անկեղծ զրույցները, ուզած հարցին պատասխանելու պատրաստակամությունը՝ առանց դրանցից անցանկալիներին «պրովոկացիոն» պիտակ կպցնելու, այս ամենը ամերիկացիների շրջանում բացառիկ դրական արձագանք առաջ բերեց:

Մյուս առանձնահատկությունը, իմ պատկերացմամբ, այն է, որ վաշինգտոնյան բանակցությունների երկու մասնակիցները ելնում էին նրանից, որ պետք չէ մյուս կողմին հիմարի տեղ դնել, որ պարտնյորի շահերի հաշվին համաձայնության ձգտելը հավասարազոր է բանակցությունները ձախողման դատապարտելուն: Ելնելով դրանից, բանակցությունների մասնակիցները համաձայնեցին այն բանին, որ սպառազինությունների նկատմամբ վերահսկողության հարցերի շուրջ պայմանավորվածությունները պետք է հարյուր տոկոսով ստուգելի լինեն: Մի բան ակնհայտ է. զինաթափման բնագավառում արդյունավետ պայմանագրերի համար հարկավոր է բացել համապատասխան պահեստների ու ռազմական օբյեկտների դռները: Առանց դրա համաձայնագիր չի լինի:

Եվ մի նկատառում: Առանց մյուս կողմին ըմբռնելու և նրան ընդառաջ գնալու իսկական ցանկության, չգոհաբերելով, բնականաբար, սեփական շահերը, անհնար է սովետա-ամերիկյան հարաբերություններում հասնել արմատական բարելավման: Ինձ թվում է, որ Վաշինգտոնի հանդիպման ժամանակ նման ձգտում հանդես բերվեց երկուստեք: «Պրեզիդենտի հետ մեր փոխըմբռնումը մեծացավ,— Վաշինգտոնում կայացած պրես-կոնֆերանսում ասաց Մ. Ս. Գորբաչովը: — Մեր երկխոսության մեջ ավելացան գործարարությունը, կոնստրուկտիվ մոտեցումները, և ես նույնիսկ կհամարձակվեմ ասել, որ մենք սկսեցինք ավելի շատ վստահել միմյանց»:

Եվ վերջինը: Վաշինգտոնի բանակցությունների ընթացքում ընդունվեց կարևոր «Սովետա-ամերիկյան բարձր մակարդակի համատեղ հայտարարությունը», որը պարունակում է մի շարք պայմանավորվածություններ ինչպես երկկողմ հարաբերությունների, այնպես էլ միջազգային պրոբլեմների շուրջ:

Թերահավատը, ելնելով բուն իմ դատողություններից, կարող է նկատել, չէ՞ որ անցյալում էլ կնքվել են սովետա-ամերիկյան կարևոր համաձայնագրեր, որոնք, սակայն, ամերիկյան կողմի մեղքով չեն կատարվել: Ի՞նչ երաշխիք կա, որ պատմությունը չի կրկնվի: Անկեղծորեն ասած, նման երաշխիքներ ես, համենայն դեպս, հանձն չեմ առնի տալ: ԱՄՆ-ում երկար տարիների աշխատանքի և նրա տարբեր ներկայացուցիչների հետ բանակցություններ վարելու ընթացքում ես ըմբռնել եմ, թե որքան բարդ ու անկանխագուշակելի է այդ մեծ երկրի քաղաքական կյանքը: Թեև ամերիկացիների նկատելի մեծամասնությունը ՄՀՀ—ՓՀՀ-ի վերաբերյալ պայմանագրի, Սովետական Միության հետ երկխոսությունը շարունակելու կողմնակից է, հակասովետիզմի, հակակոմունիզմի, սպառազինությունների մրցավազքի կողմնակիցների դիրքերը տակավին ամուր են: Դրա մասին մոռանալը աններելի է: Ձեռք բերված պայմանավորվածությունների առթիվ որևէ հըրճվանք չի կարող լինել:

«Ֆորին աֆերս» ամերիկյան ազդեցիկ հանդեսի գլխավոր խմբագիր Ուիլյամ Հայլենդը թղթակցի հետ զրույցի ժամանակ ասաց. «Եթե դուք դիմեք ամերիկացիներին ու հարցնեք՝ վստահո՞ւմ են արդյոք նրանք Սովետական Միությանը, պատասխանը կարող է լինել «ոչ»: Բայց եթե դուք հարցնեք, արդյո՞ք նրանք Գորբաչովին ավելի շատ են վստահում, քան սովետական նախորդ ղեկավարներին, պատասխանը կարող է լինել «այո»: Հեյլանդը, ավելի շուտ, իրավացի է: Հակասովետիզմի թույնը, որով տասնամյակների ընթացքում ներծծված էր ԱՄՆ-ի ամբողջ քաղաքական կյանքը, այսօր շարունակում է ապականիչ ներգործություն ունենալ: Սակայն բազմաթիվ փաստեր, որոնք վառ կերպով երևան եկան հատկապես Մ. Ս. Գորբաչովի ԱՄՆ կատարած այցի ընթացքում, ցույց են տալիս, որ ավելի ու ավելի մեծ թվով ամերիկացիներ են մերժում հակասովետիզմը, բացեիբաց դրսևորում մեր երկրի նկատմամբ իրենց համակրանքը: Նման փաստերի շարքին պետք է դասել նաև Հայկական բարեգործական ընդհանուր միության ներկայացուցիչների՝ դեկտեմբերի 10-ին Վաշինգտոնի սովետական դեսպանատուն կատարած այցը, որի ընթացքում աշխարհի շատ երկրներում լայնորեն հայտնի այդ հասարակական կազմակերպության ղեկավարության անունից միության նախագահ Ա. Մանուկյանը մշակույթի սովետական ֆոնդին նվեր հանձնեց 17-րդ դարի հին սլավոներեն մի ձեռագիր և Հ. Կ. Այվազովսկու մի գեղանկարը՝ ստեղծագործություններ, որոնք նշանակալի պատմական ու գեղարվեստական արժեք են ներկայացնում:

Եվ, այնուամենայնիվ, ուզում եմ ավարտել զվարթ տոնայնությամբ: «Երկրորդ սառը պատերազմը» հոգնեցրել է մարդկությանը կամ, գործածելով ավելի նվազ գրական դարձվածք՝ զզվեցրել է բոլորին. չէ որ այն չափազանց թանկ է նստում մարդկությանը և, գլխավորը, մեր ամբողջ քաղաքակրթությունը ոչնչացնելու սպառնալիք է պարունակում իր մեջ: Միջուկային սպառազինությունների մրցավազքը, մշտական առճակատումը մարդկությանը հասցրել են այնպիսի մի անդունդի եզրի, որից ելք չկա: Հենց այս առումով պետք է դիտել այն փաստը, որ ամերիկյան աջերի և նույնիսկ ծայրահեղ աջերի սիրեցյալ Ռ. Ռեյգանը, որը, յոթ տարի առաջ մուտք գործելով Սպիտակ տուն, ոչ միայն ուղղակի բացասաբար, այլ երբեմն նաև բացահայտ վիրավորանքով էր արտահայտվում Սովետական Միության մասին, ստիպված էր իր պրեզիդենտության ավարտին Սովետական Միության հետ համաձայնությունների գնալ:

Նշանակո՞ւմ է դա արդյոք, թե սովետա-ամերիկյան հարաբերություններն արդեն դուրս են եկել արդյունավետ ու անվրդով համագործակցության լայն ուղի: Հավանորեն, դեռ վաղ

է այդ հարցին դրական պատասխան տալ: Ամեն բան կախված է նրանից, թե լավ խոսքերն ու հայտարարությունները ինչպես կիրագործվեն կյանքում:

Հայտնի ամերիկյան սովետաբան Գ. Մորգենթաուն քառորդ դար առաջ գրել է. «Ամերիկա-սովետական հարաբերությունների ապագան մշուշված է անորոշությամբ: Անկանխորոշելի են թե՛ բարեկամական հարաբերությունները, թե՛ թշնամությունը: Նրանք, ովքեր գաղափարախոսական հողի վրա կոնֆլիկտի անխուսափելիություն են ազդարարում, նույնքան անիրավացի են, որքան և նրանք, ովքեր պնդում են խաղաղության և անգամ բարեկամության անխուսափելիության մասին, քանի որ Միացյալ Նահանգներն ու Սովետական Միությունը միմյանց նկատմամբ խոսքի ու գործի մեջ դարձել են ավելի զուսպ: Ապագան ամենից առաջ պայմանավորված է նրանով, թե երկու կառավարություններն ինչպես են ըմբռնում համապատասխան շահերը և ինչպես դրանք կպաշտպանեն»:

Ընդհանուր առմամբ այս նկատառումներին կարելի է համաձայնել: Ինչ վերաբերում է սովետական կառավարությանը, ապա այն թե՛ խոսքով, թե՛ գործով ցույց է տվել սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավման գործում իր լուրջ շահագրգռությունը:

«Միմյանց ընդառաջ գնալու շարժման մեջ,— նշեց Մ. Ս. Գորբաչովը Վաշինգտոնում,— մենք էլ ավելի արժեքավորեցինք սովետա-ամերիկյան հարաբերությունների դերն ու նշանակությունը արդի միջազգային զարգացման գործում, իսկ դրա հետ մեկտեղ՝ նաև մեր փոխարի պատասխանատվությունը ոչ միայն մեր ժողովուրդների, այլև համաշխարհային ընկերակցության առջև»:

Սկսված 1988 թվականը միջազգային գործերում հեշտ ու հասարակ չի լինի: Բայց մենք բոլորս, Երկիր մոլորակի մարդիկս, նստած ենք մի տապանում: Ուզում ես հավատալ, որ տարրական տրամաբանությունն ու բանականությունը թույլ չեն տա նրան շրջվելու: Որովհետև այն ժամանակ կկործանվեն ամենքը և ամեն բան: Անցած տարին ընդհանուր առմամբ նպաստեց համաշխարհային քաղաքականության մեջ առողջ բանականության հաստատմանը, վիճելի հարցերի լուծմանը նոր մոտեցումների արմատավորմանը: Վաշինգտոնյան հանդիպումը բարերար ներգործություն ունեցավ միջազգային-քաղաքական մթնոլորտի վրա, բարձրացրեց պետությունների փոխադարձ վստահությունը արդի բարդ, հակասական, բայց փոխկապակցված աշխարհում: Հուսանք, որ այդ միտումը կշարունակվի նաև նոր տարում:

---



# ՄԵԾ ԺՈՂՈՎՐԴԻ ԶԱՎԱԿՆԵՐԸ

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ տարիներին ամբողջ հզորությամբ դրսևորվեց սովետական ժողովրդի ծոցից ելածականավոր զորավարների, սպաների ռազմական տաղանդը: Դրանց թվում էր նաև հայ ժողովրդի ականավոր զավակ, Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Իվան Քրիստափորի Բաղրամյանը, որի ծննդյան 90-ամյակը նշվեց վերջերս: Լինելով սովետական փառաբանված զորավարներից շատերի ոչ միայն ժամանակակիցը, այլև զինվորական ծառայության, ուսումնառության ընկերը, արտամոտ բարեկամը, որոնց հետ կողք-կողքի ղեկավարել է ճակատամարտեր, Ի. Ք. Բաղրամյանը իր սրտի պարտքըն է համարել ներկա և գալիք սերունդներին ներկայացնել իր տեսածն ու իմացածը Գ. Կ. Ժուկովի, Ա. Մ. Վասիլևսկու, Կ. Կ. Ռոկոսովսկու, Բ. Մ. Շապոշնիկովի, Ս. Կ. Տիմոշենկոյի, Ի. Ս. Կոնևի, Դ. Մ. Կարբիշևի մասին:

Հեղինակը գրքի* առաջաբանում համաձայնում է իր ընթերցողների այն իրավացի պահանջին, որ «եթե պանծալի սովետական զորավարների մասին չպատմեն նրանց ժամանակակիցներն ու զինակիցները, ապա ոչ մի ավելի ուշ գրված հետազոտություն չի լրացնի այդ բացը» (էջ 3):

Համեստորեն ձևակերպելով իր խնդիրը, Ի. Բաղրամյանը փայլուն կերպով է կատարել ոչ միայն հուշագրի, այլև ռազմական տեսության ու ստրատեգիայի հմուտ գիտակի, ռազմական պատմաբանի դերը:

Շարադրանքի պարզության, պատկերավորության, կենդանի ոճի, պրոֆեսիոնալ բարձր մակարդակի շնորհիվ գիրքը վերածվում է ռազմական արվեստի մի ուրույն ձեռնարկի:

Նշված զորապետներից բացի, գրքում, թեև հպանցիկ, սակայն դիպուկ բնորոշումներով հիշատակվում են բազմաթիվ կուսակցական, պետական և ռազմական գործիչներ, որոնցով կարևոր լրացումներ են արվում նրանց՝ մինչև այժմ հայտնի կենսագրական շարադրանքներում և գնահատականներում (Ս. Ս. Կամենև, Մ. Վ. Ֆրունզե, Վ. Ա. Անտոնով-Օվսեենկո, Ի. Ե. Յակիր, Վ. Կ. Բլյուխեր, Ի. Պ. Ուբորևիչ, Ա. Ի. Եգորով, Մ. Ն. Տուխաչևսկի, Կ. Ե. Վորոշիլով, Մ. Ս. Բուդյոննի և ուրիշներ):

«Մեր երկրի պատմության մեջ,— գրում է հեղինակը,— քիչ չեն այն իրադարձությունները, որոնք կազմել են ժողովրդի խիզախումների հերոսական տարեգրությունը... Բայց դրանց մեջ ամենաանմոռացը, անկասկած, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմներում նվաճված հաղթանակներն են: Կանցնեն հարյուրամյակներ, բայց ժողովրդի հիշողությունը նորից ու նորից կվերադառնա այն սերունդների սխրանքներին, որոնք լենինյան կուսակցության ղեկավարությամբ, արհամարհելով մահը, աներևակայելի թանկ գնով հաղթանակ տարան համաշխարհային պատմության մեջ ամենադաժան երկու գոտեմարտերում» (էջ 4-5):

«Մեծ ժողովրդի զավակները» գրքում արժանի տեղ է գտել զինված ուժերի, ռազմաստրատեգիական մտքի զարգացման պատմությունը՝ քաղաքացիական պատերազմից մինչև Խասան լիճ ու Խալխին Գոլ, ֆիննական կամպանիայից մինչև ֆաշիստական Գերմանիայի ու միլիտարիստական Ճապոնիայի ջախջախումը: Պատմական հավաստիություն, խորագիտակություն, գեղարվեստական շարադրանքի հմտություն, հուզականություն, հոգեբանական նուրբ վերլուծություններ, կենդանի, պատկերավոր երկխոսություններ, անհատականության բնորոշ լեզվամտածողություն, ուղղակի և անուղղակի խոսքի տեղին կիրառում, այլոց կարծիքի արդարացի վկայակոչում. ահա այն միջոցներից մի քանիսը, որոնցով գրքի շարադրանքը դառնում է ներգործուն, համակում ընթերցողին:

Գրքի հերոսներին միավորում է այն հանգամանքը, որ նրանք դուրս են եկել ժողովրդի ծոցից, անսահմանորեն նվիրված են հայրենիքին ու կուսակցության գործին, նրանց ներհատուկ են մշտապես կատարելագործվելու ձգտումը, անսպառ եռանդը, ամենա-

* *Ի. Ք. Բաղրամյան, Մեծ ժողովրդի զավակները, «Հայաստան» հրատարակչություն, 1987, 480 էջ:*

բարդ իրադրության մեջ արագորեն կողմնորոշվելու ունակությունը... «Նրանք իրենց պրոֆեսիոնալ մակարդակով,— գրում է Ի. Ք. Բաղրամյանը,— գերազանցեցին կապիտալիստական զորապետներին, բայց դրա հետ մեկտեղ զինվորներ մնացին բառիս լավագույն իմաստով» (էջ 6)։

Սովետական փառապանծ զորահրամանատար, Սովետական Միության մարշալ, Սովետական Միության քառակի հերոս Գ. Կ. Ժուկովին բնութագրելիս հեղինակը նշում է. «Հիմնավորապես իմանալով զինվորի ոգին... զորավարը ոչ մի բան այնքան բարձր չէր գնահատում, ինչպես զինվորի իսկական հատկությունները։ Նրա բնավորության մեջ ամենայն հստակությամբ դրսևորվում էին ռուս աշխատավոր մարդուն ներհատուկ հիանալի գծերը՝ ակտիվությունը, կենսունակությունը, իսկական բարեկամությունն ու մարտական ընկերակցությունը լիակատար չափով գնահատելու կարողությունը» (էջ 8)։ Երախտագիտությամբ է նշվում Գ. Կ. Ժուկովի հսկայական դերը հեղինակի զինվորական ճակատագրում։ Նա հիացմունքով է հիշում, որ համատեղ ուսման ընթացքում Ժուկովը բազմիցս զարմացնում էր որևէ անակնկալությամբ, յուրատեսակ մտածողությամբ, կուռ տրամաբանությամբ՝ համարձակորեն վիճարկելով ոչ միայն դասընկերների, այլև դասախոսների փաստարկները։ Նրա բնավորության գծերից էին եռանդը, նախաձեռնությունը և հաստատակամությունը։

Գրքում վերլուծված են 1939 թ. մայիսին Խալխին Գոլ գետի շրջանում ճապոնական միլիտարիստների արկածախնդրական գործողությունները, Գ. Կ. Ժուկովի ղեկավարությամբ նրանց ջախջախումը։ 1940 թ. հունիսի 28—30-ը Կիևի զինվորական օկրուգի մի քանի զորամիավորումներ Գ. Կ. Ժուկովի հրամանատարությամբ օգնության ձեռք մեկնեցին Բեսարաբիայի և Հյուսիսային Բուկովինայի աշխատավորությանը և աջակցեցին նրանց վերամիավորվելու հայրենիքի հետ։

«Մենք պետք է սովորենք կռվել խելացի և ուժեղ թշնամու դեմ։ Միայն «ուռայով» նրան չես հաղթի»,— այդ օրերին նկատել է Գ. Ժուկովը։ 1941 թ. հունվարին նա դարձավ կարմիր բանակի շտաբի պետ և այդ պաշտոնում մնաց յոթ ամիս։ Այդ ժամանակ մեր հրամանատարության ուշադրությունը նա հրավիրում է արդի պատերազմում զրահատանկային, մոտորացված զորամիավորումների և ավիացիայի սերտ փոխգործողության կարևորության և հակառակորդի պաշտպանությունը ճեղքելու համար բոլոր տեղամասերում գերազանցություն ապահովելու վրա։

Անդրադառնալով գլխավոր շտաբի պետի պաշտոնում Գ. Ժուկովի գործունեությանը, հեղինակը գրում է. «Կարծում եմ, որ մեր ժողովրդի համար բարեբար էր այն հանգամանքը, որ այդ դժվարին օրերին հայրենիքի պաշտպանության համար այնքան կարևոր պոստում էր գտնվում զգաստ, անալիտիկ խելքի, բացառիկ սուր հիշողության, աննկուն կամքի տեր այդ զորապետը, որը երբեք չէր կորցնում սառնասրտությունը և մտքի պարզությունը։ Այդ բոլոր հատկությունների, ինչպես նաև իր կարծիքը համարձակորեն պաշտպանելու և նախատեսված նպատակին ոչ թե երկչոտ զիգզագներով, այլ ուղիղ ճանապարհով ընթանալու ունակության շնորհիվ նա էական ավանդ մուծեց ագրեսիայի կասեցմանը նախապատրաստվելու և թշնամուն հակահարված տալու գործը կազմակերպելու մեջ» (էջ 25—26)։

Այնուհետև հեղինակը Գ. Կ. Ժուկովին ցույց է տալիս պատերազմի ամենակրիտիկական տեղամասերում, որտեղ հաճախ վճռվում էր ոչ միայն տվյալ ճակատամարտի, օպերացիայի բախտը, այլ շատ բանով նաև ամբողջ պատերազմի բախտը։

Գրքում ճշմարիտ է ասված, որ Գ. Կ. Ժուկովի կազմակերպչական ընդունակությունները, աննկուն կամքը, իրադարձությունների զարգացումը կանխատեսելու կարողությունը հաղթանակի ապահովման նրաշխիք էին։ Զորավարին ներհատուկ է եղել նաև ինքնաքննադատությունը, զինակիցների ու ենթակաների առաջարկությունների ռացիոնալ հատիկը ակնթարթորեն տեսնելու, նրանց խելացի նախաձեռնությունը պաշտպանելու ունակությունը։ Սակայն նա ներկայանում է նաև որպես խստապահանջ ու անսահմանորեն պահանջկոտ նախ և առաջ իր հանդեպ։ Տեղին խրախուսելով փութաջաններին, նա անողոք է եղել անպատասխանատվություն դրսևորածների նկատմամբ, շիտակորեն նրանց երեսին ասելով իր ասելիքը՝ առանց քողարկելու դառը հաբերը։

Դեռ նրա կենդանության օրոք ժողովուրդը զորավարին անսահման սիրով էր շրջապատել։ Գեորգի Կոնստանտինովիչը նույնքան սիրով ու գորովով էր վերաբերվում հարազատ ժողովրդին։

«Հպարտանում եմ,— նշում է հեղինակը,— որ ինձ երջանկություն է վիճակվել աշխատելու նրա ղեկավարությամբ, նրա հասակակիցն ու ընկերը լինել խաղաղ ուսման և պատերազմի դաժան փորձությունների օրերին»։

Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Ա. Մ. Վասիլևսկին ներկայացված է ուսումնառության տարիներից մինչև գլխավոր շտաբի պետի



տեղակալ, այնուհետև 1942 թ. հունիսի 26-ից՝ պետ, 1944 թ. ամռանը Բելոռուսիայի, Լիտվայի, Լատվիայի ազատագրման օպերացիաներում 3-րդ Բելոռուսական, 1-ին և 2-րդ Մերձբալթյան ռազմաճակատների գործողությունների կոորդինացնող ու ղեկավար, Արևելյան Պրուսիայում սովետական զորքերի հարձակման և պատերազմի եզրափակիչ փուլում ֆաշիստական ամրոց Քյոնիգսբերգի հերոսական գրոհի ղեկավար, ապա՝ Հեռավոր Արևելքի հսկայածավալ ու բարդ ռազմաճակատում սովետական զինված ուժերի գլխավոր հրամանատարի բարդ ու դժվարին պոստ, որտեղ նա փայլուն կերպով նախապատրաստեց և իրականացրեց Քվանտունյան բանակի ջախջախման՝ իր մտահղացմամբ և խնդիրների լուծման եղանակներով յուրօրինակ ստրատեգիական օպերացիան։ Այս է խիստ կըրճատ ու հպանցիկ թվարկումը այն գործողությունների ու ծառայությունների, որոնցում փայլել են անվանի զորավարի ռազմավարական տաղանդը, դրսևորվել ամենաբարդ իրադրություններում շղթայի գլխավոր օղակից բռնելու և ամենախճճված իրադրությունը ճիշտ «ընթերցելու» նրա բացառիկ ունակությունը։

Ա. Մ. Վասիլևսկու մշակած օպերացիաները մեկ անգամ չէ, որ, ինչպես դա հետագայում իրենց հուշագրություններում խոստովանել են գերմանական ու ճապոնական զորահրամանատարները, անակնկալի են բերել թշնամուն, ցույց տալով սովետական ռազմական մտքի գերազանցությունը։

Անվանի զորահրամանատարը 1949 թ. մարտից մինչև 1953 թվականի մարտը աշխատեց ՍՍՀՄ զինված ուժերի մինիստրի պաշտոնում և իր գիտելիքները, փորձն ու կազմակերպչական տաղանդը ներդրեց սովետական բանակի մարտական հզորության ամրապնդման և տեխնիկական վերահագեցման համար անհրաժեշտ միջոցառումների իրականացման գործին։

Սովետական զորահրամանատարների փայլուն համաստեղությանն է պատկանում նաև Կ. Կ. Ռոկոսովսկին, որին հեղինակը ծանոթ է եղել դեռևս Լենինգրադի հրամանատարական կազմի կատարելագործման հեծելազորային դասընթացներից։ Լինելով պրոլետարական միջավայրի ծնունդ, վաղ պատանեկությունից նա մասնակցել է քաղաքական ցույցերի, ընկել բանտ, կամավոր մեկնել բանակ, անձնուրաց կռվել առաջին համաշխարհային պատերազմի ճակատներում, արժանացել մարտական պարգևների, դարձել գնդի սիրելին և Փետրվարյան հեղափոխությունից հետո ընտրվել գնդի կոմիտեի կազմում։ Նա քաղաքացիական կռիվներում աչքի է ընկնում անձնական քաջությամբ, արդարամտությամբ, ընդհանուր կուլտուրական մտահորիզոնի լայնությամբ և հրամանատարական հըմտությամբ։

Հայրենական մեծ պատերազմի առաջին իսկ օրերին Ռոկոսովսկին հաճախ անձամբ լինում էր ռազմաճակատի առաջավոր գծի խըրամատներում, քաջալերում զինվորներին։ Մոսկվայի տակ Կ. Կ. Ռոկոսովսկու ղեկավարած 16-րդ բանակը (որը հետագայում դարձավ 11-րդ գվարդիական) ցույց տվեց պաշտպանության, կանոնավոր նահանջի ու զորաշարժի և սրընթաց հարձակման վարպետ հմտություն։

Կ. Կ. Ռոկոսովսկու զորավարական տաղանդի վկայություններից են թշնամու առաջիկա մտադրությունը կռահելու և նախապես հակամիջոցներ կիրառելու փաստերը։ Այդպես արդարացան Կուրսկի ելուստի պաշտպանությունը կազմակերպելու անհրաժեշտության և ժամանակին Կուրսկի աղեղից արևելք ռազմակայանի հզոր ռեզերվներ կենտրոնացնելու՝ պատահականություններից խուսափելու և ժամանակին մեր զորքերի հակահարձակումն ապահովելու վերաբերյալ նրա կանխագուշակումներն ու խորհուրդները։ Ռոկոսովսկին պաշտպանության երկրորդ և երրորդ շերտերի ամրությունների կառուցման գործում ակտիվորեն ներգրավում էր տեղի բնակչությանը։ Ռազմակայանը շատ անգամներ է զորավարին ուղարկել պատերազմի ամենավտանգավոր, կրիտիկական տեղամասերը, շատ անգամ վստահելով ու համաձայնելով ուժերի վերախմբավորման նրա պահանջների հետ։

Բելոռուսիայի ազատագրման օպերացիայում Ռոկոսովսկու զորքերը, հաղթահարելով թշնամու դիմադրությունը, հնգօրյա հարձակման ընթացքում թշնամու պաշտպանությունը ճեղքելով երկու հարյուր կիլոմետրանոց ճակատում, շրջապատեցին և ոչնչացրին Բոբրույսկի խմբավորումը և խորացան մինչև հարյուր տասը կիլոմետր։ Նույն սրընթացությամբ զարգացնելով առաջխաղացումը, նրա զորքերը դուրս եկան Լեհաստանի սահմանը։

Մարդկայնորեն հուզիչ ու բնութագրական է թե՛ հերոսի, թե՛ հեղինակի ներաշխարհի ընկալման առումով գրքի հետևյալ հատվածը. «Արդեն պատերազմից հետո կայացած զրույցներից մեկում նա ինձ ասաց.— Դու երևի կըռահականաս, Իվան Խրիստաֆորովիչ, թե ինձ ինչ հուզմունք համակեց, երբ ռազմակայանը հաստատեց Լյուբլին-Բրեստի օպերացիայի՝ մեր առաջարկած պլանը։ Չէ՞ որ Բուգի այն կողմում Լեհաստանն էր, որտեղից ես հեռացա տասնութ տարեկանում։ Այդ ո՞ր կախարդը կարող էր գուշակել, որ կամավոր կերպով իբրև շարքային Կարգոպոլյան դրագուն-

ների գունդը մտած վարշավցի քարտաշը գերմանական ռայխսվերի ճնշման տակ դրագունների հետ միասին ստիպված հեռանալով Լեհաստանից, երեսուն տարի հետո մեկ միլիոն մարտիկ ունեցող ռազմաճակատի զորքերի գլուխ անցած այստեղ կվերադառնա գերմանաֆաշիստական լծից Լեհաստանի ազատագրման սրբազան գործն սկսելու համար:

Ես լավ էի հասկանում այն հուզմունքը, որով խոսում էր իմ հավատարիմ բարեկամը, քանի որ ճիշտ այդպիսի զգացում կապրեի ես, եթե ինձ բախտ վիճակվեր, ասենք, հայերին ազատագրելու օսմանյան լծից» (էջ 136):

Մեծ Հայրենականում, անցնելով ռազմաճակատից ռազմաճակատ, 2-րդ Բելոռուսական ռազմաճակատի զորքերի գլուխ անցած Կ. Ռոկոսովսկին գրոհանցեց Օդերը, ջախջախելով ֆաշիստական զորքերի հուսահատ ու կատաղի դիմադրությունը՝ երկու հարյուր կիլոմետր առաջ անցավ դեպի արևմուտք, դուրս եկավ Բալթիկ ծովի ափ: Մայիսի 3-ին 2-րդ Բելոռուսական ռազմաճակատի տանկային զորամասերը հանդիպեցին բրիտանական զորքերի զինվորներին: Մարշալն իր բազմամյա ծառայության ամենաբարձր գնահատականը համարել է 1945 թ. հունիսի 24-ին Կարմիր հրապարակում կայացած հաղթանակի զորահանդեսի հրամանատար լինելը:

Մեր զինված ուժերի կազմակերպման ակունքների մոտ կանգնածներից է եղել Սովետական Միության մարշալ Բ. Մ. Շապոշնիկովը: Նա ցարական բանակի այն հայրենասեր սպաներից էր, որոնք հեղափոխությունից հետո ազնվորեն ծառայեցին սովետական իշխանությանը և հարազատ ժողովրդին: Մարշալի մասնագիտական հմտությունը, փորձը, բարեխղճությունն ու նվիրվածությունը մեծապես օգնեցին քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում կարմիր բանակի տարած հաղթանակներին: Լինելով անկուսակցական, նա բարձր է գնահատվել Վ. Ի. Լենինի կողմից, վայելել նրա բացարձակ վստահությունը:

Բ. Մ. Շապոշնիկովի ռազմատեսական և ռազմապատմագրական հետազոտություններով սովորել են սովետական շատ անվանի զորահրամանատարներ: Նա չափազանց կարևորել է շտաբի դերը, այն համարելով հաղթանակի երաշխիք: Լիարժեք շտաբային աշխատողի մեջ նա տեսել է ռազմական մտածողի և զորապետի միասնությունը:

1928—31 թթ. ուժերի գերագույն լարումով գլխավորելով ԲԳԿԲ շտաբը, իսկ որոշ ընդմիջումից հետո 1937 թ. մայիսից՝ գլխավոր շտաբը, նա զգալի դեր խաղաց մեր ռազմական ուժերի ծավալման ու զարգացման, երկրի պաշտպանունակությունը բարձրացնելու գործում: Նրա մշակած գործողությունների պլաններում ճիշտ էր կանխատեսված ֆաշիստական զորքերի հարձակման գլխավոր ուղղությունը: Բ. Մ. Շապոշնիկովի տեսական լայն գիտելիքների, մանրակրկիտ օպերատիվ պլաններ կազմելու հմտության, բացառիկ աշխատասիրության ու կարգապահության կողքին բոլորի կողմից չափազանց բարձր են գնահատվել նրա ազնվությունն ու ճշմարտասիրությունը ղեկավարների հետ ունեցած հարաբերություններում, ինչպես նաև արտակարգ նրբանկատությունն ու հարգալից վերաբերմունքը ենթակաների արժանապատվության նկատմամբ:

Ս. Մ. Տիմոշենկոն սովետական փառապանծ մարշալներից է, որի դիմանկարը տրված է աշխույժ, դինամիկ գծերով, անընդհատ շարժման ու գործողության մեջ: Նա ամենադրամատիկ պահերին ցուցաբերել է անհողդողդ կամք ու սառնասրտություն, որի տակ ըզգացվել է մտքի լարված աշխատանքն ու պատասխանատվության խոր գիտակցումը: Դեռևս առաջին համաշխարհային պատերազմի մարտերում աչքի է ընկել խիզախությամբ ու ձեռներեցությամբ: Մեծ Հոկտեմբերի նվաճումները պաշտպանելիս դրսևորվում են նրա բնածին մարտական ղեկավարի հատկությունները: Քսանհինգ տարեկանում նա արդեն հեծյալ դիվիզիայի հրամանատար էր, Կարմիր դրոշի շքանշանների ասպետ, սովետների համառուսաստանյան VIII համագումարի պատգամավոր:

Նրա անցած մարտական ուղու դրվագներից են Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ազատագրումը, ֆիննական միլիտարիստների դեմ տարած հաղթանակը: 1940 թվականի մարտի 7-ին Ս. Կ. Տիմոշենկոն նշանակվում է ՍՍՀՄ պաշտպանության ժողովրդական կոմիսար և բուռն գործունեություն ծավալում բանակի վերակառուցման ասպարեզում:

Հայրենական մեծ պատերազմի օրերին նա զուգակցում էր ճշգրիտ հաշվարկներն ու ռիսկը, ջանում ապահովել զորամիավորումների փոխգործողությունը, զորքերի ու զորահրամանատարների մեջ համարձակություն ներարկել և ակտիվ պաշտպանությունից անմիջապես անցնել հակահարձակման: «Սեփական ուժերի նկատմամբ վստահությունը հաղթանակի կեսն է»,— նկատել է Ս. Կ. Տիմոշենկոն: Մարշալին հատուկ են եղել անշեջ լավատեսությունը, սկզբունքորեն նոր լուծումների համար համարձակորեն պատասխանատվությունն իր վրա վերցնելու ունակությունը, խիստ, ամենօրյա պահանջկոտությունը, կադրերի աճի նկատմամբ հոգատարությունը:

Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Ի. Ս. Կոնևին նվիրված հատվածից չափազանց առարկայորեն հառնում է քաղաքացիական և հատկապես Հայրենական մեծ պատերազմների վիթխարի համայնապատկերը, կուսակցության ու կառավարության, բազմաթիվ քաջարի զորահրամանատարների իրոք տիտանական լարված աշխատանքը սոցիալիզմի հայրենիքի ռազմական ուժերի կազմավորման ու զարգացման, կադրերի պատրաստման, թիկունքի և ռազմաճակատի ջանքերի միավորման, պատմական հաղթանակների ապահովման գործում, այդ հաղթանակների միջազգային նշանակությունը:

Ի. Ս. Կոնևի ղեկավարած զորքերն ազատագրել են բազմաթիվ քաղաքներ ու բնակավայրեր, նա մեծ ավանդ ունի Ռումինիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի ազատագրման գործում:

Ինչպես սովետական մյուս զորահրամանատարները, Ի. Ս. Կոնևը բարձր է գնահատել մեր զինվորին, նրա արիությունն ու տոկունությունը: Բազմաթիվ անգամներ, անտեսելով անձնական վտանգը, նա եղել է առաջին գծի խրամատներում, անձամբ զրուցել զինվորների հետ, քաջալերել նրանց, մղել նորանոր հաղթանակների:

Երբ 1939 թ. սեպտեմբերի 10-ին գլխավոր շտաբի ակադեմիայի կուսակցական ժողովում կուսակցության շարքերն էին ընդունում Դ. Մ. Կարբիշևին, նա ասել է. «Ժամանակը ծանր է: Ավելի ծանր կլինի: Եվ, ոտք դնելով այս բարձր շեմքը, ես ուզում եմ այդ ահեղ ժամին լինել կուսակցության հետ, իսկ եթե հարկ լինի՝ նաև հանուն կուսակցության մեռնել նրա շարքերում» (էջ 334): Կյանքը հետագայում ապացուցեց, որ դրանք հավուր պատշաճի ասված խոսքեր չէին: Նրա կյանքը հայրենիքի ազատությանը նվիրված մի գեղեցիկ լեգենդի է նման:

Ցարական բանակի շտաբս-կապիտանը կամավոր ծառայության է անցնում նորաստեղծ կարմիր բանակում և իր գիտելիքներն ու ռազմավարական արվեստն ի սպաս դնում նրա ամրապնդմանը: Քաղաքացիական պատերազմի ռազմաինժեներական փորձը հետագայում պատշաճ կերպով ընդհանրացվեց Դ. Մ. Կարբիշևի աշխատություններում: Նա զբաղվում էր նաև գյուտարարությամբ, մշակել է հակահետևակային ականների նմուշներ, հակատանկային ֆուգաս «կարբիշևյան ծուղակներ» կոչված խոչընդոտները: Նա դասավանդել է մի շարք ռազմական ակադեմիաներում: Տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Դ. Մ. Կարբիշևի գրչին են պատկանում հարյուրից ավելի գիտական աշխատություններ ու գրքեր, բրոշյուրներ, հոդվածներ, գրախոսություններ, որոնք նվիրված են մարտական գործողությունների ինժեներային ապահովմանը, ամրաշինության, արգելափակոցների, քողարկման և այլ հարցերի: Նրան շարունակ ներգրավել են գլխավոր շտաբի կարևորագույն պլանների մշակմանը, մասնակից դարձրել բոլոր խոշոր զորավարժություններին, հարձակողական և պաշտպանական զենքի նորագույն նմուշների փորձարկումներին: Նա հաստատակամորեն մատնանշում էր երկրի արևմտյան սահմաններն անհապաղ և առավելագույն չափով ամրապնդելու անհրաժեշտությունը:

...1941 թ. հունիսի վերջին օրերին ավտոմեքենան, որի մեջ էր գտնվում նաև Կարբիշևը, ընկնում է ռմբակոծության տակ: Այնուհետև ոտքով մեկ ամսից ավելի նա շարժվել է դեպի արևելք: Նա ղեկավարելիս է եղել գետանցամիջոցների կառուցումը, երբ ֆաշիստական ռմբակոծությունից վիրավորվել է, կոնտուզիահարվել, ուշաթափ վիճակում ընկել թշնամու ձեռքը: Ֆաշիստական գերության մեջ գեներալ Կարբիշևը, անասելի տանջանքների ու զրկանքների ենթարկվելով, տեղափոխվում է մեկ համակենտրոնացման ճամբարից մյուսը, մեկ բանտից մյուսը: Հիտլերյան ղեկավարությունն ամեն կերպ ձգտել է իր կողմը գրավել Կարբիշևին՝ նրան խոստանալով բարձր պաշտոններ, բայց դրանք զուր հորդորներ էին: ...Այնուհետև՝ գեստապոյական մենախուց, խոշտանգումներ, ապա՝ համակենտրոնացման ճամբարներում տաժանակիր աշխատանք և տանջալի մահ:

Գրքի վերջում զետեղված է բանակի գեներալ, Սովետական Միության կրկնակի հերոս Ա. Պ. Բելոբորոդովի «Խոսք այս գրքի հեղինակի մասին» ակնարկը, որը կարծես նույն հերոսապատումի շարունակությունը լինի: Ակնարկում մարշալ Բաղրամյանի «վերածվելը» հեղինակից հերոսի տեղի է ունենում միանգամայն օրինաչափորեն ու տրամաբանական, այստեղ նա ներկայացված է իր զորահրա-

մանատարական ու մարդկային արժանիքներով:

Հայրենական մեծ պատերազմը, որը Ի. Ք. Բաղրամյանի «Մեծ ժողովրդի զավակները» գրքում ավելի մեծ տեղ է գրավում, դեռևս ապրողներից շատերի համար կենդանի հուշ է, մեր կենսագրության կարևոր փուլը, դառնությունների, զրկանքների և հաղթանակի բերկրանքի ապրված անմոռաց պահեր: Դեռևս մեր կողքին են մեծ Հայրենականի վետերանները, որոնց կուրծքը զարդարող բազմաթիվ շքանշաններն ու մեդալները պատերազմի շրջափուլերի առարկայական վկայություններն են: Գիրքը հարգանքի տուրք է նրանց և մարտի դաշտից չվերադարձած բազմամիլիոն հայտնի ու անհայտ հերոսների հիշատակին:

Ի. Ք. Բաղրամյանի «Մեծ ժողովրդի զավակները» գիրքը ընթերցողին տոգորում է վառ հայրենասիրությամբ, սովետական հայրենիքի փառապանծ անցյալով, նրա արժանավոր զավակներով հպարտանալու, ապագայի նկատմամբ գիտակցական պատասխանատվություն ստանձնելու ազնիվ զգացումով, մեծ Հոկտեմբերի հեղափոխական գործի շարունակությունը հանդիսացող վերակառուցման փուլին ակտիվորեն մասնակցելու վճռականությամբ:

**Մ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ**

---

# «ՈՉ ՈՔ ՉԻ ՄՈՌԱՑՎԵԼ, ՈՉԻՆՉ ՉԻ ՄՈՌԱՑՎԵԼ»

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ վերաբերյալ մեզ մոտ՝ Հայաստանում հսկայական գրականություն է հրապարակվել: Երբեմն թվում է, թե այլևս գրելու նոր նյութ չկա, ամեն ինչ ասված է: Սակայն ուսումնասիրությունները շարունակում են ընթերցողներին ծանոթացնել մեր ժողովրդի մոռացության տրված հերոս զավակների սխրանքները՝ լրացնելով մեծ Հայրենականի տարեգրության անավարտ էջերը:

Պատերազմի վետերան Սերգեյ Ծիրինյանը «Հայրենիքի զինվորները» խորագիրը կրող գրքույկը նվիրել է Ջավախք լեռնաշխարհի զավակների մարտական և աշխատանքային քաջագործություններին: Այստեղ ամփոփված ակնարկների հերոսները նախկինում եղել են հողագործներ, ուսուցիչներ, նկարիչներ, կուսակցական և սովետական աշխատողներ, որոնց վիճակված էր ստեղծագործ աշխատանքը ժամանակավորապես ընդհատել, մարտի ելնել անարգ թշնամու դեմ:

Գրքույկում ամփոփված ակնարկները հավաստի վավերագրեր են: Ուշագրավ է, օրինակ, 89-րդ հայկական Թամանյան հրաձգային դիվիզիայի 531-րդ հրետանային գնդի դրոշի հետ կապված դեպքը պատմող ակնարկը:

... Հողվոր Մարկոս Անտոնյանի հարկի տակ 1920 թվականին ծնվում է արու զավակ, որին ի պատիվ Սովետական Հայաստանի ծննդյան, անվանում են Արշալույս... Եվ ո՞վ կմտածեր, որ նորածինը հասակ կառնի ու մի օր էլ... Երևանի Լենինի հրապարակում հավատարմության երդում տալով՝ 1942 թ. օգոստոսին կմեկնի ռազմաճակատ...

Գունդը ծանր վիճակի մեջ էր, կորուստները՝ շատ: Վտանգ էր սպառնում գնդի շտաբին, նրա դրոշին: Գնդի շտաբի պետ, մայոր Խաչիկ Պայազատյանը դրոշը փրկելու հանձնարարություն է տալիս կոմունիստ Արշալույս Անտոնյանին... Բազում զրկանքների, մաքառումների գնով դրոշակակիր Արշալույսը այն հասցնում է բանակի շտաբ, և... այսպես նրա մարտական ուղին շարունակվում է մինչև Բեռլին, ուր նա ճաշակում է այնքան սպասված հաղթանակի բերկրանքը: Այժմ խիզախ դրոշակակիրը Հոկտեմբերյանի շրջանի Մեծամոր ավանի № 1 միջնակարգ դպրոցի ուսմասվարն է: Կարմիր աստղի շքանշանակիր նախկին ճակատայինը գիտելիքների հետ իր սաներին այսօր նաև արիության դասեր է տալիս:

Արշալույսը Ջավախքի արծիվներից մեկն էր մեծ Հայրենականի ահեղ մարտերում:

Իսկական հայրենասերի կերպար էր Սովետական Միության հերոս Ստեփան Գինոսյանը: Խիզախ ու պահանջկոտ զորապետը զինվորական հիմնավոր կրթություն էր ստացել, երբ բռնկվում է պատերազմը: Այդ ահեղ տարիներին նա մասնակցում է Մոսկվայի պաշտպանությանը, որի համար նրան շնորհվում է գեներալ-մայորի կոչում: Գինոսյանի զորավարական արվեստը գերազանց է դրսևորվում Գերմանիայի տարածքում. այստեղ արդեն գեներալ-լեյտենանտի կոչումով է նա մասնակցում Էլբա գետի ափին գտնվող Վիտենբերգ քաղաքի գրավման մարտերին: Գինոսյանի մարտական ծառայությունները հայրենիքի կողմից գնահատվել են ըստ արժանվույն: Նա արժանացել է Լենինի, Կարմիր դրոշի հինգ շքանշանների և բազմաթիվ այլ պարգևների: Ռազմական գիտությունների թեկնածու Ստեփան Գինոսյանի հիշատակը վառ են պահում հայրենակիցները. Սաթխա գյուղի մուտքի մոտ կանգնեցված է հուշարձան-կոթող:

Միխայիլ Միքելաձեն էլ Ջավախքի ծնունդ է, Քիլդա գյուղից: Նրա մասին է պատմում «Մի հողից ենք ու մի ջրից» ակնարկը: Հողազուրկ Գերասիմի որդուն դժվարին կյանք է բաժին ընկել: Բայց մաքառումներով ու զրկանքներով հագեցած կյանքի ուղին Միխայիլը հաղթահարում է համառությամբ, հուսավառ հավատով: Ապագա հմուտ զորահրամանատարը, որի կրթությունը սկսվեց ծխական դպրոցից և ավարտվեց Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիայով, հասնում է գեներալ-մայորի կոչման, վարում բազմաթիվ հրամանատարական պաշտոններ: Պատերազմի տարիներին նա պատվով է կատարում զինվորականի իր պարտքը՝ կուրծքը զարդարելով մարտական մի շարք շքանշաններով ու մեդալներով: Միխայիլը արիության օրինակ է ցուցաբերում հատկապես Բուգ գետի անցման համար ստրատեգիական նշանակություն ունեցող Ռազդելնայա կայարանի գրավման թեժ մարտերի ժամանակ, որտեղ և վիրավորվում է: Այստեղ ֆաշիստական զորքերի ջախջախմանը ակտիվորեն մասնակցելու համար պարգևատրվում է Բոգդան Խմելնիցկու 2-րդ աստիճանի շքանշանով: Ապաքինվելուց հետո գեներալ Մ. Միքելաձեն շարունակում է իր ակտիվ գործունեությունը, նշանակվում է 13-րդ կորպուսի հրամանատար: Պատերազմի ավարտից հետո նա Անդրկովկասյան զինվորական օկրուգի հրամանատարի՝ թիկունքի գծով տեղակալն էր:

Ինչպես խաղաղ, այնպես էլ պատերազմական օրերի հարուստ կենսագրություն ունի Քրիստափոր Լազարիշվիլին: Ախալքալակի շրջանի Կոթելյա գյուղում ծնված հողագործի որդին կոմերիտական ակտիվիստ էր, կուսակցական և սովետական հմուտ աշխատող. եղել է գավառական միլիցիայի պետ, տպարանի դիրեկտոր, շրջանային թերթի խմբագիր: Երբ սկսվեց պատերազմը, Քրիստափորը կամավոր մեկնեց ռազմաճակատ: Նա առաջին մարտական մկրտությունը ստացավ Սևաստոպոլի դաժան կռիվներում՝ անձնական օրինակով ոգևորելով ու գրոհների առաջնորդելով զինվորներին: 1942 թվականի հունիսի 22-ին Լազարիշվիլու գրած նամակը վերջինն էր: Այնուհետև երկար ժամանակ նրան համարում էին անհայտ կորած: Սակայն երեսունմեկ տարի անց Քրիստափորի համագյուղացիները 388-րդ դիվիզիայի վետերանների խորհրդի նախագահ Իվան Նիկոլայենկոյից նամակ ստացան, ուր համառոտ նկարագրվում էր Ք. Լազարիշվիլու՝ քաջարի հրամանատարի մարտական կյանքը՝ ընդհուպ մինչև մահը: Նամակագիրը նշում է. «Նա մինչև վերջ մնաց դիրքերում, զոհվեց զենքը ձեռքին»: Նույն դիվիզիային է նվիրված գնդի հրամանատար Ի. Վոլկովի գիրքը, որի մի գլուխը պատմում է Ք. Լազարիշվիլու մասին:

Հետաքրքրությամբ են ընթերցվում հետմահու Սովետական Միության հերոսի կոչման արժանացած գվարդիայի գնդապետ Լևոն Դարբինյանի և գնդացրային հաշվարկի հրամանատար, սերժանտ Վաչագան Վանցյանի մասին պատմող «Դնեպրի անմահ հերոսը» և «Իմացեք, որ ընկա հանուն հայրենիքի» ակնարկները:

Լևոն Դարբինյանի սխրանքի դրվագները շատ են և ուսանելի: Նա մարտական փառավոր ուղի է անցել: Այսպես, մարտերից մեկի ընթացքում հիտլերականների կատաղի հարձակումները հետ շպրտելու մասին Սովինֆորմբյուրոն 1941 թ. նոյեմբերի 22-ի իր հաղորդման մեջ նշել է. «Հարավ-արևմտյան ճակատներից մեկում գործող ընկ. Դարբինյանի զորամասի մարտիկները նոյեմբերի 20-ին գրոհով լուրջ հարված հասցրին թշնամուն: Գերմանացիները նահանջեցին՝ կռվի դաշտում թողնելով իրենց զինվորների և սպաների ավելի քան 400 դիակ: Ընկ. Դարբինյանի զորամասը գրավեց 7 հրանոթ, 13 գնդացիր, մեծ քանակությամբ հրացան, արկ և փամփուշտներ»:

Իր անունը փառքով պսակեց նաև Վաչագան Վանցյանը: Ահա թե ինչ է գրում նա 1943 թ. հոկտեմբերին ծնողներին. «Ես կվերադառնամ հաղթանակով: Իսկ եթե ընկնեմ կռվի դաշտում, ապա իմացեք, որ ընկա հանուն հայրենիքի»: Անհավասար մարտում, լարելով վերջին ուժերը, Վաչագանը հակատանկային նռնակը նետում է թշնամու տանկի տակ, պայթեցնում այն, և ինքն էլ հերոսաբար զոհվում:

Ծիրինյանի ակնարկները իր հայրենակիցների հանդեպ սիրո ու երախտիքի վկայություն են:

Մեծ Հայրենականի հերոսներին է նվիրված նաև լրագրող Ռաֆիկ Գրիգորյանի «Կատարեցի պարտքս...» խորագիրը կրող գրքույկը, որը լույս է ընծայել «Լույս» հրատարակչությունը:

«Կատարեցի պարտքս...» գրքույկի հեղինակի սերունդը պատերազմը հիշում է մայրերի ու տատիկների սև գլխաշորերից, կինոնկարներից, գրքերից: Այդքանն էլ բավական է՝ զգալու, թե ինչ հրեշավոր բան է պատերազմը: Մարտում ընկածներից այսօր դեղնած եռանկյունի նամակներ են մնացել՝ լեցուն սիրով ու կարոտով հայրենի տան, եզերքի հանդեպ, խոր հավատով՝ հաղթանակի

նկատմամբ: Նրանցից նաև լուսանկարներ են մնացել, որոնք դարձել են նվիրական մասունքներ: Ճիշտ է, գրքույկի բոլոր ակնարկները նույն հուզականությունն ու պատկերավորությունը չունեն, բայց դրանք մի առանձին սիրով են գրվել: Այստեղ ականատեսի հավաստիությամբ են ներկայացված մարտական բազմաթիվ դրվագներ, հոգեվիճակներ:

Գրքույկի ակնարկները իրավապատումներ են: Հեղինակը լոկ արձանագրողի դերում չէ, նա հմտորեն է օգտագործել ակնարկի ընձեռած հնարավորությունները: Միօրինակությունից զերծ մնալու համար Ռ. Գրիգորյանը ընտրել է տվյալ պատումին հատուկ սկիզբ, շարունակություն և ավարտ, որոնց մեծապես օգնում են շարադրանքի լեզուն, պատմելու ոճը:

Գրեթե բոլոր ակնարկներն էլ խոսուն խորագրեր ունեն: Դրանք ավելի շատ վերցված են հերոսների խոսքերից ու խոսքերից՝ ասված մարտից առաջ, հարազատներին ուղղված նամակներից, մարտական առաջադրանքից առաջ: Վերնագրերի այդպիսի ընտրությունը հյուսվածքը դարձնում է հուզական և տպավորիչ: Հիշատակենք դրանցից մի քանիսը՝ «Հպարտ եղեք իմ մահով», «Ես սիրեցի Դավթին», «Գնում ենք դեպի արևմուտք», «Կատարեցի՞ պարտքս...» և այլն: Այս ակնարկները ընթերցվում են չթուլացող հետաքրքրությամբ:

«Ես սիրեցի Դավթին» ակնարկի գլխավոր իմաստը հայրենիքի համար զինվոր անեցնելն է: Դա ծերունի Լևոնի համոզմունքն էր: Նրա երազանք-ցանկությունը ոչ միայն կատարվում է, այլև թալինցի զինվոր Դավիթը հաղթական վերադառնում է հայրենի գյուղ, այն էլ գեներալ Նվեր Սաֆարյանի հետ: Հոր երջանկությունն անսահման էր...

Պակաս հետաքրքրություն չի ներկայացնում նաև «Վեհափառ մեղեդի» ակնարկը: Սիրուն մայրիկի Հովսեփ որդին էլ հայրենիքի սիրով լեցուն կռվում է՝ մարտադաշտերին «Որսկան ախպեր» երգը շուրթերին:

«Կատարեցի՞ պարտքս...» ակնարկի գլխավոր հերոսը՝ Պապիկ Ավալյանը, քաջասիրտ հայորդիներից է: Նա բազում մարտերի է մասնակցել, քանիցս վիրավորվել: Ավալյանը Թերեքի ափերից մինչև Օդեր ձգված մարտական ճանապարհին իրեն դրսևորեց որպես խիզախ, անձնազոհ ռազմիկ և իր ջերմ վերաբերմունքով արժանացավ ամբողջ զորամասի սիրուն:

«Հայաստան» հրատարակչությունը լույս է ընծայել «Փառքի հուշարձաններ» ծավալուն, պատկերազարդ հուշագիրքը, որն իր տեսակի մեջ հազվագյուտ հրատարակություն է: Նրա հեղինակներն են լրագրող Կիմ Ղալաչյանը, լուսանկարիչներ Արտավազդ Սիրականյանը և Նիկոլայ Ղազարյանը:

Հուշագրքի ստեղծման համար տևական աշխատանք է կատարվել, հեղինակներն անհրաժեշտ նյութերի ձեռքբերման համար կտրելանցել են հազարավոր կիլոմետրեր, քայլել այն բնակավայրերով, որտեղ մեծ Հայրենականի օրերին անարգ թշնամու դեմ կատաղի մարտեր են մղել սովետական մարտիկները, եղել այն վայրերում, ուր երախտագետ ողջերը փառքի հուշարձաններ են կանգնեցրել, հուշակոթողներ ու հուշաղբյուրներ կառուցել, պուրակներ և ծառուղիներ հիմնել՝ ի փառս հերոսի մահով ընկածների:

Սովետական ժողովուրդը հիշում է իր զավակներին: Եվ այս հուշագիրքն էլ դրա վառ վկայություններից է, որի գլխավոր նշանաբանը միանգամայն ճիշտ է ընտրված. «Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել»:

**Ա. ՊԱՂՅԱՆ**

---

Հանձնված է շարվածքի՝ 22.12.87 թ.: Ստորագրված է տպագրության՝ 25.01.88 թ.: ՎՖ 03809: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 17131: Պատվեր՝ 2532:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: